ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԽԶ.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՍՈՒՐԲ ԳՐՔԻ ՄԷՋ

## ՍՈՒՐԲ ԳՐԱԿԱՆ–ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. ՎԱՀԱՆ Վ. ԻՆԳԼԻԶԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1947

# ARMENIEN IN DER BIBEL

BIBLISCH-GEOGRAPHISCHE STUDIE

EINE UMGEARBEITETE ÜBERSETZUNG AUS DEM DEUTSCHEN

VON

DR. P. VAHAN INGLISIAN C. M. V.



WIEN

MECHITARISTEN-BUCHDRUCKEREI

1947

# ՀԱՅԱՍՏԱՆ ՍՈՒՐԲ ԳՐՔԻ ՄԷՋ

## ՍՈՒՐԲ ԳՐԱԿԱՆ–ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ


ԳՐԵՑ

ԳԿՏ. Հ. ՎԱՀԱՆ Վ. ԻՆԳԼԻԶԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1947

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ներկայ ուսումնասիրութիւնն, որ 1929ին Վիեննայի Համալսարանին իբրեւ դոկտորութեան քննաճառ ներկայացուած էր, 1935ին, Ս. Գրքի հայերէն թարգմանութեան 1500ամեակին առթիւ լոյս տեսաւ Armenien in der Bibel վերնագրով: Թէ ինչ ընդունելութիւն գտաւ գործքս եւրոպական մասնագէտներու կողմանէ, հետաքրքրողը կրնայ տեսնել «Հանդէս Ամսօրեայ» 1937, էջ 589—592*, ուր խմբագրութիւնը հրատարակած էր կարեւոր գրախօսականներէն մաս մը քաղուածաբար:

Այս առթիւ ստիպուած եմ մտադիր ընել որ գրախօսողներէն մին՝ Պրագի Համալսարանի ուսուցչապետ Dr. A. Sanda ուսումնասիրութեանս բովանդակութիւնն ու եզրակացութիւնը ներկայացուցած է բոլորովին յեղաշրջուած (տե՛ս Archiv Orientální 9 [1937], էջ 246—247): Երբ թերթի խմբագրութեան ուղղեցի նամակ մը (15 Յունուար 1938) մատնանշելով թէ անտեղի է գիտական թերթի մը նման վերաբերմունք, նամակս ուսուցչապետ Hrozný յանձնած է Դկ. Տանդայի, որ 9 Փետր. 1938 թուակիր նամակով մը կը փորձէր չքմեղել եղածը:

---

* Տես վարը. էջ ԼԹ—ԽԸ:

կը գրէր ի մէջ այլոց հետեւեալ տողերը. «Իսկական տապանակիր լերան Ձեր ճշգրիտ գետեղումը Վանայ լճին արեւմտեան կողմը». որ ուսումնասիրութեանս գլխաւոր մասն եւ այսու քան արժէքը կը ներկայացնէր, «առանց յիշատակութեան ձգեցի, որովհետեւ Ձեր գիրքն ըստ իր վերնագրին Հայաստան Ս. Գրքի մէջ շատ աւելի կարեւոր բան կ'ընծայէ եւ առաւելապէս Արեւելագէտներուն քան թէ սովորական Աստուածաբաններուն համար որոշուած է...»: Բայց խնդիրը հաւասարապէս թէ՛ արեւելագէտներու եւ թէ աստուածաբաններու կը հայէր:

Ուսումնասիրութեանս նիւթն իր հայկական բնոյթով դրդապատճառ եղաւ նոյնը հայերէն խմբագրութեամբ «Հանդէս Ամսօրեայ»ի ընթերցողներուն ալ մատչելի ընել*, եւ այն Ուսումնաթերթէն կը կատարէի այս արտատպութիւնը: Հայերէն խմբագրութեանս մէջ կատարուած են մանր յաւելումներ, մանաւանդ ընդլայնուած է Դ. § 2:

Թէեւ գործիս տպագրութիւնը 1942ին արդէն աւարտած էր, սակայն պարագաներու բերումով այժմ միայն լոյս կը տեսնէ:

Թէ պատերազմին ընթացքին արտասահման որ եւ է մեր շօշափած հարցերուն հայող

---

* Հմմտ. Հանդէս Ամսօրեայ 1935, էջ 604—615. 1936, էջ 169—184. 1937, էջ 275—285. 1939, էջ 1—12. 120—142. 1940, էջ 129—142. 1941, էջ 1—17. 120—154. 1942, էջ 1—9. 137—149:

գրութիւններ լոյս տեսա՛ծ են, կը մնայ ինձ անծանօթ: Կարելի է յիշել միայն աւստրիացի ծանօթ մասնագէտի մը՝ Msg. Dr. Karl Fruhstorferի մէկ ուսումնասիրութիւնը՝ Die Noachische Sintflut (8°, XV + 198, Linz a. d. Donau 1946, Oberösterr. Landesverlag), որ տապանակիր լերան հարցի շուրջ խօսած ժամանակ (էջ 76—82) երբեմն գնահատական արտայայտութիւններով ներկայ ուսումնասիրութիւնը յիշատակելէն յետոյ Ararat — Taurus վերնագրով կը ներկայացնէ համառօտի ուսումնասիրութեանս Ա. Գըլխուն եզրակացութիւնն իբրեւ նորագոյն տեսութիւնը տապանակիր լերան մասին:

Այսու կը կարծենք թէ ուսումնասիրութեանս գլխաւոր եզրակացութեան հաւանականութիւնը կը դառնայ աստիճանով մը աւելի հիմնաւոր, որով եւ Հայաստանի յիշատակութեան վաւերականութիւնը գրքերու Գրքին մէջ:

Վիեննա, 13 Օգոստոս 1947:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

էջ

— Այս աւանդութիւնը չուզեր ճանչնալ E. Blochet եւ Թորգոմը կը նոյնացնէ «Թիւրքեր»ի հետ 231—233: — Թորգոմ—Տարքու—Տուրք կամ Տորք—Փռիւգա-Հայերը 233:



# ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆՍ ԸՆԹԱՑՔԻՆ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ԵՒ ՀԵՏԵՒԵԱԼ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ


Ագաթանգեղեայ *Պատմութիւն Հայոց (Քննակ. հրատ.)*, *Տփղիս* 1909:

Ալիշան Հ. Ղ., *Տեղագիր Հայոց Մեծաց: Վենետիկ* 1855:

— — — *Սիսական կամ տեղագրութիւն Սիւնեաց աշխարհի: Վենետիկ* 1893:

— — — *Հին հաւատք Հայոց կամ հեթանոսական կրօնք Հայոց աշխարհի: Բ. տպագր.: Վենետիկ* 1910:

Ակինեան Հ. Ն., *Սեբէոս, եպիսկոպոս Բագրատունեաց եւ իւր Պատմութիւնն ի Հերակլ: Հանդ. Ամս.* 1923, *Թ.* 1—10: *Արտատպ. Մատենագրական Հետազօտութիւններ, հատ. Բ.* 5 (*Ազգ. Մատ. ՃԴ*): *Վիեննա* 1924:

Անանիա Շիրակացի, *հրտ. Տէր-Մկրտչեան: Վաղարշապատ* 1896: (*Արտատպ. Արարատէն*, 1896 *թիւ* 3 *եւ* 4:)

Աստուածաշունչ. *Հրատ. Հ. Յ. Զօհրապեան, Վենետիկ* 1805:

Աւգերեան Հ. Մ., *Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւն սրբոց: Վենետիկ* 1810:

Գրիգորի Մագիստրոսի Պահլաւունւոյ *Տաղաչափութիւն: Վենետիկ* 1868:

Գրիգորի Նարեկացւոյ *Երկու մատեան ճառից: Վենետիկ* 1827:

Եզնկայ Կողբացւոյ *Եղծ աղանդոց: Վենետիկ* 1826:

Եղիշէի Վարդապետի *Վասն Վարդանայ եւ Հայոց Պատերազմին: Վենետիկ* 1859:

Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ *Ժամանակականք երկմասնեայ*: Վենետիկ 1818:

Թովմա Արծրունի. *Պատմութիւն տանն Արծրունեաց*: Ս. Պետերբուրգ 1887:

Թովմա Մեծոփեցի. *Պատմութիւն Լանկ-Թամուրայ եւ յաջորդաց իւրոց*: Պարիս 1860:

Ինճիճեան Ղ. Վ. *Նոր Հայաստան*: Վենետիկ 1806:

Լալայեանց Երուանդ. *Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի*: Տփղիս 1915:

Խաչատրեան Ա. *Հայաստանի սեպագիր շրջանի քննական պատմութիւն*: Երեւան 1933:

Կանայեանց Ստեփ. *Անյայտ գաւառներ հին Հայաստանի*: Վաղարշապատ 1914:

Կորիւն. *Պատմութիւն վարուց եւ մահուան Ս. Մեսրոպայ վարդապետի մերոյ Թարգմանչի*: Վենետիկ 1894:

Ղազարայ Փարպեցւոյ *Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան (Քննակ. հրատ.)*: Տփղիս 1904:

Ղեւոնդեայ Մեծի վարդապետի *Պատմութիւն Հայոց*: Բ. տպագր.: Ս. Պետերբուրգ 1887:

Մանանդեան Հ. Ա. *Անանուն կամ Կեղծ-Սեբէոս*: Հանդ. Ամս. 1911—1913. Արտատպ. (Ազգ. Մատեն. Հ.): Վիեննա 1913:

— — — *Արարա՞դ թէ Արարատ*: Ընծայարան, Գրական ժողովածոյ, էջ 432—435: Վիեննա 1911:

Մարտիրոսեան Ն. *Սասուն*. «Բիւզանդիոն», 1914. Թիւ 5257:

Միրախորեան Մ. *Նկարագրական ուղեւորութիւն ի հայաբնակ գաւառս արեւելեան Տաճկաստանի*: Կ. Պոլիս 1884:

Միքայէլ Պատրիարքի Ասորւոց *Ժամանակագրութիւն*: Երուսաղէմ 1870:

Մովսէսի Խորենացւոյ *Մատենագրութիւնք*: Վենետիկ 1865:

Մովսէս Խորենացի, *Պատմութիւն Հայոց (Քննակ. հրատ.): Տփղիս* 1913:

— — *Աշխարհագրութիւն: Վենետիկ* 1881:

Յովհաննէս Կաթողիկոս. *Պատմութիւն Հայոց: Մոսկուա* 1853:

Յովհաննէս Մամիկոնեան. *Պատմութիւն Տարօնոյ: Բ. տպագր.: Վենետիկ* 1889:

Յովհաննէս Մանդակունի. *Ճառք: Բ. տպագր.: Վենետիկ* 1860:

Ներսէս Շնորհալի. *Տաղաչափութիւնք: Վենետիկ* 1830:

Ողբ *վասն չարեացն աշխարհին Հայոց եւ Վկայաբանութեան Վահանայ Գողթնացւոյ (Մատենագ. Թիւ 13): Վենետիկ* 1854:

Ուխտանէս Ուռհայեցի. *Պատմութիւն Հայոց եւ բաժանման Վրաց ի Հայոց: Վաղարշապատ* 1871:

Մանանդեան Յ. Վ., *Ասորեստանեայ եւ Պարսից նա-խագիր ուղղագրութիւնք (Ազգ. Մատ. Խ.): Վիեննա* 1901:

Սարգիսեան Հ. Ն., *Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս: Վենետիկ* 1864:

Սեբէոսի Եպիսկոպոսի *Պատմութիւն ի Հերակլն: Ս. Պետերբուրգ* 1879:

Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան *Պատմութիւն տիեզերական: Ս. Պետերբուրգ* 1885:

Ստեփաննոսի Օրբէլեան. *Պատմութիւն Սիւնեաց: Փարիզ* 1859:

Սրուանձտեանց Գ. Վ., *Գրոց ու բրոց: Կ. Պոլիս* 1910:

Վարդան վարդապետ, *Համառօտ Պատմութիւն: Վենետիկ* 1862:

*Վարք եւ Վկայաբանութիւնք սրբոց: Վենետիկ* 1874:

Տաշեան Հ. Յ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա: Վիեննա* 1895:

— — — *Ուսումն դասական հայերէն լեզուի: Ա. Դպրութիւն: Անգիր ժամանակք: Վիեննա* 1920:

— — — *Հաթեր եւ Ուրարտականք, Մատենագիտական ուսումնասիրութիւն: Հանդ. Ամս.* 1931—1934: *Առանձին. Ազգ. Մատ. ՃԼԷ: Վիեննա* 1934:

Տէր-Մկրտչեան Գ., *Փաւստոսի ձեռագիրը*։ Zeitschr. f. arm. Philologie, II, էջ 267—286։

Փաւստոսի Բիւզանդացւոյ *Պատմութիւն Հայոց*։ *Վենետիկ* 1832։

*Adontz N.*, Tarkou chez les anciens Arméniens in REA, t. VII, Fasc. I (1927), pp. 185—194.

*Agathiae Myrinaei* Historiarum libri quinque. Ed. B. G. Niebur. Bonn 1828.

*Алекперов А.*, Крaменая керамика Нахичеванского края и Ванское царство (*Նախիջևանի նկարուն խեցեգործությունը և Վանի թագավորությունը*)։

*Assemani Jos. Sim.*, Bibliotheca Orientalis. Romae 1725.

*Babelon E.*, La tradition phrygienne du déluge: in Revue de l'hist. de religions. T. 23 (1891), pp. 174—183.

*Bartholomae G.*, Altiranisches Wörterbuch, 1904.

*Beer G.*, Pseudoepigraphen des Alten Testamentes: Real-Enzyklopädie für protest. Theologie und Kirche, Bd. XVI (1903).

*Beladsori*, Liber expugnationis regionum ed. de Goeje. Leiden 1866.

*Belck Waldemar*, Das Reich der Manäer, VBAG 1854, S. 479—488.

— — Aus den Berichten über die armenische Expedition, ZfE. 31 (1899), S. 236—275.

— — Zur Geographie Armeniens in „Beiträge zur alten Geogr. und Gesch. Vorderasiens", Heft I und II (1901).

— — Die Kelischin-Stele und ihre chaldisch-assyr. Inschriften, in „Anatole", Zeitschr. f. Orientforschung, Heft I (1904).

— — Beiträge zur Urgeschichte Armeniens, I. Die Ursitze der Chalder und die Ausbreitung der chaldischen Macht, II. Die Entstehung des Chal-

dischen Großreiches, in HA 41 (1927), Nr. 11/12, S. 805—818.

*Benzinger J.*, Die Bücher der Könige. Freiburg i. B. 1899.

— — Chronik. Tübingen 1901.

*Bertholet Alfred*, Das Buch Hesekiel. Freiburg i. B. 1897.

*Biblia* Sacra polyglotta, ed. Brianus Waltonus. Londini 1657.

— — graece, ed. R. Holmes. Oxford 1798.

*Billerbeck A.*, Das Sandschak Suleimania und dessen persische Nachbarlandschaften zur babylonischen und assyrischen Zeit. Leipzig 1898.

*Bleichsteiner R.*, Die Subaräer des alten Orients im Lichte der Japhetitenforschung, in P.-W.-Schmidt-Festschrift. Wien 1928.

*Blochet E.*, Le nom des turcs dans le chapitre X de la Genèse, in Revue de l'Orient Chr., t. 28 (1931—1932), pp. 203—208, 406—416.

*Breasted James Henry*, Gesch. Ägyptens, übersetzt von Ranke. Berlin 1910.

*Burney C. F.*, Notes on the Hebrew Text of the Books of Kings. Oxford 1903.

*Халатьянцъ Г.*, О нѣкоторыхъ географическихъ названіяхъ древней Арменіи въ связи съ данными ванскихъ надписей. (Հին Հայաստանի քանի մը աշխարհագրական անուններն եւ նոցա պերբեր վանի սեպագրեր արձանագրութեանց հետ։) Древности Восточныя, հատ. II, պրակ II։ Մոսկուա 1901։

*Condamin Albert*, Le livre d'Isaïe. Paris 1905.

*Corpus* Inscriptionum Chaldicarum. In Verbindung mit F. Bagel und F. Schachermeyr, hsg. von C. F. Lehmann-Haupt. Berlin und Leipzig 1928 bis 1935.

*Corpus* Scriptorum Ecclesiasticorum Latinorum. Vindob. 1866 ff.

*Cramer K.*, Amos. Beiträge zur Wissenschaft vom A. N. Test. Hsg. von R. Kittel, 3. Folge, Heft 15, 1930.

*Delitzsch Fr.*, Kommentar über die Genesis, 1872.

— — Wo lag das Paradies? Leipzig 1881.

— — Assyrisches Handwörterbuch. Leipzig 1896.

— — Handel und Wandel in Altbabylonien. Stuttgart 1910.

*Denk Jos.*, Zur Itala, in ZfkTh 34 (1910), S. 599—607.

*Dier Cres.*, Genesis übersetzt und erklärt. Paderborn 1914.

*Дьяконовъ А.*, Іоаннъ Ефесскій и его церковно-историческіе труды (Յովհ. Եփեսացի եւ նորա եկեղեցապատմական աշխատութիւնները: Պետեր-բուրգ 1908:

*Döller J.*, Geographische und ethnologische Studien zum III. und IV. Buche der Könige. Wien 1904.

— — Ararat und Urartu, in BZ I (1903), S. 349 f.

*Duhm B.*, Das Buch Jesaia übersetzt und erklärt. Göttingen 1902.

*Eisler Rob.*, Die „Seevölker"-Namen in den altorientalischen Quellen. Caucasica, պրակ V (1928).

*Ephraem Syri* Opera omnia, quae exstant Graece, syriace, latine. Romae 1737 (syriace et latine).

*Field Fried.*, Origenis Hexaplorum quae supersunt. Oxford 1875.

*Flavii Josephi* Opera, edidit et apparatu critico construxit Benedictus Niese. Berolini 1887.

*Forrer Emil*, Die Provinzeinteilung des assyrischen Reiches. Leipzig 1920.

*Fragmenta historicorum arabicorum* ed. M. J. de Goeje. Leiden 1869.

*Friedrich Joh.*, Die hetitischen Bruchstücke des Gilgameš-Epos. ZA 39 (1930).

*Friedrich Joh.*, Einführung ins Urartäische. Grammatischer Abriß und ausgewählte Texte mit sprachlichen Erläuterungen. Leipzig 1933.

*Gatteyrias J.-A.*, L'Arménie et les Arméniens. Paris 1882.

*Gemser Ber.*, Odysseus-Utanapištim. AfO III (1926).

*Georgii Cyprii* descriptio orbis Romani, edidit Henricus Gelzer. Lipsiae 1890.

*Georgius Syncellus* et Nicephorus Patriarcha Constantinopolitanus, Chronographia, edidit Weberus. Bonnae 1829.

*Giesebrecht F.*, Das Buch Jeremia. Göttingen 1907.

*Gilgamesch-Epos.* Neu übersetzt von Arthur Ungnad und gemeinverständlich erklärt von Hugo Greßmann. Göttingen 1911.

*Götze Alb.*, Die Annalen des Muršiliš. MVAG 38 (19393).

— — Zur Kelischin-Stele. ZA 39 (1930.

*Greßmann H.*, Der Ursprung der israelitisch-jüdischen Eschatologie. Göttingen 1905.

— — Der Eingang ins Paradies. AfO III (1926).

*Gunkel Herm.*, Genesis, übersetzt und erklärt ². Göttingen 1902.

*Guyard Stanis.*, Etudes Vanniques, in JA, 1883, s. VIII, t. III (1884), pp. 499—517.

*Hagen Mart.*, Atlas Biblicus. Parisiis 1907.

*Hartmann Mart.*, Bohtan. S.-A. aus MVAG 1896, 2, 1897, 1.

*Heinisch P.*, Das Buch Genesis, übersetzt und erklärt, Bd. I, Abt. 1, in der Serie: Die Heilige Schrift des Alten Testamentes, hsg. von F. Feldmann und H. Herkenne. Bonn 1930.

*Herodotus*, ed. H. Stein, Berlin 1856—1859.

*Hetzenauer Mich.*, Commentarius in librum Genesis, 1910.

*Hoberg Gottfr.*, Die Genesis. Freiburg i. B. 1908.

*Hoffmann G.*, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, in Abhandlungen für die Kunde des Morgenlandes, Bd. VII, 3 (Leipzig 1880).

*Holzinger H.*, Genesis, erklärt. Freiburg i. B. 1898.

*Hommel Fritz*, Ethnologie und Geographie des alten Orients (Handbuch der Altertumswissenschaft, hsg. von Walter Otto, Abt. III, Teil I, Bd. 1, Geographie Vorderasiens und Nordostafrikas). München 1926.

— — Hethiter und Skythen und das erste Auftreten der Iranier in der Geschichte. Sitzber. d. Böhm. Ges. d. W.-Kl. f. Phil., Gesch. und Philologie, 1898, VI.

*Hrozný Friedrich*, Die Sprache der Hethiter, ihr Bau und ihre Zugehörigkeit zum indogermanischen Sprachstamm. Ein Entzifferungsversuch, in Boghazköi-Studien, hsg. von Otto Weber, I. Heft (Leipzig 1917).

— — Hethitische Keilschrifttexte aus Boghazköi in Umschrift, mit Übersetzung und Kommentar. Boghazköi-Studien, III. Heft (Leipzig 1919).

— — Etruskisch und die „hithitischen" Sprachen. ZA 38 (1929).

— — Die älteste Geschichte Vorderasiens. Prag 1940.

*Hübschmann H.*, Armeniaca; Straßburger Festschrift zur XLVI. Versammlung deutscher Philologen und Schulmänner. 1901.

— — *ON* = Die altarmenischen Ortsnamen. Mit Beiträgen zur historischen Topographie Armeniens und einer Karte. S.-A. aus dem 16. Bande der indogerm. Forschungen (S. 193—490). Straßburg 1904. Հայերէն թարգմանութեամբ՝ Հ. Ի. Պիլէզիկճեան, Հին Հայոց տեղւոյ անունները։ Հանդ. Ամս. 1904—1907, Արտատպ. Ազգ. Մատ. ԺԹ։ Վիեննա 1907։

*Ibn-el-Athiri* Chronicon, quod perfectissimum inscribitur. Ed. C. Jo. Tornberg. Leiden 1867—1876 (14 Bände).

*Jacut*, Moschtarik. Ed. F. Wüsütenfeld. Göttingen 1846.

— — Geographisches Wörterbuch. Ed. F. Wüstenfeld. Leipzig 1866—1871.

*Jaqubi*, Historiae. Ed. M. Th. Houtsma. Leiden 1883.

*Jeremias Alfred*, Der Einfluß Babyloniens auf das Verständnis des Alten Testamentes. Biblische Zeit- und Streitfragen, hsg. von Kropatschek. 1908.

*Jirku Anton*, Altorientalischer Kommentar zum Alten Testament. Leipzig 1923.

*Joannis Ephesi Syri* Commentarii de beatis orientalibus et Historiae Ecclesiasticae fragmenta, ed. W. J. van Douwen et J. P. N. Land. Amstelodami 1889.

*Josua Stylite*, Chronique ed. Wright. Cambridge 1882.

*Justi F.*, Iranisches Namensbuch. Marburg 1895.

*Karst Jos.*, Alarodiens et Proto-Basques. Contribution à l'ethnologie comparée des peuples asianiques et liby-hespériens. Vienne (Méchitharistes) 1928.

— — Grundsteine zu einer Mittelländisch-Asianischen Urgeschichte. Ethnographische Zusammenhänge der Liguro-Iberer und Proto-Illyrer mit der Lelegisch-Hetitisch-Alarodischen Völkergruppe erwiesen in Toponymie, völkischer Onomastik und vergleichender Mythologie. Leipzig 1928.

*Keil C. F.*, Biblischer Kommentar über den Propheten Ezechiel. Leipzig 1882.

*Kittel R.*, Die Bücher der Könige, übersetzt und erklärt. Göttingen 1900.

*Kittel R.*, Die Bücher der Chronik. übersetzt und erklärt. Göttingen 1902.

— — Geschichte des Volkes Israel. Gotha 1909.

*Kluge Th.*, Studien zur vergleichenden Sprachwissenschaft der kaukasischen Sprachen. I.: Die Sprache der urartäischen Inschriften und ihre Stellung im kaukasischen Sprachenkreis. MVAG 12 (1907), պրակ 5.

*Knobel*, Die Völkertafel der Genesis. 1850.

*Knudtzon J. A.*, Assyrische Gebete an den Sonnengott.

— — Die El-Amarna-Tafeln. Leipzig 1915.

*König Ed.*, Die Genesis. Gütersloh 1919.

*Konstantin Porphyrogenetos*, De administrando imperio. Imperium orientale. T.I. Ed. A. Banduri. Paris 1711.

*Krätzschmar Rich.*, Das Buch Ezechiel, übersetzt, erklärt. Göttingen 1900.

*Kraus S.*, Die biblische Völkertafel im Talmud, Midrasch und Targun. MGWG 39 (1895). S. 1—11, 49—63.

— — Talmudische Archäologie. Leipzig 1910—1911.

*Kretschmer P.*, Der nationale Name der Armenier Haikh. S.-A. aus dem „Anzeiger der Akademie der Wissenschaften in Wien", philosoph.-hist. Klasse, 1932, Nr. 1—7, S. 1—9. Թարգմանութիւնը Հանդ. Ամս. 1933, էջ 429—432.

— — Einleitung in die Geschichte der griechischen Sprache. Göttingen 1896.

— — Die protoindogermanische Schicht. Glotta XIV (1925), 300—319.

*Lagarde Paul (de)*, Gesammelte Abhandlungen. Leipzig 1866.

— — Onomastica sacra. Göttingen 1870.

— — Agathangelus und die Akten Gregors von Armenien. Göttingen 1887.

*Landersdorfer S.*, Die Bücher der Könige. Bonn 1927.

*Langlois Victor*, Collection des historiens anciens et modernes de l'Arménie. 2 Bde. Paris 1867—1869.

*Lehmann C. F.*, Von der deutsch-armenischen Expedition. WZKM 14 (1900), S. 1—45, 175 ff.

*Lehmann-Haupt C. F.*, Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens. Abhandlungen der Kgl. Gesell. der Wissensch. zu Göttingen, phil.-hist. Klasse. N. F. Bd. IX, Nr. 3, Berlin 1907.

— — Armenien einst und jetzt. Reisen und Forschungen. Berlin. I. Bd. 1910; II. Bd. erste Hälfte 1926; zweite 1931.

— — Das urartäisch-chaldische Herrscherhaus. ZA 33 (1910), S. 27—51.

— — Die älteste Kunde über Armenien. Հանդ. Ամս. ԽԱ (1927), Թ. 11—12, էջ 795—805.

— — Stele und Sockel. Klio 24 (1930), S. 148—168.

— — Epigraphisch-Archäologisches aus Georgien und Armenien. WZKM 45 (1938), S. 161—168.

*Lehmann-(Haupt-)Belck*, Mitteilung über weitere Ergebnisse ihrer Studien an den neugefundenen Keilinschriften. VBAG 1892, S. 477—490.

— — Chaldische Forschungen. VBAG 1895, S. 570 bis 616; 1896, S. 309—327.

— — Zu Jensens Bemerkungen betreffs der Sitze der Chalder. ZA 12 (1897), S. 113—123.

— — Entdeckungen in Armenien. VBAG 1898, S. 568—592.

*Lenormant Fr.*, Lettres assyriologiques sur l'histoire et les antiquités de l'Asie antérieure. 2 sér. in 5 vol. Paris 1871—1879.

*Livius*, Ab urbe condita libri, ed. A. Zingerle. Leipzig 1888—1908.

*Marquart Jos.*, Ēranšahr nach der Geographie des Ps. Moses Xorenacʻi. Berlin 1901.

*Marquart Jos.,* Osteuropäische und ostasiatische Streifzüge. Leipzig 1903.

— — Untersuchungen zur Geschichte von Erân. Philologus, Supplementband X. 1905—1907.

— — Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen. Ի շարս Studien zur arm. Geschichte. IV. Wien 1930.

— — Armenische Streifen in H u s c h a r d z a n (1911), S. 291—302.

— — Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation. Berlin 1919.

*Марръ Н.,* Сборники притчъ Вардана (Ժողովածուք առակաց Վարդանայ). Матеріалы для исторіи средневековой армянской литературы. Ст. Петерсбургъ 1894—1899.

*Meißner Bruno,* Babylonien und Assyrien, Bd. I. Heidelberg 1920.

— — Lexikographische Studien, ZA VIII (1893), S. 75 ff.; IX (1894), S. 268 ff.; XVII (1903), S. 239 ff.

*Мещанинов И. И.* Выдвигаемые яфетическим языкознанием вопросы в области изучения ванской клинописи. (Վանի սեպագիր արձանագրությունները յաբեթական գրության տեսակէտով)։ Яфетический сборник IV (1926), 72—122 (Լենին-գրադ).

— — Древне-ванские имена богов и царей. (Վանի աստուածների և թագաւորների անուն-ները)։ Яфетический сборник V (1927), 82—101.

— — Халдоведение (Խալդէագիտութիւն) Труды О-ва Обследования и Изучения Азербайджана № 10, Баку 1927.

— — Язик ванской клинописи (Վանի սեպագիր արձանագրութեան լեզուն։) Академия Наук СССР. Ленинграл 1935.

— — Геогр. названия верховьех Аракса по халдским надписям (Վերին Երասխի աշխարհագրա-

կան անուններն ըստ խալդի արձանագրութեանց)։ ИРАИМК IV էջ 43—64.

— — Die neuen Ergebnisse der chaldischen Forschungen. AfO VI (1930—1931), S. 201—216.

— — Neue chaldische Inschriften. II. Die Inschrift Sardurs in Daškerpi. III. Die Inschrift des Argistis aus dem Dorf Lesk (Kaladjug). AfO VII (1931—1932), S. 160—164, 263—266.

*Meyer Ed.*, GA = Geschichte des Altertums², Stuttgart und Berlin 1926.

*Michel le Syrien*, Chronique, texte syriaque et traduction française, par J. B. Chabot, Paris 1899 sqq.

*Migne*, PG Patrologiae cursus compl. series graeca. — PL = series latina.

*Mordtmann A. D.*, Entzifferung und Erklärung der armenischen Keilinschriften von Van und der Umgebung, ZDMG 26 (1872), Heft 3, 4; 31 (1877), Heft 2, 3.

*Müller D. M.*, Drei neue Inschriften von Van, WZKM I (1887), S. 213—219.

*Murad Fr.*, Ararat und Masis. Heidelberg 1901.

*Nestle E.*, Die Auffindung der Arche Noä durch Jakob von Nisibis, in ZfKG 1905.

*Neubauer Ad.*, La géographie du Talmud. Paris 1868.

*Nikel Joh.*, Genesis und Keilinschriftforschung, Freiburg i. Br. 1903.

— — Herodot und die Keilschriftforschung. Paderborn 1896.

*Никольский М. В.*, Клинообразныя надпису ванскихъ царей, открытыя въ пределяхъ Россиі (Վանի թագաւորների. սեպագիր արձանագրութիւնները, որոնք Ռուսաստան գտնուած են)։ Древн. Вост. հատ. I, պրակ III (1893), էջ 375—483։

*Никольский М. В*, Клинообразныя надписи Закавказя (*Անդրկովկասի սեպագիր արձանագրութիւնները*)։ Матерялы по Археологіи Кавказа. *պրակ* V Москва 1896.

*Nöldeke Th.*, Untersuchungen zur Kritik des Alten Testamentes. Kiel 1869.

— — Zwei Völker Vorderasiens (die Kadischäer und die Ortäer). ZDMG 33 (1879), S. 157—165.

— — Kardu und Kurden. Beiträge zur alten Geschichte und Geographie. Festschrift für Heinr. Kiepert. (Berlin) 1898, S. 73—81.

— — Beiträge zur semitischen Sprachwissenschaft. Straßburg 1904.

*Nötscher Friedr.*, Das Buch Jeremias, übersetzt und erklärt. In der Serie: Die Heilige Schrift des Alten Testaments, hsg. von Feldmann und Herkenne, Bd. VII, Abt. 2. Bonn 1934.

*Olearius Adam*, Vermehrte neue Beschreibung der Moskowitischen und Persischen Reyse. Schleswig 1656.

*Opitz Diet.*, Der Tod des Humbaba. AfO V (1928—1929), 207—213.

*Orelli C. D. von*, Der Prophet Jeremias. München 1905.

*Патканов К.*, Ванскія надписи и значеніе ихъ для исторіи Передней Азіи (*Վանի արձանագրութիւնները և սրանց նշանակութիւնը Առաջակողմեան Ասիոյ պատմութեան համար*)։ Журн. Мин. Народнаго Просв. 1874—1881. Թ 1 և 6ը

— — О клинообразныхъ надписяхъ ванской системы открытыхъ въ предяляхъ Россіи (*Վանի սեպագիր արձանագրութիւնները, որոնք [illegible]ուսատան գտնուած են*)։ Журн. Мин На Проск. 1883.

*Peeters P.*, La légende de St. Jacques de Nisibe. Anal. Bot. t. XXXVIII, fasc. II et III (1920), pp. 285—373.

*Пиотровский Б. Б.*, Урарту-древнейшее государство Закавказья (Ուրարտու—Անդրկովկասի ամենահին թագավորությունը)։ Ленинград, 1939.

— — Скифы и Закавказье. (Սկյութները և Անդրկովկասը)։ Труды отдела Востока III (1940). Ленинград.

*Plinius*, Naturalis historia. Ed. L. von Jan. Leipzig 1854—1865.

*Polybius*, ed. J. Bekker. Berol. 1844.

*Potratz A.*, Die Pferdegebisse des zwischenstromländischen Raumes. AfO XIV (1941).

*Prášek Just.*, Geschichte der Meder und Perser bis zur makedonischen Eroberung, 1. Bd., 1906; 2. Bd., 1910.

*Procksch Otto*, Die Genesis. Leipzig 1913.

*Ptolemaei* Claudii geographia. Ed. Muller, Paris 1901.

*Rawlinson G.*, History of Herodotus. London 1862.

*Rawlinson Henry*, The Persian cuneiform inscription at Behistum. Decyphered and translated. London 1846. JRAS I, Ser. 10, 11.

*Roensch H.*, Das Buch der Jubiläen oder Die kleine Genesis. Leipzig 1874.

*Saint-Martin*, Mémoires historiques et géographiques sur l'Arménie. Paris 1818.

*Sanda A.*, Untersuchungen zur Kunde des alten Orients, in MVAG 1902 (7. Jahrgang), 2.

— — Nochmals Ararat und Urartu, in BZ II (1904).

— — Die Bücher der Könige. II. Halbb. Das 2. Buch der Könige. Münster i. W. 1912.

— — Moses und der Pentateuch. Münster i. W. 1924.

*Sandalgian Jos.*, Les inscriptions cunéiformes urartiques transcrites. Venise 1900.

— — Hist. documentaire de l'Arménie des âges du paganisme (1410 av. 305 apr. J.-C.). 2 Bde. Rome 1917.

*Sayce A. H.*, The cuneiform Inscriptions of Van, deciphered and translated. JRAS New Series 14 (Art. XXII), pp. 377—732.

*Schlögl Niv.*, Die Bücher der Könige. Wien 1911.

— — Die Bücher der Chronik. Wien 1911.

*Schmalzl P.*, Das Buch Ezechiel. Wien 1901.

*Schmidtke Fr.*, Die Japhetiten der biblischen Völkertafel. Breslau 1926.

*Schrader E.*, Zur Geographie des assyrischen Reiches. Sitzungsberichte der Königl. preußischen Akademie der Wissenschaften zu Berlin (1890), XVII, S. 321—344.

— — Die Namen der Meere in den assyrischen Inschriften. Abhandl. der Berl. Akademie der Wissensch., 1878.

*Sellin E.*, Geschichte des israelitisch-jüdischen Volkes. Leipzig 1924.

— — Das Zwölfprophetenbuch, in Kommentar zum Alten Testament, Bd. XII, 1922.

*Spiegel Fr.*, Erânische Altertumskunde, 3 Bde. Leipzig 1871.

*Strabonis* Geographica recogn. Meineke. Leipzig 1851—1852.

*Strack Herm.*, Die Genesis[2]. München 1905.

*Streck Max.*, Das Gebiet der heutigen Landschaften Armenien, Kurdistan und Westpersien nach den babylonisch-assyrischen Keilinschriften. ZA XIII (1898), S. 57—110, XIV (1899), S. 103—172. *Հայերէն թարգմանութիւնը՝ Հ. Բ. Գիւլէզեկճեան, Հայաստան, Քրդստան եւ արեւմտեան Պարսկաստան, բաբելական-ասորեստանեան սեպագրերու. Համաձայն: Հանդ. Ամս.* 1899—1900, 1902 *եւ* 1904: *Առանձնատիպ. Ազգ. Մատ. Ծ.: Վիեննա* 1904:

— — Assurbanipal und die letzten assyr. Könige bis zum Untergang Ninivehs. 3 Bde. 1916.

*Tabari*, Annales ed. M. de Goeje (cum aliis) 1879 sqq.

*Thureau-Dangin Fr.*, Une relation de la huitième campagne de Sargon. Paris 1912.

*Tomaschek W.*, Sasun und das Quellengebiet des Tigris. Sitzungsberichte der Kais. Akad. der Wissenschaften in Wien, phil.-hist. Klasse, Bd. CXXXIII, IV. Wien 1895. Հայերէն թարգմանութեամբ՝ Հ. Բ. Գիլէզիկճեան, Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները — պատմական եւ աշխարհագրական հետազօտութիւն։ Հանդ. Ամս. 1896. Թ. 1, 3, 5. 8—10։ Արտատպ. Ազգ. Մատ. ԻԱ։ Վիեննա 1896։

*Ungnad Ar.*, Die ältesten Völkerwanderungen Vorderasiens (Kulturfragen, Heft 1), Breslau 1928.

— — Gilgamesch-Epos und Odyssee (Kulturfragen, Heft 4/5).

*Vigouroux F.*, Dictionnaire de la Bible. Paris 1895.

*Weber S.*, Ararat in der Bibel. Theol. Quartalschr. 83 (1901), Heft 3, S. 321—374. Հայերէն թարգմանութեամբ՝ Հ. Բ. Գիլէզիկճեան, Արարատը Ս. Գրոց մէջ։ Հանդ. Ամս., 1901. Թ. 7. 8. 10—12։ Արտատպ. Ազգ. Մատ. ԼԹ; Վիեննա 1901։

— — Ausgewählte Schriften der armenischen Kirchenväter, in „Bibliothek der Kirchenväter“, hsg. von Bardenhewer. 2 Bde. München 1927.

*Weidner*, Politische Dokumente aus Kleinasien. Leipzig 1923.

*Weisbach F. H.*, Die Keilinschriften der Achämeniden. 1911.

*Wiesner Jos.*, Fahren und Reiten in Alteuropa und im Alten Orient. AO 38, 2/4 (1939).

*Wilke F.*, Das Skythenproblem im Jeremiabuch. Alttestamentl. Studien. Festschr. f. R. Kittel. 1913. S. 222—254

*Winckler H.*, Keilinschriftliches Textbuch zum Alten Testament[3]. Leipzig 1909.
— — Die Völker Vorderasiens. 1903. (Der alte Orient, hsg. von der Vorderasiatischen Gesch. Jahrg. 1, Heft 1.)
*Wutz Fr.*, Onomastica sacra. Leipzig 1914—1915.
*Xenophon*, Anabasis. Ed. L. Dindorf. Leipzig 1855.

---

# ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ABL = R. F. Harper, Assyrian and Babylonian Letters. London 1892—

ADD = C. H. W. Johns, Assyrian Deeds and Documents. Cambridge 1898—

AfO = Archiv für Orientforschung. Հրատ. E. F. Weidner, Berlin 1923 — (Առաջին երկու հատորները [I 1928 եւ II 1924—1925] լոյս տեսած են իբր Archiv für Keilschriftforschung).

AJSL = American Journal of Semitic Languages and Literatures. Chicago 1895—

AKA = E. A. Wallis Budge and L. W. King, Annals of the Kings of Assyria. London 1902.

AOB = Altorientalische Bibliothek, Bd. I (Die Inschriften der altassyrischen Könige, bearb. von E. Eberling, S. Meißner, E. F. Weidner. Leipzig 1926.

AOF = H. Winckler, Altorientalische Forschungen. Leipzig 1893—

AR = Archiv für Religionswissenschaft, hsg. von Achelin. Freiburg 1898—

ATAO 4 = Alfred Jeremias, Das Alte Testament im Lichte des alten Orients. 4. Aufl., 1930.

BZ, BibZ = Biblische Zeitschrift, hsg. von Göttsberger und Sickenberger. Freiburg i. B. 1903 —

Chron.G = Die babylonische Chronik G (Brit. Mus. Nr. 21901), veröffentlicht von C. J. Gadd, The Fall of Niniveh, 1923.

CT = Cuneiform Texts from Babylonian Tablets in the Brit. Museum. London 1896.

Drewn. Wost. = Древности Восточныя. Труды Восточной Комиссіи Императорскаго Московскаго Археологическаго Общества, 1899—

EGAO = Fritz Hommel, Ethnogr. und Geogr. des alten Orients Ա. մասն իբր Grundriß der Geographie und Geschichte des alten Orients, 1904. Բ. մասը 1926:

JRAS = The Journal of the Royal Asiatic Society. London 1835—

KAH = Keilschrifttexte aus Assur historischen Inhalts. Bd. I von L. Messerschmidt (Leipzig 1911). Bd. II von O. Schroeder (ib. 1922).

KAT [3] = Eb. Schrader, Die Keilinschriften und das Alte Testament, 3. Aufl., bearb. von H. Winckler und H. Zimmern, 1903.

KB = Keilinschriftliche Bibliothek. Sammlung der assyr. und babyl. Texte, hsg. von Schrader. Berlin 1883—

KBo = Keilschrifttexte aus Boghazköi. Leipzig 1916—

KGF = Eb. Schrader, Keilinschriften und Geschichtsforschung. Gießen 1878.

Kn = Knudtzon Gebete. Leipzig 1893. Kn համառօտագրութեամբ իրմէ հրատարակուած ընտգիրները կ'ակնարկուին:

KTS = Die Keilschrifttexte Sargons. Nach den Papierabklatschen und Originalen neu herausgegeben von H. Winckler. Leipzig 1889.

MDOG = Mitteilungen der Deutschen Orientgesellschaft zu Berlin, 1900—

MGWJ = Monatsschrift für Geschichte und Wissenschaft des Judentums. Begründet von Frankel, Breslau 1855—

MVAG = Mitteilungen der vorderasiatischen Gesellschaft. Berlin 1886—1920.

OLZ = Orientalische Literaturzeitung, hsg. von Peiser. Berlin 1898—

PRT = Ernst Klauber, Politisch-religiöse Texte der Sargonidenzeit. Leipzig 1913.

R = Rawlinson, The Cuneiform Inscriptions of Western Asia, 5 հատ. London 1861—1880.

RE = Pauly-Wissowa, Real-Encyclopädie der klassischen Altertumswissenschaft. Stuttgart 1894—

REA = Revue des Etudes Arméniennes. Paris 1920—1930.

ROC = Revue de l'Orient Chrétien. Paris 1896—

TB = Altorientalische Texte und Bilder zum Alten Testament, in Verbindung mit A. Ungnad und H. Ranke, hsg. von H. Greßmann. Tübingen 1909.

ThQS, ThQsch = Tübinger Theologische Quartalschrift, hsg. von Gratz 1819—

TSA = H. de Genouillac, Tablettes sumériennes archaïques. Paris 1902.

VAB = Vorderasiatische Bibliothek. Leipzig 1907—

VBEA = Verhandlungen der Berliner Gesellschaft für Anthropologie, Ethnologie und Urgeschichte.

ZA = Zeitschrift für Assyriologie und verwandte Gebiete, hsg. von Bezold. Leipzig 1886—

ZfE = Zeitschrift für Ethnologie. Organ der Berliner Gesellschaft für Anthropologie, Ethnolgie und Urgeschichte. Berlin 1869—

ZfkTh = Zeitschrift für katholische Theologie. Innsbruck 1877—

*ՀԱ = Հանդէս Ամսօրեայ, Հայագիտական Ուսումնաթերթ։ Վիեննա* 1887—

---

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ ԱՌՋԵՒ

Ստորեւ կը հրատարակենք քաղուածաբար Դկտ. Հ. Վ. Ինգլիզեանի «Հայաստան Ս. Գրքի մէջ» աշխատութեան նուիրուած գրախօսականները, ուսկից կը տեսնուի, թէ ի՜նչ ընդունելութիւն գտաւ յիշեալ աշխատութիւնը Եւրոպայի մասնագէտներու քով:

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ «ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ»Ի

1. Dr. H. Stieglecker: Theol.-prakt. Quartalschrift (Linz), 89 (1936), էջ 871:

*«Այս նշանակալից գործը կը խօսի հիմնական ու խորագնին կերպով Ս. Գրքի այն տեղիքներուն մասին, որոնք Հայաստանի հետ աղերս ունին...: Պարտական ենք հայ ժողովրդեան, որ հակառակ այն զարհուրելի հարուածներուն յաջողակ գիտնականներու զարմանալի երկար շարք մը յառաջ բերած է, մեր անկեղծ զարմանքն ու հիացումը յայտնել. իսկ Հ. Ինգլիզեանի այս հիանալի գործին համար այս հայ ժողովուրդը միայն շնորհաւորել կրնանք»:*

2. Franz Zorell S. J.: Biblica (Roma), XIII (1936), էջ 385—386:

*«Հեղինակը հետաքրքրական, Ս. Գրոց մեկնողութեան համար ոչ աննշանակ, բայց ինչ*

ինչ դժուարութիւններով եւ իրարու հակառակ կարծիքներով մթագնած առարկայ մը խուզարկութեան նիւթ ըրուած է...: Աղբիւրներու չափազանց հարուստ ցանկ մը գործը կը կանխէ: Հին, Միջին եւ Նոր դարէն բազմաթիւ պատմական, աշխարհագրական, ազգագրական, մեկնողական եւ ուրիշ գործերու կը դիմէ...: Ս. Գրքի մեկնիչներուն համար ալ կը գտնուին ինչ ինչ հետաքրքրական եւ կարեւոր ճշդումներ: Այսպէս, միայն քանի մը բան յիշատակելու համար, հեղինակը Ծն. Ը. 4 տեղիքի Արարատի հարցին մէջ այն եզրակացութեան կու գայ թէ այս Ա ր ա ր ա տ ը, բեւեռագրերու Ուրարտուն է... եւ այն թէ սա նոյն է հայկական Տաւրոս-Մասիսի հետ, ուր գտանք Ուրարտացիներուն բնակավայրը Ն. Ք. ԺԳ. դարուն համար: ...Հարկ չկայ առանձին կերպով մատնանշելու թէ այս ճշդումը մեծ նշանակութիւն ունի Ծն. Ը. 4 տեղիքին հիմը կազմող յիշատակարանին խոր հնութեան համար: Հեղինակը ճիշդ այս տեղ իրաւամբ յառաջ կը բերէ Ունգնատի խօսքը, թէ Հին Կտակարանի աւանդութիւնը հին Արեւելքին շատ աւելի լաւ տեղեակ է քան որ ոմանք մտքէ կրնային անցնել...: Որչափ կը դիտեմ հեղինակը ժրաջան ու աշալուրջ կերպով գործածած է աղբիւրները...: Հեղինակը մեր առջեւը կը դնէ գործ մը, որ ամէն Հին Կտակարանով զբաղողը կը շահագրգռէ եւ ամէն մարդ, որ հեղինակին շօշափած հար-

ցերով կը զբաղի, պէտք չէ այս գիրքն անտեսել»:

3· J. Lebon: Le Muséon (Louvain), 49 (1936), էջ 145:

«Այս՝ Ս. Գրքի հայ թարգմանութեան 1500ամեակին առթիւ հրատարակուած ուսումնասիրութիւնն աչքառու է հեղինակին ցոյց տուած իրապէս եզական հմտութեամբ...: Երկասիրութիւն մը, որ անտարակոյս շատ աշխատութիւն արժած ըլլալու է եւ որ շատ հետաքրքրութեամբ պիտի կարդացուի Ս. Գրքի եւ հայ հին պատմութեամբ զբաղողներու կողմէն»:

4· R. Janin: Écos d'Orient (Paris), 40 (1936), էջ 249:

«...Այս զանազան խուզարկութիւնները յեցած են առատ եւ հիմնաւոր փաստերու վրայ, զորոնք հեղինակը կը հանէ ամենավերջին գիւտերէն եւ Վերին-Միջագետքի եւ անոր սահմանակից գաւառներու վրայ արդէն իսկ լոյս տեսած ամենալաւագոյն ուսումնասիրութիւններէն: Հետեւաբար զանոնք կարդալն կրկնակի շահեկանութիւն ունի, այնու որ անոնք տեղեկութիւն կու տան մեզի ոչ միայն Հայոց, այլ եւ անոնց սահմանակիցներու մասին, քրիստոնէական թուականը կանխող դարերուն մէջ»:

5. K. Mlaker: Orientalische Literatur-Zeitung (Leipzig), 1936, էջ 696—697:

«Առաջինկոյ մենագրութիւնն... իրական պակաս մը կը լրացնէ. որովհետեւ թէ՛ Հին Կտակարանով եւ թէ՛ Հին արեւելքի պատմութեամբ զբաղողը սովորաբար հայերէնի բաւականաչափ ներհուն չէ անոր հարուստ աղբիւրներն ու մատենագրութիւնը շահագործել կարենալու համար: Արդ ուրախալի է որ ծննդեամբ հայ մը, որ իր հայրենիքի պատմութեան եւ բոլոր աղբիւրներուն կատարելապէս ծանօթ է, Ս. Գրքի այն տեղիքներով կը զբաղի, որոնք Հայաստանի կը հային...: Ըստ այսմ այս ուսումնասիրութիւնը շատ արդիւնաւէտ պէտք է նկատել, մանաւանդ Հին Կտակարանի պահպանողական տեսակէտը հաստատուն բռնելով: Ամէն պարագային այս եզրակացութեանց հիմնական արժէքը պէտք է չեզոքնենք»:

6. Korrespondenz- und Offertenblatt für alle katholischen Geistlichen Deutschlands (München), 46 (1936), Nr. 3.

...Հեղինակը կը խօսի Ս. Գրքի այն տեղիքներու մասին, որոնք ո եւ է կերպով Հայաստանի հետ կրնան աղերսի մէջ դրուիլ: Այս գիտնական խուզարկութիւններու համաձայն, որոնք զարմանալի հմտութիւն մը կը ցուցնեն, Արարատը նոյն է բեւեռագրերու Ուրարտուի հետ, եւ Հայկ. Տարոնի մէջ փնտռելու է...: Խուզարկութեանց ար-

դիւնքները շատ հետաքրքրական են եւ կը վկայեն թէ Ս. Գրքի պատմուածքները լաւ պատմական հիմք ունին»:

7. Dr. Benedikt Probst O. S. B.: Christlich-pädagogische Blätter (Wien), 85 (1935), էջ 265:

«...Առաջնորդը հարցերը շատ յաջող կերպով ուսումնասիրուած եւ յստակ բերուած առատ մասնագրութիւնը լաւ կերպով օգտագործուած են: Ջրհեղեղի հարցի մասին եղած ուսումնասիրութիւնն ոչ-մասնագէտի համար ալ գործնական արժէք ունի, թէեւ ամէն բանէ աւելի զուտ գիտական նկարագիր ունի»:

8. H. Philip: Petermanns Geogr. Mitteilungen (Gotha), 1936, էջ 289:

«Հեղինակը կը բանայ պատմական աշխարհագրութեան քիչ մը անծանօթ երկիր մը: Այս գիրքն՝ առ նուազն կը ցուցնէ թէ Հին Կտակարանը լաւ ծանօթութիւններ ունէր այս երկրի մասին, այնպէս որ այս աշխատասիրութիւնը հին արեւելեան ուսումնասիրութեանց համար օգտակարապէս պիտի գործածուի...»:

9. Jos. Henninger: Anthropos (Wien), Bd. 31, Heft 3/4, էջ 642:

«...Աշխատասիրութիւնս կ՚ընծայէ գնահատելի նպաստ մը հին արեւելքը ճանչնալու համար: Մասնաւորապէս արժէքաւոր կը

դառնայ գործս հայ մատենագրութիւնն առատօրէն օգտագործած ըլլալուն համար»։

10. W. H[engstenberg]: Byzantinische Zeitschrift (Leipzig), 36 (1936), էջ 239—240:

«...Հայաստանի եւ անոր հարեւան երկիրներու աշխարհագրութեան ինչպէս եւ ազգագրութեան համար չափազանց յուսալի այս ուսումնասիրութեան արժէքն աւելի կը բարձրանայ 9 էջէ աւելի բաղկացած աղբիւրներու ցանկով»։

11. A. Šanda: Archiv Orientálni (Praha), 9 (1937), էջ 246—247:

«...Գրութեանս գլխաւոր ուժն եւ անոր մնայուն արժէքը յայնմ կը կայանայ, որ ընթերցողը ո եւ է կերպով կապ ունեցող բոլոր նիւթերն իր աղբիւրներով հոս դիւրամատչելի կերպով ամփոփուած կը գտնէ։ Որովհետեւ հեղինակը հին հայերէնի լաւ հմուտ է՝ կը յուսանք իրմէ տակաւին ուրիշ նման գործեր հայկական աղբիւրներու մասին՝ լուսաբանուած բնագրերու եւ յոյն վկայութիւններով, տեսնել»։

12. Dr. Sahag Gokian: Ani (Bucureşti), I, պր. Դ. (1936), էջ 154։

«Դկտ. Հ. Վահան Ինգլիզեանի այս հմտալից գործը մանրակրկիտ խուզարկութիւններով մեծարժէք ճշդումներ կ՚ընէ շօշափուած խնդրոց մէջ, որոնք մթութիւններով լի են»։

13. V. Christian: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes (Wien), 44 (1936), էջ 154:

«...Գլխաւոր մասը կը գրաւէ Արա-րատ լեռը..., զոր հեղինակը ծանրակշիռ փաստերով Հայկական Տաւրոսի արեւելեան կողմը կը փոխադրէ...: Այն աւանդութիւնը, որ Հայերն Աշկուզա-Սկիւթացիներու հետ յարաբերութեան մէջ կը դնէ, հեղինակը կը մերժէ իբրեւ պատմականօրէն անհիմն: Վեր-ջին գլուխը վերջապէս հաւանական կը դարձնէ, որ Աստուածաշունչի մէջ յիշուած Թոգարմայի բնակիչներն իբրեւ Հայ համա-րելու է...»:

14. Universitätsprofessor Dr. Joh. Gabriel: Reichspost(Wien), 21 Հոկտ. 1935, էջ 5:

«Ճիշդ Ս. Գրքի հայերէն թարգմանու-թեան 1500ամեակի հանդէսի առթիւ կը նուիրէ մեզի Դկտ. Հ. Վահան Ինգլիզեան այս ծանրակշիռ աշխատասիրութիւնը...: Չորս գլուխներու մէջ... ներհուն հեղինակը կը խօսի Ս. Գրքի այն տեղիքներու մասին, որոնք ո եւ է կերպով Հայաստանի հետ ա-ղերսի մէջ դրուած են: Ընթերցողներու ա-ւելի լայն շրջանակներ պիտի հետաքրքրուին մանաւորապէս առաջին գլխուն խուզար-կութիւններով, ուր հեղինակն այնպէս հըմ-տալից ինչպէս եւ պայծառ կերպով կը ցուցնէ թէ Ս. Գրքի մէջ յիշուած Արարատ լեռը... Հայկ. Տաւրոս-Մասիսի մէջ փըն-

տուելու է:... Ինգլիզեանի այս աշխատութիւնն, որ նիւթին հետ կապ ունեցող ամբողջ գրականութիւնը խղճմտալից կերպով նկատի կ'առնէ, մասնաւորապէս այնպէս բարձր մակարդակի վրայ գտնուող հայ ժողովրդեան ամէն ճանչցողին եւ յարգողին, ինչպէս եւ Աստուածաշունչով հետաքրքրուողին համար չափազանց օգտակար, ընթեռնլի գործ մըն է: Առանց ջատագովական ազդեցութիւն ընել փնտռելու կը ցուցնէ, թէ Հին Կտակարանի աւանդութիւնը հին Արեւելքին շատ աւելի լաւ տեղեակ է քան որ ոմանք մտքէ կրնային անցնել»:

Այս գրախօսականը հրատարակուած է նաեւ Österreichische Pilgerbriefe (Wien), V (1936), էջ 29:

15. Fl[eischmann]: Der Orient (Potsdam), 18 (1936), Heft 1, էջ 23—24:

Շատ խնամոտ, հմտալից — եւ իր այս խնամքով ու հմտութեամբ համոզիչ աշխատանքը Վիեննական Մխիթարեանի մը, է միաժամանակ Ս. Գրքի հայերէն թարգմանութեան 1500ամեակի յիշատակին նուէր մը...: Ջերմ կերպով կը պաշտպանէ հեղինակը թէ Ծն. Ը. 4 տեղիքով հին աւանդութիւն մը մեզի կը ներկայանայ»:

16. H. Wiesmann S J.: Stimmen der Zeit (Freiburg i. B.), 1938, էջ 279:

«Գնահատելի հետաքննութեամբ եւ յաճախ ի հեռուստ անգամ նիւթին հայոց գրա-

կանութիւնն օգտագործելով հեղինակուած այս գրութիւնը... բնականաբար մասնաւորապէս պիտի հետաքրքրէ մասնագէտ ընթերցողներու փոքր շրջանակ մը: Սակայն անոր երկու տուեալներն ամէն մարդ պէտք է գիտնայ. նախ թէ Ծն. Ը. 4 տեղիքին Արարատն... իրաւամբ հայկական Տաւրոս-Մասիոս լեռներուն մէջ պէտք է փնտռուի եւ դարձեալ թէ Հին Կտակարանի աւանդութիւնը հին Արեւելքին շատ աւելի լաւ տեղեակ է, ինչպէս հոս վերստին կ'ապացուցուի, քան հարեւանցի քննադատութիւն մը յաճախ կ'ենթադրէ»:

17. J. Lebon: Revue d'Hist. Eccl. (Louvain), 32 (1936), էջ 472:

«...Կը շատանանք մատնանիշ ընելով Հ. Ինգլիզեանի տեղեկութեան եւ հմտութեան ճոխութիւնն ու ընդարձակութիւնն եւ այն բազմաթիւ կոչումները, զորոնք նա յառաջ կը բերէ քրիստոնեայ յոյն, լատին, հայ, ասորի եւ արաբ հեղինակներէն, որոնք խնդրոյ նիւթ կէտերուն աւանդական մեկնութեան վկաներն են: Այս մեծապէս ճոխ վաւերականութեան ապացոյցներն ու եզրակացութիւններն ապահովապէս եւ իրաւամբ պիտի գրաւեն մասնագէտներու ուշադրութիւնը»:

Նամակներէն կը հրատարակենք միայն Լեհաստանի հանգուցեալ Հայ Մետրոպո-

լիւոլ՝ Յովսէփ Արքեպիսկոպոս Թէոդորովիչի 28 Նոյ. 1935 թուակիր գրութիւնը.

Մեծարգոյ, սիրելի Հայր.

Սրտանց շնորհակալ եմ Ձեզ ոչ միայն անոր համար, որ ինծի Ձեր գիրքն առաքած էք, այլ նաեւ անոր համար, որ այսպիսի աշխատանքի մը ձեռնարկած էք:

Այս գիրքը կ'ընձեռէ իրապէս գեղեցիկ նպաստ մը ճանչնալու Հայաստանի այնպէս յարգելի աւանդութիւնն ու անցեալը: Ինծի համար Ձեր աշխատանքը գրեթէ յայտնութիւն մըն է...: Կրկին շնորհակալ եմ Ձեզի ի բոլոր սրտէ եւ մնամ

մասնաւոր յարգանացս հաւատեօք

† Teodorowicz

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Առաջիկայ ուսումնասիրութիւնը «Հայաստան Ս. Գրքի մէջ» տիտղոսը կը կրէ, թէեւ «Հայաստան» անունն այսօրուան մեզի հասած Աստուածաշունչի մէջ միայն Հին Կտակարանի գրքերուն մէջ կը գտնուի: Սակայն Գործք Առաք. Բ. 9 տողին[1] կարելի չէ բնաւ անտեսել, որովհետեւ ակնյայտնի է որ հոն «Հրէաստան» անունն իմաստէ զուրկ է: Այնու որ սրբազան մատենագիրը կ'ուզէ Հոգեգալստեան հրաշագործ նկարագիրն երեւան բերել, սակայն բնաւ հրաշալի չէ, երբ ի Հրէաստան գալիլեացւոյ մը լեզուն հասկցուի, որչափ ալ գալիլեական գաւառաբարբառը հրէականէն տարբեր եղած ըլլայ: Բաց աստի շատ զարմանալի է որ Հրէաստան Միջագետքի եւ Գամիրքի միջեւ կը յիշուի: Ծանօթ է որ Տերտուղիանոս[2] եւ Ս. Աւգոստինոս[3], որ տակաւին մինչեւ 427, իր Retractiones գործքին մէջ եւ մինչեւ իր մահն

---

[1] *Καὶ οἱ κατοικοῦντες . . . Ἰουδαίαν.*

[2] In universa terra exiit sonus eorum et usque ad terminos terrae verba eorum . . . Cui enim et aliae gentes crediderunt, Parthi, Medi, Elamitae et qui inhabitant Mesopotamiam, *Armeniam*, Phrygiam, Cappadociam et incolentes Pontum etc. (Adversus Iudaeos 7. Migne, Patrol. lat. 2, coll. 649).

[3] Qui inhabitant Mesopotamiam, *Armeniam*, et Cappadociam. (Contra epistulam, quam vocant fundamenti, c. 9. Corpus script. eccl. lat., vol. 25, pars 1, p. 204) — Երկրորդ անգամ ի թղթին De actis cum Felice libri duo, անդ, pars 2, p. 807. Այս

Իտալայի[4] վրայ Հաստատուն կը մնայ, այստեղ փոխանակ Judaeam — *Armeniam* կը կարդայ։ Բնականաբար այս ընթերցուածին ճշդութիւնն անկարելի չէ։ Անտեղի չէ նշմարել՝ թէ Աւետարանին առաջին քարոզութեան ունկնդիրներուն մէջ նաև Հայաստանցի Հրեաներ կային։ Որովհետև Հրեայ գաղթականութեան մը գոյութեան ի Հայաստան կը վկայեն Հայ պատմագիրները, դ. օր. Փաւստոս[5], որ կը պատմէ թէ ինչպէս Պարսից Շապուհ Բ. թագաւորին Հայաստան քրիստոնէից դէմ յարուցած հալածանքի ժամանակ հայերուն հետ նաև հազարաւոր Հրեայ ընտանիքներ Հայաստանի մեծ քաղաքներէն տեղահան եղած են։ Բայց առաւել Փղաւիոս Յովսեփոսի[6] քով յիշուած Ἀρμένιοι անունով Մարքուարտ[7] «Հայ Հրեաներ» կը հասկնայ։ Փաւստոսի[8] համաձայն այս Հրեա-

---

մասին տես՝ Jos. Denk, zur Itala, ի Zeitschrift für kath. Theologie 34 (1910), էջ 601, որ Armenia ընթերցուածն Աւգոստինոսի իտալական ընթերցուածը կը համարի. այս կարծիքին ունին նաև S. Weber, Die katholische Kirche in Armenien, 1903, էջ 92, Մաղաքիա Արքեպ. Օրմանեան, Ազգապատում Ա., էջ 22. հակառակ են Հ. Գ. Ֆէրհատեան, Հայաստա՞ն թէ Հրէաստան, Հանդ. Ամս. 1910, էջ 321, Եր. Վ. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ, 1908, էջ 12։

[4] Jos. Denk, անդ, էջ 601։

[5] Դ. 55, էջ 169—174։ Ինչպէս պատմագիրս եւ Մովսէս Խորենացի (հմմտ. Բ. 19, էջ 135. Բ. 49, էջ 177. Բ. 65, էջ 199. Գ. 35, էջ 300) կը հաղորդէն թէ Հայաստանի նշանաւոր քաղաքները բազմաթիւ հրեաներով լեցուն էին։

[6] Ant. Jud. XIII, 6 (Niese, § 92).

[7] Streifzüge, էջ 289, ծնթ. 4։

ները Տիգրան Մեծ Պաղեստինէն տեղահան ըրած բերած է, կարծելով որ Տիգրանի արքայական աշխարհակալութիւնը մինչեւ Պաղեստին տարածուած է, որ սխալ է. Պտղոմայիս անոր դէպի հարաւ-արեւմուտք աշխարհակալութեան սահմանաքարն եղաւ [9]: Բաբելոնի համաձայն հրեաներու գաղթականութիւնը Հայաստան, ինչպէս եւ Փոքր Ասիա կը սկսի առաջին Սելեւկեաններէն, որոնք սովոր էին իրենց հպատակ, մասնաւորապէս հեռաւոր երկիրներու բնակիչներէն մաս մը կամովին կամ բռնի գաղթել տալ՝ իրենց նորահաստատ գաղթավայրերը մարդաշատ ընելու համար [10]: Ըստ այսմ հրեայ գաղութներ կ'ունենանք Հայաստանի մէջ արդէն նախաքրիստոնէական ժամանակէն [11], որ անտարակոյս անձուկ յարաբերութեան մէջ էր

---

[8] Անդ, էջ 173:

[9] Jos. H. Ant. XIII, 16, 4 (Niese, §§ 419—422).

[10] «Այս դրութեամբ անթիւ հրեայ ընտանիքներ, Երուսաղէմէն, Բաբելոնէն եւ Միջագետքէն Սիւրիա, Հայաստան եւ Փոքր Ասիոյ զանազան կողմերն աքսորուեցան: Այսպէս զի գաղթականներն իրենց նոր բնակավայրին կապուին եւ ուրիշներն ալ ձգուին, անոնց տուրքերէ թեթեւութիւն եւ արտակարգի արտօնութիւններ կը արուէին» (E. Babeloe, La tradition phrygienne du déluge. Revue de l'hist. des religions, t XXIII [1891], p. 177).

[11] Տասը ցեղերու արտաքսավայրերէն մին էր halah (Հմմտ. Դ. Թագ. ԺԷ. 6, ԺԸ. 11), զոր Մարքուարտ (Eranšahr, էջ 159, Streifzüge, էջ 283) Καλαχηνή-ի հետ (Քաթման-չայի հարաւային կողմը) կը նոյնացնէ: Եթէ այս համադրութիւնը ճիշդ ըլլայ, այն ժամանակ Հայաստանի մէջ հրեայ գաղութի մը գոյութեան ապացոյցը կ'ունենանք արդէն Ս. Գրքէն: Տարօրինակ է սակայն հոս հայերէն ընթերցուած Ալար (ինչպէս ունինք նաեւ մեր Մատենադարանի երկու ձեռագրին մէ-

մայր երկրին հետ, բատ որում ամէն արու խորայէլացի տարուէ տարի (երեք անգամ) Երուսաղէմ ուխտի պէտք էր որ երթար եւ ամենագլխաւոր տօնակատարութեանց ներկայ ըլլար: Սակայն ցորչափ որ հաստատուն բնագրական ապացոյցներ չկան՝ Գործք Առաքելոցի (Բ. 9) այս տեղիքը կը ծնոյ վիճելի տարակոյս մը, որուն մեկնութեան ամէն փորձ ենթադրութեան սահմանէն անդին չ'անցնիր, մանաւանդ որ Ս. Հայրերու կոչումները չորեքպատիկ տեղ կը ներկայացնեն, բատ որում կա՛մ Հրէաստան կը պակսի կա՛մ տեղը դրուած է Հայաստան, Սիւրիա կամ Հրեայք[12]: Բատ այսմ հակառակ ուսումնասիրութեանս տրուած ընդհանուր վերնագրին կրնանք ամենայն իրաւամբ Հին Կտակարանի գրքերուն վրայ միայն ծանրանալ, որոնցմէ կ'առնունք այն տեղիքները, որոնք Հայաստանի կը հային եւ կամ անոր հետ սերտ կերպով աղերսի մէջ են: Այսպէս կը խօսինք Արարատ, Մինի, Ասքանազ եւ Թորգոմ անուններու մասին:

---

ռազիրները՝ Թ. 55, Թղ. 188ա¹ եւ Թ. 71, Թղ. 185բ¹). մինչ Գեյխառան եբր. աւելի նման կը կարդայ halah եօթան. ուրի Αλαε, իսկ Holmes-Parsonsի քննական հրատարակութիւնը չի ներկայացներ հայերէնի հետ նոյն ընթերցուած մը (աւելի կը նմանին Ελλαθ Cod. 19 Ελααθ Cod. 82, 108 եւ Ἀσάθ [sic] Cod. 93), այնպէս որ եթէ հայ. Ալաք ընթերցուածը յոյն. Ε եւ Θ եւ հայերէնի է եւ Թ գլխագրերուն չփոթութեան չվերագրենք, մարդ կը փորձուի վարկեան մը կարծել որ հայ թարգմանիչին ունեցած է եբրայեցերէն բնագիր մը, որ փոխանակ חֲלַח ի կարդացած է הֲלַח:

[12] Հմմտ. Jos Denk անդ, էջ 600:

ԳԼՈՒԽ Բ.

# ԱՐԱՐԱՏ

## § 1. ԱՐԱՐԱՏՆ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ ԳՐՔԵՐՈՒՆ ՄԷՋ

*Աստուածաշնչի առաջին էջերուն մէջ արդէն մեր առջեւը կ'ելլէ Արարատ անունը: Ծննդոց գրքին Ը. 4 մէջ կը կարդանք՝ «Եւ նստաւ տապանն յեւթներորդում ամսեանն ի քսանեւեւթն ամսոյն ի լերինս Արարատայ»: Եբրայեցերէն բնագիրն ունի* al hārē arārāṭ, *Եօթանասնից թարգմանութիւնը՝* ἐπὶ τὰ ὄρη τὰ Ἀραράτ, *իսկ Քաղդէականն ունի՝* ṭūrē qardū *ինչպէս նաեւ Պեշիտտան՝* al ṭūraī qardū *եւ արաբերէն թարգմանութիւնն՝* ala ğibāli qarda, *մինչ Վուլգատան է որ ինքնայատուկ կերպով թարգմանած է՝* super montes Armeniae: *Անմիջապէս աչքի կը զարնէ, որ Եօթանասնից թարգմանութիւնն եբրայեցերէնի սեռականը* (status constructus) *վերադիր իմաստով առած է, մինչ միւս բոլոր թարգմանութիւնները ստացական-սեռական իբրեւ երկրի մ'անուն ըմբռնած են: Եւ այս պատճառաւ է որ Եօթանասնից թարգմանութեան ներկայացուցած այսօրուան ձեւը շատ ակնառու է, հոս կը սպասուէր* ἐπὶ τὰ ὄρη τὰ τοῦ Ἀραράτ, *որ իրապէս փոքրադիր ձե-*

նագրի[1] մը մէջ կը գտնուի։ Թէ այս տարբերակն սկզբնական է թէ ոչ, կարելի չէ որոշել։ Դժբախտաբար հայերէն թարգմանութիւնն ալ այստեղ մեզի ո՛ եւ է ծառայութիւն չի կրնար մատուցանել[2]։

Դարձեալ Եսայի մարգարէին քով Լէ. 38

---

[1] Հմմտ. Holmes-Parsons: τοῦ Ἀραράτ (= Codex Oxoniensis, 1126 տարիէն)։ Յունարէն բնագրերուն մէջ Արարատ եւ Հայաստան յաճախ զիրար կը փոխանակեն։ Այսպէս Ծն. Ը. 4 Որոգինէսի վեցէջեանն ունի τὰ Ἀραράτ, իսկ ուրիշները Ἀρμενίας Դ. Թագ. ԺԹ. 37 Որոգինէս ունի, εἰς γῆν Ἀραράθ, ուրիշ մը εἰς Ἀρμενίαν եւ այլն (Հմմտ. Fr. Field, Origenis Hexaplorum quae supersunt, Oxford 1875):

[2] Որովհետեւ նահանգի, գաւառի, քաղաքի, աւանի, գիւղի, լերան եւ նման դէպքերուն անունք կա՛մ սեռական կա՛մ (մասնաւորապէս երբ նախդրիւ է) անփոփոխ իբրեւ վերադիր կը գործածուին, զ. օր. գաւառն Այրարատոյ (Փաւստոս, Ե. 6, էջ 204. Ղազ. Փարպ. Զ եւ Է, էջ 9 եւ այլն) կամ Այրարատ գաւառն, գաւառին եւ այլն (տե՛ս Փաւստոս, Դ. 24, էջ 144. Ղազ. Փարպ. ԺԳ., էջ 63. Ագաթ. Ա., էջ 18, Բ., էջ 22 եւ այլն)։ Այս պատճառաւ Մարտի գիտողութիւնը՝ «Եթէ այս (՚ի լերինս Արարատայ, թարգմանութիւնը) պարզապէս հայ թարգմանիչէն կատարուած սրբագրութիւն մը չէ, այն ժամանակ ապէ կարելի է հետեւցնել թէ այս անգիրը յունարէն ներկայ բնագրէն մէջ պատուաստուած է» Ararat und Masis. էջ 2. ծանօթ. 11 անտեղի է։ Նա կ'ուզէ «Արարատայ» իբրեւ սեռական–ստացական անուն ենթադրելով թէ Արարատ նահանգին կը հայի (անդ. էջ 20), որ սակայն սխալ է։ Եթէ հայ թարգմանիչը τὰ Ἀραράτով Արարատ նահանգը հասկցած ըլլար, այն ժամանակ անպատճառ «Այրարատայ» եւ ոչ թէ «Արարատայ» տառադարձած կ'ըլլար, որովհետեւ հին մատենագիրները միայն «Այրարատ» ձեւը կը ճանչնան. հմմտ. բացի հոս յիշուածներէն Ագաթ. Ա. 15, էջ 49. 16. էջ 51. Բ. 22, էջ 137 եւ այլն։ Ասոր պիտի անդրադառնանք դարձեալ Մասիսի աւանդութեան մասին խօսած ժամանակ։

կը գտնենք Արարատի մասին յիշատակութիւն մը. «Եւ մինչ դեռ երկիր պագանէր (Սենեքերիմ) ի տան իւրում Նասրաքայ կռոց իւրոց, Ադրամելէք եւ Սարասար որդիք նորա սպանին զնա սրով եւ ինքեանք գնացին փախստական ի Հայս», այսպէս եւ Եօթանասնից թարգմանութիւնը՝ διεσώθησαν εἰς Ἀρμενίαν եւ արաբ. ’ila ’arminijjati, մինչ ըստ եբրայեցերէնի՝ nimlətu ’ereṣ arārāṭ թարգմանած է Վուլգատան in terram Ararat, իսկ Թարգում lə’ar‘ā qardū եւ Պեշիտտան նոյնը բնակիչներու անունով (Gentilicum) կը բացատրէ՝ lar‘ā dəkardəwāne: Այս դէպքը կը յիշուի նաեւ Դ. Թագ. ԺԹ. 37 մէջ, եւ այն միեւնոյն անունով եբրայեցերէն բնագրին մէջ, միայն Եօթանասնիցը փոխանակ εἰς Ἀρμενίαν ի ունի εἰς γῆν Ἀραράθ ինչպէս է նաեւ արաբերէնին, իսկ Վուլգատան փոխանակ in terram Ararat ի ունի in terram Armeniorum: Արարատ անուան կը պատահինք նաեւ Երեմ. ԾԱ. 27 (Եօթան. XXVIII, 27) «Առէք նշան ի վերայ երկրի. փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէք ի վերայ դորա զազգս: Պատուէր տուք յինէն այրարատեան[a] թագաւորութեանցն եւ աքանազեան գնդին»: Եբրայեց. mamləkōth arārāṭ, minni wəaškə-

---

[a] Կը տեսնուի որ հայ գրչագիրները հոս Արարատ անունը հասկցած են, բայց թէ՛ Ոսկանի հրատարակութիւնն եւ թէ՛ մեր Մատենադարանի Աստուածաշնչի ձեռագիր մը Թ. 55, թղ. 427ա՝ արարատեան կարդացած են:

*naz*, Նոթան. *βασιλεῖς ἄρατε*[4] *παρ' ἐμοῦ*[5] *καὶ τοῖς Ἀσχαναζέοις*, Վուլգ. regibus Ararat, Menni et Aschenez, Պեշիտ. *malkūthå daradaț*[6] *wə-darmenī wə daškənaz*, Թարգում՝ *malkəwåth 'ar'ą dəqardū mašrəįåth hormīne wəhadēb*:

Վերջապէս Տովբիթի (I. 21) յունարէն բնագրին մէջ կը կարդանք, թէ Սենեքերիմ սպանողները ἔφυγον εἰς τὰ ὄρη Ἀραράθ, Հայերէնի մէջ (Ա. 24). «փախեան նոքա ի լերինս Հայոց»: Մինչեւ հիմայ բռուածներն ամփոփելով կրնանք ըսել որ Արարատ անունը կա՛մ Արարատի կա՛մ Հայաստանի եւ կա՛մ Կորդուքի հետ նոյնացուած է: Այս տարբեր թարգմանութիւնները նկատելով բնականաբար հարց կը ծագի թէ ի՞նչ կը նշանակէ այս անունը: Ո՞ւր փնտռելու է այս երկիրը: Այս հարցը լուծելու համար նախ եւ առաջ Ս. Հայրերուն եւ հին մատենագիրներուն դիմելու ենք:

---

[4] Տարբերակներ ըստ Holmes-Parsonsի. *Βασιλείαις ἄρατε* Codd. XII, 22, 106, 228, *Βασιλεαις Αραρετ* Codd. 23, 26, 33, 49, 86, 90, 91, 144; sic nisi *Αραρατ* Codd. 36, 48, 51, 96, 198, 231, Ed. Compl. sic nisi *Ἀραρὲθ* Ed. Alex.; *Βασιλειαις Αραραθ* Cod. 41. Զարմանալի՝ *Βασιλειαις Αραρατ* (հայերէնի համաձայն է) Cod. 62, *Βασιλειαις ἀραρετε* (sic) Cod. 87), *Βασιλειας Αραρεθ* Cod. 88, *Βασιλεις Αραρατ* Cod. 229, *Βασιλειαις αρεστον* Cod. 233, *Βασιλεις Αραρεθ* Cod. 239, այս տարբերակներէն կը տեսնուի թէ տեղիքս որչափ աղաւաղուած է:

[5] Տես այս մասին Բ. Գլուխ:

[6] Ակնյայտնի է որ *aradaț* (ܐܪܕܛ) ուրիշ կէտադրութեամբ յառաջ եկած է փոխանակ ܐܪܪܛ (*ararat*):

նիւասի վերեւ Հայաստանի մէջ կը գտնուի հսկայ լեռ մը Բարիս անունով, որուն վրայ մեծ Ջրհեղեղի ժամանակ շատերն ապաստանած են եղեր, եւ այսպէս ազատած: Մէկը տապանով նաւարկած է եղեր եւ լերան գագաթը հասած եւ հոն երկար ժամանակ նաւի փայտերէն մնացորդներ մնացած են եղեր: Գուցէ այս միեւնոյն բանն է, զոր Մովսէս, հրեայ օրէնսդիրը աւանդած է»: Այս միեւնոյն տեղերը կը կարդանք նաեւ Եւսեբիոսի[8] քով, որ բաց ի Յովսեփոսի յառաջ բերած մատենագիրներէն նաեւ Աբիւդենոսը կը յիշէ: Սա կը գրէ՝ թէ (Նոյ) «անմիջապէս Հայաստանի կողմերը նաւարկած է[9]»: Թէ Եւսեբիոսի այս հեղինակաւոր մատենագիրները տապանակիր լեռն (ընդհանրապէս) Հայաստան կը փոխադրեն, կը տեսնուի նաեւ իւր Քրոնիկոնէն[10]:

Ս. Յերոնիմոս[11] Ջրհեղեղի հին զրոյցներէն կը քաղէ հետեւեալը· «Այս տապանին եւ Ջրհեղեղին յիշատակութիւնք կ'ըսեն այն ամէնքն, որոնք բարբարոսներու պատմութիւնը գրած են, որոնցմէ մին է Բերոսոս Քաղդէացին: Սա Ջրհեղեղի մասին ճառելով

---

[8] Praeparatio evangelica, lib. IX, cap. XI, XII (= Migne, Patrol. Graec., t. 21, col. 700 et 697).

[9] εὐθέως ἐπ' Ἀρμενίους ἀνάπλεε, καὶ παραυτίκα μιν κατελάμβανε τὰ ἐκ Θεοῦ

[10] Հրատ. Աւգերեան (Վենետ. 1818), հատ. Ա., էջ 31—37, 48—50, 62—63:

[11] Liber de situ et nominibus, Migne, Patrol. Latin. 23, col. 859.

Հետեւեալը կ՚ըսէ․ «Կ՚ըսուի թէ Հայաստան՝ Կորդուաց լերան քովերը այս նաւէն մաս մը կը գտնուի եւ ոմանք աստ կուպրէն փրցնելով միասին կը պտտցնեն եւ ուր կը գործածեն գլխաւորաբար անոնք, որոնք կը սրբուին ու կը մաքրուին։ Աստ մասին կը խօսին նաեւ Յերոնիմոս Եգիպտացին, որ Փիւնիկեցիներու հին պատմութիւնը գեղեցիկ ոճով գրի առած է, Մնասէաս եւ ուրիշ շատերը»։

Մինչ այս վկայութիւնները գլխաւորաբար բաբելոնական ջրհեղեղի գրոյցէն յառաջ կու գան, արդ պէտք ենք դիմել այն մատենագիրներուն, որոնք իրենց մեկնողական գործքերու մէջ Եօթանասնից Թարգմանութիւնը հիմ առած են եւ Արարատը Հայաստանի հետ նոյնացնելնուն մէջ ալ աստ կը հետեւին, այնու որ ամէնքն ալ տապանը Հայաստանի լեռներէն միուն վրայ դադարել կու տան։

Եւստաթիոս Անտիոքացին իր Վեցօրեայի մեկնութեան մէջ կ՚ըսէ՝ «Իսկ տապանը ջրէն աւելի բարձրանալով Հայաստանի լերան մը գագաթին վրայ կեցաւ․․․ եւ այն տեղը բնակիչները հիմայ Իջեւանք կը կոչեն[12]»։

Եւսեբիոս Կեսարացին իր Եսայեայ մեկնութեան մէջ Գլ․ Լէ․ 38 տեղիքն Եօթանաս-

[12] Ἡ δὲ κιβωτὸς, ἀνυψωθεῖσα ὑπὸ τοῦ ὕδατος, εἰς ἄκραν τινὰ ὄρους τοῦ κατὰ τὴν Ἀρμενίαν ἔστη . . . Καὶ τὸν τόπον ἔτι καὶ νῦν ἐκεῖνον Ἀποβατήριον οἱ ἐπιχώριοι προσαγορεύουσι κτλ. Migne, Patr. Gr. 18, col. 753.

նիցի համաձայն կը թարգմանէ՝ «Իսկ անոնք փախան Հայաստան[13]»։

Նմանապէս Ոսկեբերան Արարատն իբրեւ Հայաստան երկիր հասկցած է, երբ իր «վասն կատարեալ սիրոյն» ճառին մէջ կը հարցնէ՝ «Արդեօք չլսեցի՞ք Ջրհեղեղի եւ այն համատարած կորստեան մասին... միթէ ասոր վկայ չե՞ն Հայաստանի լեռները, ուր տապանը հանգչեցաւ. միթէ անոր մնացորդները մինչեւ հիմայ հոն չե՞ն պահուիր մեզի յիշեցնելու համար[14]»։

Բնականաբար իր Ծննդոց մեկնութեան մէջ (առ Ը. 4) Եօթանասնից համաձայն տապանը դադարել կու տայ «Արարատ լեռներուն վրայ[15]»։

Բոլորովին որոշ կերպով կը խօսի Յերոնիմոս. Ծննդոցի (Ը. 4) Արարատը կը թարգմանէ Հայաստանով[16], իսկ Եր. ԾԱ. 27[17],

---

13 . . . αὐτοὶ δὲ διεσώθησαν εἰς Ἀρμενίαν. Migne, Patr. Gr. 24, col. 353.

14 Ἠκούσατε περὶ τοῦ κατακλυσμοῦ καὶ τῆς πανωλεθρίας ἐκείνης; . . . οὐχὶ καὶ τὰ ὄρη μαρτυρεῖ τῆς Ἀρμενίας, ἔνθα ἡ κιβωτὸς ἱδρύθε; οὐχὶ καὶ τὰ λείψανα αὐτῆς ἕως νῦν ἐκεῖ σώζεται πρὸς ἡμετέραν ὑπόμνησιν Migne, Patr. G. 56, col. 287։ Այս իմաստով կը խօսի Ոսկեբերան նաեւ իր Ա. Թեսաղ. թղթոյն մեկնութեան մէջ (գլ. Դ., ճառ Ը). «Արդեօք չէ՞ք հաւատար թէ Ջրհեղեղ տեղի ունեցած է, արդեօք պառաւներու բարբաջա՞նք ձեզի կը թուի։ Նոյն իսկ այն լեռները, որոնց վրայ տապանը կեցաւ, զայն կը վկայեն, Հայաստանի լեռները կ'ըսեմ» (Migne, անդ, 62. col. 442)։

15 Migne, անդ, 53, col. 234.

16 Migne, Patr. Lat. 28, col. 206.

17 Migne, անդ, 28, col. 982.

ինչպէս եւ Ես. ԼԷ. 38[18] տեղիքներուն մէջ թէեւ Արարատ կը պահէ, սակայն վերջին տեղիքի մեկնութեան մէջ[19] Արարատն իր սահմաններովը բնորոշելով կը գրէ. «Որոնք (այսինքն Ադրամելէք եւ Սանասար) երբ փախան Արարատ երկիրն, որ իմանալու է իբր Հայաստան...: Իսկ Արարատ Հայաստանի մէջ դաշտային երկիր է, որուն մէջէն Երասխ կը հոսի, անհաւատալիօրէն բերրի, որ մինչեւ Տաւրոսեան լերան ստորոտը կը տարածուի: Ըստ այսմ տապանն ալ, որուն մէջ Նոյ իր զաւակներով ազատեցաւ, ոչ թէ Հայաստանի ընդհանուր առումով Արարատ կոչուած լեռներուն վրայ հանգչեցաւ, այլ Տաւրոսեան ամենաբարձր լեռներուն վրայ, որոնք Արարատեան դաշտերուն վրայ կը տիրեն»: Տապանակիր լերան մասին Յերոնիմոսին տուած բացատրութիւնները բնականաբար կը յարմարին Մասիսին, սակայն անոր խօսքերէն կը տեսնուի որ նա Արարատ անունով անգամ մը ամբողջ Հայաստան եւ միաժամանակ բոլոր Հայաստանի պատկանող լեռները կը հասկնայ, ուրիշ անգամ մը լոկ Այրարատ նահանգը:

---

[18] Անդ, 24, col. 389.

[19] Անդ, 24, col. 403. Աստուածաշնչեան տեղւոյ անուններուն մէջ (Liber de nominibus hebraicis) պարզապէս կը մեկնէ. «Արարատ, Հայաստան, կամ հերձեալ կամ բաժանեալ լեռ» (Migne, անդ, 23. col. 818 եւ 868): Հմմտ. Franz Wutz, Onomastica sacra, Leipzig 1914–1915, S. 507 յջ., Paul de Lagarde, Onomastica sacra, Göttingen 1870, I, § 82:

Նոյնպէս յայտնի կերպով կը խօսի Թէոդորետոս իր Եր. ԾԱ. 27 մեկնութեան մէջ[20]՝ «Հայաստանը Արարատ կը կոչուի»: Նմանապէս Դ. Թագ. գլ. ԺԹ. Հարցուածոց մէջ կը գրէ. «Հայաստանն Արարատ կոչեց: Որովհետեւ Եսայեայ մարգարէութիւնն այս մեկնութիւնն ունի[21]»:

Վերջապէս հոս յիշենք նաեւ Իսիդոր Սեւիլլացին, որ իր Ստուգաբանութեանց մէջ[22] կը գրէ. «Արարաթ (Ararath), Հայաստանի մէջ լեռ մըն է, որուն վրայ ջրհեղեղէն ետքը պատմական տապանը հանգչած ըլլալ կ՚աւանդուի, ասոր փայտերուն հետքերը մինչեւ այսօր հոն կը տեսնուին»:

Հայաստանէն դատ նաեւ ասոր հարաւակողմ գտնուող երկիրները իրրեւ տապանակիր լեռ կը համարուին: Այսպէս զ. օր. Եպիփան կը գրէ. «Դեռ աստի մինչեւ հիմայ Կորդուաց երկրին մէջ Նոյեան տապանի մնացորդները կը ցուցնեն[23]»:

Իրմէ յառաջ արդէն Թէոփիլոս Անտիոքացին[24] յիշատակութիւն կ՚ընէ, թէ տա-

---

[20] Ἀραρὰτ τὴν Ἀρμενίαν καλεῖ (Migne, Patr. Gr. 81, col. 752).

[21] Ἀραρὰτ δὲ τὴν Ἀρμενίαν ἐκάλεσεν. Ἡ γὰρ προφητεία τοῦ Ἡσαΐου ταύτην ἔχει τὴν ἑρμηνείαν (Migne, անդ, 80, col. 792).

[22] Etymologiae, lib. XIV, VIII, 5 (Migne, Patr. Lat. 82, col. 521).

[23] Ἔτι καὶ δεῦρο τὰ λείψανα τῆς τοῦ Νῶε λάρνακος, δείκνυται ἐν τῇ τῶν Καρδυέων χώρᾳ (Panarion I, 19 = Migne, Patr. Gr. 41, col. 260).

[24] «Այս տապանին մնացորդները մինչեւ հիմայ

պանն Արաբիոյ լերան մը վրայ հանգչած ըլլայ: Այսպիսի կարծիք մը նաեւ հին աշխարհագրութեան իմաստով տարօրինակ կը հնչէ: Սակայն կը համաձայնի Ս. Եպիփանի վերոյիշեալ կարծիքին հետ, եթէ վարկեան մ'ընդունինք այն շատ հաւանական ենթադրութիւնը, թէ սկզբնական բնագրին մէջ Արաբիա անուան տեղ ասորական բեւեռագրերու Arrapha կամ Arbaha անունը կը կարդացուէր, ինչպէս դեռ կ'անուանէ Պտղոմէոս վերին Զաբի քով գտնուող Arrapachitis գաւառը: Այն ժամանակ Վասպուրականի հարաւ-արեւելեան կողմը՝ այսինքն Աղբակ կ'առաջնորդուինք[25] եւ կը հասնինք այսու դարձեալ Կորդուաց աշխարհը: Եփրեմ Ասորւոյ քով Կորդուք, Արարատ եւ Հայաստան իբրեւ հոմանիշ զիրար կը լուսաբանեն եւ կ'ամբողջացնեն: Անիկա թէեւ Արարատ անունը ներկայացնելու համար միշտ Պեշիտտային կը հետեւի, սակայն Ես. ԼԷ. 38 (...փախեան յերկիրն Կորդուաց) տեղիքին հետեւեալ մեկնութիւնը կու տայ[26]. «Մար-

---

Արաբիոյ լեռներուն մէջ (ἐν τοῖς Ἀραβικοῖς ὄρεσιν) ըլլալ կը ցուցնեն» (Ad Antolycum III, c. 19 = Migne, Patr. Gr. 6, col. 1148):

[25] Տե՛ս S. Weber, Ararat in der Bibel, Theol. Quartalschrift, 83 (1901), S. 371 = Հայ. Թարգմ. Արարատը Ս. Գրոց մէջ, Վիեննա 1901 (Հ. Բ. Պիլէզիկճեան), էջ 65 յջ., Jos. Sandalgian, Histoire docum. de l'Arménie (Rome 1917), t. I, p. 134.

[26] Ephrem Syri Opera omnia quae exstant Graece, Syriacae, Latine. Tom. II. Syr. et Lat. Romae 1740, p. 82.

պաշտպանութիւնը գործելէն ետքը Հայրապետները Հայաստան փախան եւ կառավարութեան տիրեց հանգուցեալ. Սենեքերիմ որդին Ասորդան՝ որովհետեւ իր եղբայրներուն կողմանէ թագաւորութիւնը լքուած էր, որոնք, ինչպէս ըսուեցաւ, փախան Կորդուաց աշխարհն, որ է Արարատ»։ Գ. Թագ. ԺԹ. 37 «յերկիրն Արարատ» տեղիքի մասին կը գրուէ[27]. «Հայաստանի մէջ լեռներ են, այն միեւնոյն (լեռներն են), որոնք ուրիշ անունով նաեւ Կորդուաց (լեռներ) կ'ըսուին, որոնց վրայ Նոյ տապանը հանգչեցաւ». եւ Եր. ԾԱ. 27 տեղիքին, զոր կը ներկայացնէ՝ «Ծանուցէք անոր համար Արարատեան, Հայոց եւ Ասքանազեան թագաւորութեանց», կը կցէ իբրեւ մեկնութիւն. «Ժողովուրդներուն, որոնք Կորդուաց լեռները (Carducos montes) կը բնակին եւ սոնց հարեւան Հայոց եւ Սկիւթացիներուն եւ այլն[28]»։

Հաւանական է թէ χώρα Καρρωνου (ուրիշ ընթերցուած ի համաձայն Καιρῶν, Καρεων, ըստ լատին թարգմանութեան Carrorum),

---

27 Eprem, տեղ, I. Syr. et Lat. Romae 1737, p. 560.

28 Ephrem, տեղ, II. Syr. et Lat., p. 161. «Cardoos montes» կը յիշէ նոյնպէս նաեւ իր «Վկայն Աղին գրախտին» ճառերուն առաջնոյն մէջ (Tom. III Syr. et Lat., p. 561) Համմտ. Նաեւ Հատ. Ա., էջ 53 եւ 132, դարձեալ՝ J. Rendel Harris, Fragments of the commentary of Ephraemi Syrus upon the Diatessaron, London 1895, p. 46-47, տե՛ս Fr. Murad, Ararat und Masis, Heidelberg 1901, S. 27.

զոր ինչպէս Յովսեփոս կը պատմէ [29], Մոնո-բազոս Ադիաբենէի թագաւորն իր Իզատէս որդւոյն յանձնեց, Բոխարտի [30] կարծիքին համաձայն Կարդուաց (Καρδῶν) աշխարհը հասկնալու է: Յովսեփոսի վերյիշեալ տե-ղեկը հետեւեալն է. «Այն երկրին մէջ (որ է χώρα Καρρῶν) կը գտնուին տակաւին նաւե տապանին մնացորդներն, որով կ'ըսուի թէ Նոյ ջրհեղեղէն ազատած ըլլայ եւ մինչեւ հի-մայ տեսնել ուզողներուն կը ցուցնեն (տա-պանին մնացորդները) [31]»:

Արդէն Ե. դարուն կարծեցեալ տապա-նակիր լերան վրայ (Կորդուաց լեռներուն վրայ) նոյն իսկ վանք մը (Cœnobium Chibotae, այսինքն՝ arcae se recepit) կը յիշուի [32], որ, Դիոնիսիոսի ժամանակագրութեան հա-մաձայն, 766ին այրած է [33]:

[29] Antiq. Jud. XX. 21, 2 = B. Niese, vol. IV, p. 280.

[30] Bochart, Phaleg, I, 3, col. 19. Համմ. Th. Nöldeke, Untersuchungen zur Kritik des Alten Testaments, Kiel 1869, S. 148.

[31] Ἔστι δ᾽ ἐν αὐτῇ (որ է χώρα Καρρῶν) καὶ τὰ λείψανα τῆς λάρνακος, ᾗ Νῶχον ἐκ τῆς ἐπομβρίας διασεσῶσθαι λόγος ἔχει, καὶ μέχρι νῦν ταῦτα τοῖς ἰδεῖν βουλομένοις ἐπιδείκνυται.

[32] J. S. Assemani, Bibliotheca Orientalis (Romae 1725), t. III, pars I, pag. 214.

[33] Դիոնիսիոսի ժամանակագրութիւնը կը պատմէ Յունաց Թուականին 1077 տարւոյն (766 Յ. Ք.) ներ-քեւ կը պատմէ այս մասին հետեւեալը. «Նոյեմբեր 13ին Կորդուաց (Cordoos) լեռներուն վրայ շինուած տա-պանի վանքը..., որ [illegible] ժողովուրդը տա-րեկան հանդէս կը կատարէր այն տեղ, որ Նոյի տա-պանը հանգչեցաւ, երկնքէն կայծակ զարնելով մոխիր դարձուց տաճարն եւ հոն գտնուող մագաղաթեան ա-





Եպիփան, որ Արարատ երբեմն լեռ, երբեմն երկիր կը համարի եւ տապանակիր լեռն, ինչպէս տեսանք, Կորդուաց աշխարհին մէջ կը փնտռէ, կը գրէ՝ «Ջրհեղեղէն ետքը Նոյի տապանն Արարատ լեռներուն վրայ՝ Հայաստանի եւ Կորդուաց լեռներուն մէջտեղը՝ Լուբար կոչուած լերան վրայ կեցաւ[34]»։ Ասոր հակառակ քիչ մ'ետքը Նոյի զաւակներու մասին խօսած ժամանակ կ'ըսէ «Երբ անոնք երկար շրջեցան եւ Լուբար լեռնէն ու Հայաստանի սահմաններէն՝ որ է Արարատ երկրէն անցնելէն ետքը Սենաար դաշտն իջան»[35]։

Այս Լուբար լեռն, երեւի տապանակիր լեռ կը յիշուի նաեւ «Փոքր Ծննդոց» անվաւերական գրութեան մէջ, որուն խմբագրութեան ժամանակը Յոհ. Հիւրկանոսի յիշատակութեամբ կ'որոշուի, եթէ 38. 14 տեղերն անոր կը հայի[36]։ Ե. գլխուն մէջ կը պատմուի. «Եւ անիկա (տապանը) գնաց եւ

---

բարձ բարձրութիւնք մնային» (Assemani, Bibl. Orient., t. II, p. 113).

[34] ...Μετὰ δὲ τὸν κατακλυσμὸν ἐπιστάσης τῆς λάρνακος τοῦ Νῶε ἐν τοῖς ὄρεσι τοῖς Ἀραράτ, ἀνὰ μέσον Ἀρμενίων καὶ Καρδυέων ἐν τῷ Λουβὰρ ὄρει καλουμένῳ (Panarion, lib. I, t. 1, 4 = Migne, Patr. Gr. 41, col. 181).

[35] Ἐπεκτεινόμενοι δὲ καὶ πρόσω βαίνοντες ἀπὸ τοῦ Λουβὰρ ὄρους καὶ ὁρίων τῆς Ἀρμενίας τουτέστιν Ἀραρὰτ τῆς χώρας, γίνονται ἐν πεδίῳ Σενάαρ (Անդ, 1, 5 = Migne, անդ, col. 184).

[36] Հմմտ. G. Beer, „Pseudepigraphen des Alten Testaments" in der Real-Encyklop. für protest. Theol und Kirche. Bd. 16 (1903), S. 259 ff.

նստաւ Լուբարի՝ Արարատի լեռներուն միուն գագաթին վրայ[37]»: Եւ Է. գլխուն մէջ կը պատմուի թէ Նոյ որթատունկ տնկած է «այն լերան վրայ, որուն վրայ տապանը կեցած էր, Լուբար անունով՝ Արարատի լեռներուն միուն վրայ»[38]: Նոյի մասին խօսող Միդրաշին մէջ, ուր Փոքր Ծննդոցի հետ նմանութեան կէտեր կը ցուցնէ, կ՚ըսուի նմանապէս. «Այս է բժշկութեան դեղոց գիրքը, զոր հին իմաստուններր թարգմանած (կամ՝ խմբագրած) են Սեմի՝ Նոյի որդւոյն գրքէն, որ ջրհեղեղէն ետքը Նոյին տրուեցաւ Լուբար լերան վրայ, որ Արարատեան լեռներուն մաս կը կազմէ[39]»: Եթէ անգամ մը գիտնականներուն այս լերան աշխարհագրական դիրքի մասին հարցնելու ըլլանք, կը ստանանք իրարու ճիշդ հակառակ պատասխաններ: Այսպէս գ. օր. Նէօլդեկէի[40] համար «ակնյայտնի» է որ Լուբար «իրական անուն մը չէ, այլ զուտ մտացածին». մինչ Դիլլման[41] բոլորովին անորոշ կը ձգէ թէ անոր գոյութիւնը արդեօք «կեղծիքն իրեն հիմ ունի թէ ուրիշ աշխարհագրական դիրք մը»: Փր. Դելիչ[42] նոյն իսկ կող-

[37] A. Dillmann, Das Buch der Jubiläen oder die Kleine Genesis, Göttingen 1850, S. 243.

[38] Անդ, էջ 247:

[39] H. Rönsch, Das Buch der Jubiläen oder die Kleine Genesis, Leipzig 1874, S. 385.

[40] Th. Nöldeke, Untersuchungen zur Kritik des Alten Testaments, Kiel 1869, էջ 149, ծանօթ. 1.

[41] Անդ, էջ 147:

[42] Fr. Delitzsch, Kommentar über die Genesis[4] (1872), S. 545.

կամ Էլլիպուղ լերան հետ կը նոյնացնէ, ասոր համակարծիք ըլլալ կը թուի Էդ. Կէօնիգ[43]։ Բայց որովհետեւ հարկ է, թէ կարենանք հինե-րուն քով սպասելի ընդարձակ աշխարհագրական տեսութիւն մ՚ենթադրել, գուցէ շատ աւելի հաւանական է եթէ Լուբար լեռը Լուլուբէացիներուն հետ աղերսի մէջ դնենք, ըստ որում ասոնց անմիջական դրացիութիւնը Գուտէացիներուն[44] հետ հաւանաբար երկու ժողովուրդներուն նոյնացման պատճառ եղած եւ այսպէս Կորդուայ աւանդութեան մէջ անցած է[45]։ Թեօն[46] Լուբար լեռը նոյն կը համարի «Արեւելքի լերան» հետ, որ կը յիշուի Փոքր Ծննդոցի Դ. գլխուն մէջ՝ իբրեւ մին «Աստուծոյ չորս անկիւններէն» եւ կը կարծէ թէ հրէական Նոյի աւանդութեան մէջ այսչափ նշանաւոր դեր խաղացող Լուբար լեռը գերադանցօրէն Արեւելքի լեռը կրնար անուանուիլ, որուն կը հայի գուցէ Նոյի քով[47]

---

43 Ed. König, Die Genesis, Gütersloh 1919, S. 354.

44 Հմմտ. C. F. Lehmann-Haupt, Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens. Abhandl. d. Kgl. Gesell. d. Wissensch. zu Göttingen, phil.-hist. Kl., N. F., Bd. IX, Nr. 3, Berlin 1907, S. 11 f.

45 Lull (Lullumê, Lullibi) անուան մասին տե՛ս Max. Streck, Armenien, Kurdistan und Westpersien, Zeitschr. für Assyriologie, 14 (1900), S. 289–295 Հայեր. թարգմ. Հ. Բառնաբաս Պիլէզիկճեան, Վիեննա 1904. էջ 130 յջր.։

46 Անդ, էջ 504 յջր.։

47 «Դու ասէիր ի մտի քում. Ելից յերկինս, ի վերայ քան զաստեղս երկնից արկից զաթոռ իմ. Նստայց

յիշուած «Աստուածներու լեռը»: Եթէ այս ճիշդ է, այն ժամանակ այս Աստուածոց լեռը հին Բաբելոնական Աստուածոց լերան հետ պէտք է որ նոյն ըլլայ, որովհետեւ Աստուածներու լերան մը ամբողջ պատկերը բաբելոնական ծագում ունի, որուն մասին յետագային խօսք պիտի ըլլայ: Ըստ ինքեան այս «Աստուածներու լերան» մերձաւոր աշխարհագրական դիրքն որոշելը մեր խնդրոյն համար աննպատակ է: Այնու որ Փոքր Ծննդոցն ինչպէս նաեւ Նոյի մասին եղած Միդրաշը գոյն Արարատեան լեռներուն մէջ կը հաշուէ եւ Եպիփան «Հայաստանի եւ Կորդուքի մէջտեղը» կը դնեն, այդ արդէն կ'ապացուցանէ՝ թէ այս տեղիքն ալ Արարատի հարցին հետ կը նոյնանայ եւ միայն անով կը լուծուի:

## § 3. ԱՐԱՐԱՏԻ ՀԱՐՑԸ ՆՈՐԱԳՈՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՍ

Մինչեւ հիմայ ըսուածներէն ակներեւ կը տեսնուի, որ հին մատենագիրները տապանակիր լեռը կամ Հայաստանի կամ Կորդուաց աշխարհին եւ կամ Կորդուք—Հայաստանի մէջ կը փնտռեն: Այժմ բնականաբար հարց կ'ելլէ թէ՝ Ո՞ր լեռը կամ ո՞ր լեռնաշղթան է տապանակիր լեռը: Այս մասին Աստուածաշունչի նորագոյն մեկնիչներու կարծիքները շատ այլազան են:

---

ի լերինն բարձու, ի վերայ լերանց բարձանց հիւսիսոյ» (Ես. ԺԴ, 13):

Կաթոլիկէ մեկնիչներու կողմանէ Դիլ[48] կը կարծէ՝ թէ Կորդուքի աւանդութիւնն ընդհանրապէս «աստուածաշնչեան լեռին մէջ նեցուկ չի գտներ եւ բաբելոնական գրոց մը ծագում առած կը թուի»: Սակայն կ'ընդունի թէ «առանց տարակուսի բոլորովին որոշ լեռ մըն է, զոր այլ եւս չենք կրնար սահմանել: Նաեւ հարկաւոր չէ տապանին պարպելու տեղը բարձր գագաթ մ'ենթադրել»: Սակայն կ'երեւայ թէ հետեւելով Յերոնիմոսին, որ Արարատը կը սահմանէ Տաւրոսի ստորոտ՝ Արաքսէն ոռոգուող արգաւանդներ դաշտավայրը, եւ Մովսէսացւոյ, որուն քով «Հայաստանի այս մասն Այրարատ կը կոչուի», Մասիս լեռն աչքի առջեւ ունի: Աւելի որոշ ու յայտնի կերպով կ'արտայայտուի Հեցենաուէր[49] ի նպաստ Մասիսի աւանդութեան: Արարատ անուան աշխարհագրական տարածութիւնը պարզելէն եւ հետեւողութեամբ Բրաքհաուս եւ Հերդեր համայնագիտարաններուն «յաւէտ ձիւնապատ Արարատ կամ Մասիս լերան» մասին խօսելէն ետքը կը յաւելու. «Թէեւ սրբազան բնագիրն այն լեռն, որուն վրայ տապանը հանգչեցաւ, յանուանէ չի յիշեր, սակայն ոչ մի արգելք կայ ուրիշ շատերուն հետ հոս Մեծ

---

[48] Ces. Dier. Genesis, übersetzt und erklärt, Paderborn 1914, S. 76.

[49] Mich. Hetzenauer, Commentarius in librum Genesis, 1910, S. 147.

Արարատը հասկնալու 50»: (Տես Եւրոպա-
ցիները հետ սա ալ Մասիսը Արարատ կ'ա-
նուանէ:) «Անոնց կարծիքներն, որոնք կը համարին թէ երկրիս ուրիշ մասերու լեռները հասկնալու է, Աստուածաշնչի բացատրութեան հակառակ, ուստի սխալ են 50»: (Մատնանիշ կ'ընէ Դիլման, Համմէլաուէր:) Նաեւ վերջին ժամանակի հրատարակութիւնները, գ. օր. Հայնիշ[51] չեն կրնար նոր բան մ'ըսել: Սա պարզապէս կ'ընդունի որ տապանակիր լեռը Հայաստան գտնուելու է, սակայն կը կցէ. «Թէ տապանը ճիշդ ալ Հայաստանի ամենաբարձր գագաթին՝ Մասիսին վրայ կանգ առած է, բնագրին մէջ չկայ»: Այսպէս կաթողիկէ մեկնիչները:

Անոր հակառակ ոչ-կաթողիկէ մեկնիչներէն շատերը բոլորովին ուրիշ ճամբայ բռնած են: Մտապաշտ սկզբունքներէ վարուելով անոնք ոչ միայն Մովսէսի հեղինակ ըլլալն եւ բուն այս Ծննդոց գրքի խոր հնութիւնն ընդհանրապէս կը մերժեն, այլ նաեւ կրկին խմբագրութիւն կը զանազանեն՝ հին (Jahvist) եւ նոր (յաւելեալ) խմբագրութիւն (Priesterkodex), վերջնոյս կը վերագրեն ի մէջ այլոց Ծննդ. Ը. 4 տողերն, այսպէս գ. օր.

---

50 Ընդգծումը մերն է:

51 Paul Heinisch, Das Buch Genesis, übersetzt und erklärt, Bonn 1930, S. 169. [Die Heilige Schrift des Alten Testaments, herausg. von F. Feldmann und H. Herkenne, Bd. 1, Abt. I.]

երանգին աւելի համաձայն է քան Գիլգամէշի դրոյցին Նիսիր լեռը (Տախ. ԺԱ, տող 141 յջք.), ըստ այսմ աւելի հին: Իսկ Նոր խմբագրողը կ'ուզէր Արարատի իբրեւ «Աստուծոյ լերան» դիցաբանական քողը վար առնուած տեսնել: Ամէն պարագային ըստ Նոր խմբագրութեան տապանը հոն (Արարատին վրայ) կանգ առած է (Փրոքշ): Անոնք զուտ օդոյ վրայ կառուցուած ենթադրութիւններ են, յառաջ եկած հաւանաբար այն սխալ ենթադրութենէն թէ אֲרָרָט ով միայն Այրարատ նահանգն եւ իբրեւ տապանակիր լեռ միայն Մասիսը կարելի է հասկնալ: Սակայն նոյն իսկ Կեօնիգ ստիպուած է ընդունիլ, որ այս մեկնութիւնն սկզբնականը, բնագրին դիտած իմաստը չէ, այլ «վերջէն այն կարծիքն եկած է թէ, այն լեռն, որուն վրայ տապանը կեցաւ, Մասիսն է եւ այսպէս Երկրին անունը լերան անցաւ»: Այս խօսքերով Կեօնիգ միաժամանակ այն կարծիքը կը յայտնէ, ինչպէս Շտրաք[57], Երեմիաս[58] եւ ուրիշներն իրմէ յառաջ արդէն արտայայտած են՝ թէ Արարատ նաեւ Ծննդ. Ը. 4, ինչպէս միւս տեղիքներուն մէջ միեւնոյն իմաստն ունի, այսինքն թէ երկրի անուն է: Թէ Ծննդ. Ը. 4 տեղիքէն պատ ամէն

Arthur Ungnad und gemeinverständlich erklärt von Hugo Greßmann, Göttingen 1911, S. 113 f.

57 Herm. Strack, Die Genesis², München 1905.

58 Alf. Jeremias, Der Einfluß Babyloniens auf das Verständnis des Alten Testaments. Biblische Zeit- und Streitfragen, herausg. von Kropatschek, 1908.

*տեղ Արարատ երկրի անուն է եւ այն համազօր բնագրերու Ուրարտուին, այսինքն Հայաստանի հետ, յայսմ բոլոր մեկնիչներն առանց աշխարհայեցողութեան խտրութեան համամիտ են, այսպէս դ. օր. բացի վերյիշեալ մեկնիչներէն. Դէօլլէր*[59], *Կոնդամէն*[60], *Շլէօգլ*[61], *Շանդա*[62], *Լանդերսդորֆէր*[63], *ինչպէս նաեւ Բենցինգէր*[64], *Կիտտէլ*[65], *Դուհմ*[66], Burney[67] *եւ ուրիշները: Սակայն տապանակիր լերան մասին տիրող այս իրարու հակառակ կարծիքներն արդէն կը ցուցնեն թէ «Արարատ հարցի մասին եղած վէճը տակաւին չէ փակուած*[68]*» եւ այս պատճառաւ կ'ուզենք յաջորդով այս շատ ծեծուած խնդիրը լուսաբանելու փորձ մը կատարել:*

---

[59] Joh. Döller, Studien zum 3. u. 4. Buche der Könige, Wien 1904.

[60] Alb. Condamin, Le livre d'Isaïe, Paris 1905.

[61] Niv. Schlögl, Die Bücher der Könige, Wien 1911.

[62] Ad. Šanda, Die Bücher der Könige, II. Hlb., das 2. Buch der Könige, Münster i. W. 1912.

[63] Simon Laudersdorfer, Die Bücher der Könige, Bonn 1927.

[64] J. Benzinger, Die Bücher der Könige, Freiburg i. Br. 1899.

[65] Rud. Kittel, Die Bücher der Könige, Göttingen 1900.

[66] Bernh. Duhm, Das Buch Jesaia $^{2}$, Göttingen 1902.

[67] C. F. Burney, Notes of the hebrew Text of the Books of Kings, Oxford 1903.

[68] *Այսպէս կը գրէ* Gottfried Hoberg (Die Genesis, Freiburg i. Br. 1908, S. 94) *այս մասին տիրող զանազան կարծիքները յառաջ բերելէն ետքը:*

## § 4. ՄԱՍԻՍ ԻԲՐԵՒ ՏԱՊԱՆԱԿԻՐ ԼԵՌ

*Մասնաւոր կերպով տապանակիր լերան հարցով զբաղած գիտնականներէն յիշելի են՝ Սիմոն Վէբէր*[69]*, Ֆրիդ. Մուրատ*[70] *եւ Յովսէփ Վ. Սանտալճեան*[71] *իւր Հայոց պատմութեան մէջ: Վերջին երկուքը Մասիսի աւանդութեան կողմն են, որոնց ուսումնասիրութիւնները հիմնական քննադատութեան կ՚ուզենք ենթարկել: Առաջին «ծանրակշիռ» ապացոյցն առ այս է ըստ Մուրատի (էջ 47) Յովսէփոսի աւանդած Նիկողայոս Դամասկացւոյն տեղեկութիւնը*[72]*. «Մինիասի վերեւ Հայաստանի մէջ կը գտնուի հսկայ լեռ մը Բարիս*[73] *անունով, որուն վրայ մեծ ջրհեղեղի ժամանակ շատերն ապաստանած են եղեր, եւ այսպէս ազատած: Մէկը տապանով նաւարկած է եղեր եւ լերան գագաթը հասած եւ հոն երկար ժամանակ նաւի փայտե–*

---

[69] Simon Weber, Ararat in der Bibel, Theol. Quartalschrift, 83 (1901), Heft 3, S. 321—374.

[70] Friedr. Murad, Ararat und Masis, Heidelberg 1901.

[71] Jos. Sandalgian, Histoire documentaire de l'Arménie, Rome 1917, t. I, p. 130—138.

[72] *Ἔστιν ὑπὲρ τὴν Μινυάδα μέγα ὄρος κατὰ τὴν Ἀρμενίαν Βάρις*[65] *λεγόμενον, εἰς ὃ πολλοὺς συμφυγόντας ἐπὶ τοῦ κατακλυσμοῦ λόγος ἔχει περισωθῆναι καί τινα ἐπὶ λάρνακος ὀχούμενον ἐπὶ τὴν ἀκρώρειαν ὀκεῖλαι καὶ τὰ λείψανα τῶν ξύλων ἐπὶ πολὺ σωθῆναι. γένοιτο δ' ἂν οὗτος, ὅντινα καὶ Μωυσῆς ἀνέγραψεν ὁ Ἰουδαίων νομοθέτης.* Ant. Jud. I, 95 (I, 3, 6) = Niese I, p. 22. *տե՛ս նաեւ վերը ծնթ.* 8:

[73] *Յերոնիմոս կը գրէ* Բերիս. *տե՛ս* Lagarde, Onom. Sacra, I, p. 83.

րէն ճտացորդներ մնացած են եղեր։ Գուցէ այս միեւնոյն բանն է, զոր Մովսէս, Հրեայ օրէնսդիրն աւանդած է»։

Ըստ Մուրատի հոս «Բարիս» անուանուած լեռը «Բարձր Մասիս»ը կը յիշեցնէ ենթադրելով որ «Մինուաս»ը «Մինին»ի հետ (Եր. ԾԱ. 27) նոյն է։ Նա Բարիսը կը համարի Մասիսի զանազան վերադիրներէն մին, այսինքն բարձր, որ ըստ նշանակութեան նոյն է զնդ. բարեսի հետ (բարեզ = բարձրութիւն, բարեզանտ = բարձր)։ «Աւելի ակնյայտնի է որ», կ'ըսէ Մուրատ, «Մասիսը Հայոց դրացի ժողովուրդներուն միայն Բարձր (Բարեզ, Բարիս) անուանակոչումով ալ հասարակ ծանօթ էր եւ այն ըստ ամենայն հաւանականութեան Պարսիկներու միջնորդութեամբ, որոնց քով Մասիսի այս անուանակոչումն անոր համար միայն ու միայն գործածութեան մէջ եղած է, որովհետեւ անիկա Հարա-բերեզայիթի՝ աստուածներու լերան սովորական վերադիրն՝ Բարեսի հետ նոյն էր, մինչ լերան բուն յատուկ անունը Հայաստանի սահմաններէն դուրս ընդունելութիւն չէ գտած» (էջ 49)։ Սակայն շատ զարմանալի է որ այս բարձր մակդիրին ստանձին գործածութիւնը Մասիս նշանակութեամբ անգամ մ'իսկ հայ մատենագրութեան մէջ չէ եղած, ինչպէս Մուրատի յառաջ բերած օրինակներն ալ (էջ 51 յջ.) կը ցուցնեն. եւ սակայն հայաստանցիներու բերնին մէջ բաւա-

կան սովորական դարձած ըլլալու էր այն, որպէս զի արձագանգը Հայրենիքի սահմաններէն դուրս մինչեւ իսկ Նիկողայոս Դամասկացւոյ ականջ կարենար հասնիլ, եթէ որ Բարխար հայերէն բարձրի հետ նոյն ըլլար:

Մինչ Յ. Մարտէն St. Martinէն[74] յայտնուած եւ ուրիշ գիտնականներէն[75] ընդունուած կարծիքը գուցէ ջախջախած ըլլալ կը համարի, երբ վճռական կերպով զայն «մոլորութեան վրայ յեցած» կը յայտարարէ, ճիշդ J. Marquart[76] ասոր ջատագով կ'ելլէ: Մուրասա պէտք է գէթ այնչափն յիշած ըլլար, որ Զ. դարէն (Ն. Ք.) ի վեր կորսուած ժողովուրդի մ'անունը Ա. դարուն (Ն. Ք.) Բ. կէսին տարբեր մատենագրի մը քով չէր կրնար յիշատակութիւն գտնել. Հետեւաբար անտեղի էր Բարխա լեռան դիրքն այս վաղուց մոռացութեան մատնուած ժողովուրդի երկրի վրայէն ճշդել, նկատի առնելով որ Նիկողայոս Դամասկացիէն երկու դար յառաջ եւ ոչ իսկ Եօթանասնից թարգմանիչները Մինիի մասին հեռաւոր գաղափարն ունեցած են, ինչպէս վարը՝ երկրորդ գլխուն մէջ պիտի տեսնենք: Այս պատճառաւ Մարքուարտ այն եզրակացութեան կը յանգի որ Բարխա անուան ներքեւ Վանայ լճին հիւսիսային կողմը

[74] Mémoires historiques et géogr. sur l'Arménie, t. I, p. 249 s., 265.

[75] Ի մէջ այլոց Spiegel, Eranische Altertumskunde, Bd. I, 217 f.; Համմ. նաեւ P. de Lagarde. Gesammelte Abhandl., S. 172.

[76] Osteurop. und Ostas. Streifzüge, S. 286 ff.

գաւառը Մանազկերտն (Մանաւազ-կերտ) ենթադրելու է։ Այս քաղաքն իր հիմնարկութիւնը կը պարտի Ուրարտացւոց Մենուա թագաւորին, որ քաղաքիս անուան մէջ իրանեան ձեւով մնացած է[77]։ Մենուականէն յառաջ եկած քաղաքին հին անունը բնականաբար ժամանակի ընթացքին անճանաչելի դարձաւ եւ այս պատճառաւ Ալիշարեանն արքունական տան մէջ շատ գործածական եղող եւ ամէն հաւանաբար քրիստոնէական շրջանին Վանայ լճի շրջակայքը գաւառը իշխանական անուն ընդունուած Մանաւազ[78] անունէն ծագած համարուեցաւ։ Այս երկիրը ժառանգական սատրապութիւնը կը կազմէր Մանաւազեան տան, որ Արշակ Բ. Կոտակի ժամանակ Բասենի Որդունեաց նախարարին հետ կռուի բռնուած ըլլալով Վաչէ Մամիկոնեան սպարապետէն անձեռ եղաւ եւ Մանաւազկերտ քաղաքն ու գաւառն Ալբիանոս եպիսկոպոսին իբրեւ եկեղեցական կալուած տրուեցաւ[79]։ «Իսկ եթէ Μενυάς հին Մենուա-

---

[77] J. Marquart, Eranšahr, S. 162. W. Belck, Verhandl. d. Berliner Ges. f. Anthropologie, Ethnologie u. Urgeschichte, 1892, S. 477; 1898, S. 577. Թէեւ St. Martin ալ (Mémoires, I, p. 249 s., 265) Μενυάς Մանազկերտի հետ կը նոյնացնէ, սակայն առաջնոյն մէջ կը նշմարէ Ա. Գերբ . . .

[78] Յուն. Μονόβαζος, מנובז, որոնք հին պարս. *Manu-Bazu «մէկ բազկով օժտուած իբրեւ Մանու», կամ Τιρίβαζος = Tiribazu «մէկ բազկով օժտուած իբրեւ Տիրի աստուածը». Համմ. Nöldeke, Zeitschr. d. Deutschen Morgenl. Ges. 33 (1879), S. 144.

[79] Փաւստոս, Պատմութիւն, Գ., 4։

քաղաքին երկիրն է, նոյն ժամանակ Բարիսը նոյն է Նիպատի. այսօրուան Ալա-Դաղի կամ Սիփան-Դաղի հետ[80]»: Այս նոյնացութիւնը կը հանէ իրաւամբ Մարքուարտ. սակայն հնարաւոր կը համարի նաեւ, որ Բարիս գուցէ կապ ունենայ ᾶπος կամ՝ Ἀβᾶρι այլազգ անծանօթ տաճարին հետ, որ կը գտնուէր Աբոս լերը (հաւանաբար Փալանդէօքէն-Դաղ) կորեկալ Երասխի հովիտն եւ ասկէ դէպի հարաւակողմ Եկբատան տանող ճանապարհին վրայ[81]: Ըստ Մարքուարտի «յունական-եգիպտական բարիսի[82] հետ ունեցած հնչական նմանութիւնը հազիւ թէ պատահական ըլլայ[83]»: Բայց քննադատին «հաւանական» կը համարէր, որ այս Սիփան-Դաղը կամ Նեխ-

---

[80] Marquart, Streifzüge, S. 287.

[81] Ստրաբոն, XI, 14, 14, p. 531. ὁ Ἄβος ἐγγύς ἐστι τῆς ὁδοῦ τῆς εἰς Ἐκβάτανα φερούσης παρὰ τὸν τῆς Ἀβάριδος (այսպէս Dl. C βάριδος) νεών, հմմտ. W. Fabricius, Theophanes v. Mitylene, S. 116 ff. առ Marquart, Streifzüge, S. 286.

[82] βᾶρις որ կը նշանակէ «մակոյկ, նաւ». հմմտ. Diod. I. 92, Plut. de Is. et Os. 18.

[83] Անդ, էջ 286. Իսկ St. Martinի՝ (անդ, էջ 265) Բարիս Բաղրաւանդ գաւառի մէջ՝ Բագաւանի քովերը գտնուող Վարազ (Փաւստոս, Ե., 43) լերան հետ նոյնացնելու փորձն ընդունելի չէ: Որովհետեւ թէեւ երկուքն ալ իրարու նման հնչականութիւն ունին, սակայն Բարիսէն Վարազ անցնելը հայերէն հնչական օրինաց համաձայն ըմտարան կը մեկնուի եւ այս դէպքին անկարելի է, վասն զի «Վարազ» իրանեան բառ է: Որքէ՞ հնոյցն ենթադրութիւններ եւ մեկնութեան փորձեր (հմմտ. Bochart, Phaleg I, 3, col. 20 եւն) ինչպէս զ. օր. տապանէն [illegible] յառաջ բերելը կրնանք իրաւամբ նկատի չառնել:

Մասիքը, «Բարիս բարձր լերան հետ նոյն ըլլայ[84]: Այս մասին յետոյ պիտի խօսինք:

Ինչ որ Մարքուարտ իբրեւ հնարաւորութիւն կ'ուզէ ընդունիլ, Սանտալճեան[85] իբրեւ իրողութիւն կը ներկայացնէ: Կ'ուզէ Բարիս յատուկ անուան մէջ բարիս բառը տեսնել, որ ուրարտեան-յունական գաւառաբարբառին եւ հելլենական լեզուին մէջ «նաւակ», գաղղ. barque — իտ. barcaէն առնուած — կը նշանակէ եղեր, իսկ վերջին բառը պէտք է յուն. βάρ-ις = baris, «barque»ին հետ յարաբերութեան մէջ դնել: Այսպէս Բարիս իր «նաւակ» նշանակութեամբն, որ ջրհեղեղը կը յիշեցնէ, Մասիս լեռ պիտի նշանակէ, մինչ Մուրաս, ինչպէս արդէն տեսանք, Բարիս անուան մէջ բարձր իբրեւ Մասիսի վերադիրներէն մին նշմարել եւ այսպէս վերջինս հետ նոյնացնել կը ջանայ:

Իր ուսումնասիրութեան ժամանակ Սանտալճեան դեռ ուրիշ տեղեկութիւն մըն ալ ունի, որուն մէջ «Հայաստանի արքային լերան առաջին յիշատակութիւնը» կը գտնէ, որ «իր յատուկ անունովը կ'անուանուի»[86]: Այս տեղեկը կը գտնուի Սարգոնի՝ Ասուր աստուածին ուղղուած նամակին մէջ[87], բեւեռագրութիւն մը 714 տարիէն (Ն. Ք.): Ասորեստան-

[84] Տե՛ս Südarmenien, Հտ. 1913, 97 = Արտաւազդ., էջ 15:

[85] Histoire, I, p. 134.

[86] Անդ, էջ 3:

[87] François Thureau-Dangin, Une relation de la huitième campagne de Sargon. Paris 1912.

ցիներուն Ուրարտուի դէմ մղած կռուին մէջ Սարգոն Ռուշաս Ա.ի բանակը կը ջախջախէ «Ուաուշ՝ բարձր լերան վրայ, որուն ձիւնապատ կատարը մինչեւ երկնքի մէջտեղը (կը բարձրանայ), ուսկէ ամբողջ հնութեան մէջ կենդանի մը չէ անցած, (որուն) ճամբան (ոչ ոք) տեսած է, որուն վրայէն եւ ոչ իսկ երկնքի թեւաւոր թռչունը կ'անցնի» (II, 96—98): Սարգոն Ուաուշ լերան վրայ Ուրսա (Ռուշաս) թագաւորը խորտակելէն ետքը Բաղի[88] գաւառը կ'իջնայ: Որովհետեւ Նիկողայոս Դամասկացւոյն քով Բարիս իբրեւ լերան անուն եւ հոս Բարի (կամ Բարիս ըստ Սանտալճեանի) իբրեւ գաւառի մ'անուն կը յիշուի, կը փորձէ այս երեւոյթը մեկնել ենթադրելով թէ Բարի(ս) «ի սկզբան անդ Արարատ լերան անունն» էր եւ ապա շրջակայ գաւառին վրայ ալ տարածուած է, եւ «զարմանալի չէ եթէ լերան անունը տարածուած ըլլայ այն երկրի վրայ, որ առաջին անգամ իւր լանջերուն վրայ ընդունեցաւ զանոնք, որոնք 'նաւակէն ելած էին»[89]: Առանց այս ջրհեղեղի օգնութեան դիմելու հնարաւոր է որ գաւառի անունով լեռը անուանուի կամ դուցէ նաեւ հակառակէն: Բայց թէ հոս ալ այս

---

[88] Սարգոնի բեւեռագրութիւնն ամէն տեղ Բարի ձեւն ունի, որ Սանտալճեանի համաձայն (անդ, էջ 3, ծնթ. 3) Բարիս պէտք է ըլլայ, որովհետեւ սեմական լեզուներուն մէջ իրանեան յատուկ անուններուն բառավերջի -ս գիրը սովորաբար կ'իյնայ:

[89] Անդ, էջ 3 եւ 134:

դէպքը տեղի ունեցած է, այսինքն թէ Բա-րի(ա) այսօրուան Արարատ նահանգին կը համապատասխանէ, որովհետեւ Ուասուա Մասիսին հետ նոյն ըլլալու է՝ Սանտալճեանի հետեւեալ մեկնութիւնը պիտի ապացուցանէ. «Ուասուա բառը միայն ՙՋուր, անձրեւ, կրնայ նշանակել եւ ընդարձակ իմաստով Ջրհեղեղ, այսինքն Ջրհեղեղի լեռ: Բաբիս գաւառաբարբառի ուասուա «Ջուր, անձրեւ» բառը շատ լաւ կերպով կարելի է համեմատութեան մէջ դնել Բիայնայի գաւառաբարբառի առուխս բառին, գասական հայերէնի աւիշին, գերմաներէն Wasser եւ սլաւերէն վօդա բառերուն հետ, որոնք ամէնն ալ նոյն նշանակութիւնն ունին: Միեւնոյն բառը կարելի է դուցէ համեմատութեան մէջ դնել ուրարտական Ան Ուխա «անձրեւի աստուած» (Ուխա ուղղականի մէջ ըլլալու է Ուխաս) եւ յունարէն «Ὕης-ի հետ»[90]: Թէ որչափ քմածին եւ երեւակայական է այս մեկնութիւնը, ամէն մարդ կը տեսնէ, այս պատճառաւ չ'արժեր մանրամասնութեանց իջնալ: Կ'ուզէի միայն կէտ մը մտադիր ընել, զոր Սանտալճեան կը լռէ, այս է թէ Thureau-Dangin[91] նոյն լերան եւ գաւառին դիրքն որոշած է, որուն համաձայն Ուասուա այսօրուան Սահենդ (Սոհունդ) լեռն եւ Բաբի՝ Թաւրիզ—Սօֆիան—Մարանդ երկիրն է: Ասոր համակարծիք է նաեւ Lehmann-

---

[90] Անդ, էջ 3:
[91] Անդ, էջ V—IX:

գումերը, տապանի կայանի մասին կ'ըսէ. «Այս տեղը Հայերը իջեւանք կ'անուանեն, որովհետեւ մինչեւ այսօր ալ հոն ցոյց կու տան տապանի մնացորդները[96]», մարդ կը փորձուի այս խօսքերուն մէջ Նախճաւան անուան ստուգաբանութեան հաստատութիւն մը եւ Մասիս–աւանդութեան հնութեան վկայութիւն մը գտնել: Բայց սոսկ հակառակ եղած ապացոյցները Մուրատ բարեկամին կ'անտեսէ: Եթէ ամէն կէտի մէջ Մուրատի համակարծիք ըլլայի, սակայն ստիպուած եմ Հիւբշմանի[97] հետ կրկնել որ «Հական կէտի մէջ չեմ կրնար անոր համակարծիք ըլլալ» (էջ 73) եւ այն հետեւեալ պատճառներուն համար:

Նախ Ստուգաբանութիւնը. Անուանս տրուած մեկնութիւնը ճիշդ պիտի ըլլար, եթէ Նախիջաւան կամ Նախիջեւան ձեւն սկզբնականն ըլլար: Այլ ընդհակառակն կը տեսնենք որ Նախիջաւան, Նախիջեւան, Նախջաւան, Նախջուան ձեւերը Նախճաւան, Նախճաւան ձեւերուն հետ միայն Ժ. դարէն ի վեր նշմարելի են[98], բայց հնագոյն ժամանակի համար գրութիւնը միայն Նախճաւան, ցանցառ Նախճուան. այսպէս օրինակի համար

---

[96] Ant. Jud. I, 92.

[97] H. Hübschmann, ‚Armeniaca‘ in der „Straßburger Festschr. zur XLVI. Versammlung deutscher Philologen und Schulmänner“, 1901, S. 69—79, որ ի մէջ այլոց այս հարցը բաւական ընդարձակ կը շօշափէ:

[98] F. Murad, անդ, էջ 103:

Փաւստոսի քով (Դ. 55, էջ 173), Ղազար Փարպեցւոյ[99] եւ Խորենացւոյ[100] բնագրին հրատարակութեան մէջ, իբրեւ տարբերակ յիշուած են միայն Նախճաւան եւ Նախջաւան եւ ձեռագրի մը մէջ նաեւ Նախջաւան (Ագաթանգեղոսի քով անունս ընդհանրապէս չի յիշուիր): Դարձեալ Ղեւոնդի քով[101] կը գտնուի Նախճաւան կամ Նախջաւան, Ասողիկ[102] ամէն անգ կը գրէ Նախճաւան, ինչպէս եւ Թովմաս Արծրունի[103]: Նոյն իսկ Վարդան վարդապետի Պատմութիւնն, որ գլխաւորաբար 1307ի ձեռագրի մը վրայէն տպագրուած է (Վենետիկ 1862), երկու անգ (ԼԷ, էջ 72 եւ ԾԴ, էջ 98) Նախիճաւան եւ անգամ մըն ալ (ՁԴ, էջ 140) Նախջուան ունի, բայց այսմ ԺԴ. դարն ալ տակաւին Նախիջեւան չէ ճանչնար:

Ամէն պարագայի Նախջաւան եւ ամէնէն ուշը Նախիջեւան կրտսերագոյն ձեւը կամ ընթերցուածն է եւ միայն գրչագիրներու եւ հրատարակիչներու կողմանէ հնագոյն բնագիրներու մէջ մտած: Իսկ եթէ Նախճաւան հնագոյն ձեւն է[104], այն ժամանակ յայտնի է

99 Գլ. ԿԷ., էջ 121:

100 Ա. Լ (ԼԱ), էջ 83. Բ. Ը, էջ 112. Բ. ԾԱ, էջ 180, Գ. ԼԲ, էջ 296:

101 Ս. Պետերբուրգ 1887. գլ. Զ., էջ 7. Գ., էջ 11, Ը., էջ 24, Ժ., էջ 33:

102 Ս. Պետերբուրգ 1885. գլ. Գ., էջ 115. Դ., էջ 120, 124:

103 Ա., գլ. Ա., էջ 78. գլ. Գ., էջ 92. գլ. Դ., էջ 105 եւ այլն:

104 Հմմտ. Աճառեան, Արմատական, էջ 497: Հմմտ.

*որ* *անուն* Նախ-իջեւան *չի կրնար նշանա-կել, այլ բաղկացած է (այլազգ. անծանօթ)* Նախճէն — *բուն ձեւն ըլլալու է* Նախիճ *կամ* Նախուճ — *որ գուցէ անուն մըն էր, եւ (ծա-նօթ)* աւան *բառէն, այնպէս, ինչպէս* Անուշ-աւան, Արշակ-աւան, Բագ-աւան (Բագուան), Զարեհ-աւան (Զարեհաւան), Թոռն-աւան, Շիրակ-աւան, Վաղարշ-աւան, Սմբատ-աւան *եւ այլն*[105]:

*Երկրորդ՝ Աւանդութիւնը: Մուրատ (անդ, էջ 77) Հ. Ղ. Ալիշանի եւ Գէլցէրի ուսումնասիրութիւններուն համաձայն սխալուած է ընդունիլ, որ հին հայ մատենագիրները մինչեւ «ԺԱ. եւ ԺԲ. դար Նոյեան տապանի իբր կայան՝ Մասիս անունով լեռ չեն ճանչնար, երբ ընդհանրապէս տապանակիր լերան մասին խօսք կ'ըլլայ, իբրեւ այսպիսի կը նշանակեն Կորդուաց լեռները», սակայն ասկէ չ'ուզեր Ալիշանի եւ Գէլցէրի հետ եզ-*

---

*նալ.* Նախճուան, Նախջուան, *յուն.* *Naξovára* *Պտղոմէոսի քով: Անհիմն է նաեւ Մուրատի տուած մեկնութիւնը թէ* Նախջաւան *ձեւն — եթէ նոյն իսկ սկզբնական եւ ուղիղ ըլլար — «ժողովրդական արագ ստուգաբանութեամբ յառաջ եկած համառօտութիւն մըն է»* Նախիջաւանին: *Որովհետեւ նման համառօտութիւններ մինչեւ հիմայ դասական հայերէնի մէջ ընտ. չեն տեսնուած եւ կարելի չէ ալ տեսնել. այնու, որ* Իջաւանը *«*Նախ*»էն եւրն իր ի այնպէս պէտք էր պահել ինչպէս* Նախիմաց *եւ այլն: Վասն զի երկրայինք կամ բազմավանք բառերու բառակազմի* ի *կամ* ու *բարդութեանց մէջ ընտ. չի կորսուիր:*

[106] *Այս կարծիքն ունին Հիւբշման (անդ, էջ 73 յջ.), Մարքուարտ* (Streifzüge, *էջ* 289, *ծնթ.* 4) *եւ* Lehmann-Haupt (Armenien, I, *էջ* 178):

րակացնել որ Հնագոյն աւանդութիւնք Մասիսն երբեւ տապանակիր լեռ չէ ճանչցած, այլ Յովհ. Երզնկացւոյն հետեւեալ խօսքը՝ «Լեառն այրարատեան բարձրագոյն Մասիս, տեղի հանգստեան եղեալ տապանին[106]» կ'ուզէ ապացոյց համարել թէ տապանակիր լեռ Մասիսի հետ նոյնացնելը «ի հնուց ընդհանուր ճանչցուած իրողութիւն մըն է»։ Սակայն սոյն քննադատութեան մէջ պատմաբանական, հետեւողական ընթացք մը չէ, այլ անկրաւ գնահատանք մըն է կրաւորագոյն հեղինակի մը վկայութեան՝ հակառակ Հնագոյններուն. որ առ առաւելն միայն կրնայ ապացուցանել թէ անոր ժամանակ երբեւ տապանակիր լեռ ընդհանրապէս Մասիսը կը համարուէր, բայց ոչ երբեք թէ միշտ երբեւ այսպիսի համարուած է։

Որեւէ վկայութիւն մը Մասիսի աւանդութեան ի նպաստ կը գտնուի Ս. Յակոբ Մծբնացւոյ վարքին մէջ, զոր Մովսէս բնաւ չի յիշեր։ Կ'ըսուի թէ «Այդ որ այսչափ հրաշագործէր սուրբն Յակոբ, զի՞րդ անգիտանայր վասն տապանին թէ ո՞ւր կառուցեալ կայ։ Ոմանք ի լեառն Կորդուաց ասացին եւ ոմանք ի լեառն Մասիս որ յԱյրարատեան գաւառին. նա առանձին եւ յառն Մասեաց աղբիւր բղխեալ կայ, եւ եկեղեցի յիւր անուն կոչեցեալ մինչեւ ցայսօր ժամանակի» (Սո-

---

106 Սոփերք Հայկականք, Ե. էջ 83—164, Ներբողեան ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ, էջ 124։

վերք, ԻԲ., էջ 22)։ Արդէն գրութեանս առաջին էջն ասորական աղբիւր մը կը մատնանշէ, որուն համաձայն խմբագրուած ըլլալու է։ Հաւանական է որ գրութեանս հիմնական մասը հին է, բայց ոչ Մասիսի աւանդութեան մասին եղած տեղեկութիւնը։ Թէ այս տեղեկութիւնն անճարակ կերպով ներմուծուած է եւ կամ թէ — այն պարագային որ նոյն իսկ սկզբնական ըլլայ — այրարատեան Մասիսը չէ, յայտնի է Արտամէտ աւանի յիշատակութենէն (անդ, էջ 23), ուր Վասպուրականի Արտամէտը հասկնալու է, ինչպէս որ արդէն ըստ Հ. Ակերեանի[107] Յայսմաւուրքները կը յիշեն։ Ասիկա գէթ այնչափ կը ցուցնէ որ Յակոբ Մծբնացին մինչեւ Մասիս լեռը չհասաւ եւ վերոյիշեալ տեղիքին մէջ Վանայ լճին եզերքը հասկնալու է։ — Յետագայ շրջանին նաեւ եւրոպացի գիտնական ճանապարհորդներ կը յիշեն Մասիսի աւանդութիւնն[108], որ սակայն մեր խնդրոյն համար ոեւէ նշանակութիւն չունի, այնու որ

---

107 Լիակատար վարք եւ վկայաբանութիւն սրբոց, հատ. Ժ., էջ 17։

108 Ինչպէս Guillaume de Ruysbroeck եւ Vincent de Beauvais, որոնց մասին տե՛ս P. Peeters, La légende de S. Jacques de Nisibe, Analecta Bollandiana, 1920, p. 329. Նաեւ Adam Olearius, Vermehrte newe Beschreibung der Moscowitischen und Persischen Reyse (Schleswig 1656), էջ 399 կը պատմէ թէ Շամախի եկեղեցւոյ մէջ կէս կանգուն մեծութեամբ խաչ մը կայ՝ մետաքսէ նիւթերով փաթթուած, որ իրր թէ տապանի փայտերու մնացորդներէն շինուած է։

*իրենց ժամանակի աւանդութիւնն է որ կը հաղորդեն։*

*Եթէ ԺԱ. մինչեւ ԺԲ. դարէն յառաջ ընդհանրապէս Մասիսի աւանդութիւնը գոյութիւն ունեցած ըլլար, այն ժամանակ ապահովապէս այսչափ երկար ժամանակամիջոցէն վկայութիւն մը մեզի հասած պիտի ըլլար։ Որովհետեւ այս ժամանակաշրջանի շատ մը մատենագիրներ*[108] *եւ ոմանք կրկին ու կրկին անգամ Նոյի, ջրհեղեղի եւ տապանի մասին կը խօսին, եւ սակայն ամենադոյզն կերպով իսկ չեն ակնարկեր թէ* որ լերան վրայ *տապանն իջած է։ Այս պարագան անկարելի է ըմբռնել երբ նկատենք վեհափառ Մասիսն, որ հին դարերուն արդէն պանապան առասպելներու որրանն ու միջնակէտն եղած է եւ իր ներկայութեամբն յանդէպս ամէնուն Մասիսի աւանդութիւնը պիտի յիշեց-*

---

108 *Ինչպէս Ագաթանգեղոս, գլ. ԺԵ* = § 169, *ԺԶ.* = § 172, *ԻԷ.* = § 296, *Եղնիկ, Ընդդէմ աղանդոց, էջ* 153, 164։ *Ղազար Փարպեցի (իր «Թղթոյն» մէջ),* 1904, *էջ* 190։ — *Յովհ. Մանդակունի, Ճառք (Վենետիկ* 1860), *էջ* 33, 145, 157 *յջ.,* 204։ — *Եղիշէ (Վենետ.* 1859), *էջ* 82։ — *Մ. Խորենացի, Պատմութիւն, Ա.,* 4, 5, 6։ — *Յովհ. Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց (Թիֆլիս* 1912), *էջ* 11։ — *Գրիգոր Նարեկացի, Ճառք (Վենետ.* 1827), *էջ* 196, 197 *յջ., հմմտ. նաեւ էջ* 231, 239, 248։ — *Ուխտանէս, Պատմութիւն Հայոց (Վաղարշապատ* 1871), *էջ* 17։ — *Գրիգոր Մագիստրոս, Տաղասացութիւնք (Վենետ.* 1868), *էջ* 9, 80։ — *Ներսէս Շնորհալի, Տաղաչափութիւն (Վենետ.* 1830), *էջ* 16 *յջ.,* 318, 413, 475, 489, 501, 548, 579։ — *Սամուէլ Անեցի առ Ալիշան, Տեղագիր Հայոց Մեծաց (Վենետիկ* 1853), *էջ* 6։ — *Վարդան Վարդապետ, Պատմութիւն (Վենետ.* 1862), *Դ.—Ե.* = *էջ* 7—9։

նէր, եթէ նման աւանդութիւն մը գոյութիւն ունեցած ըլլար:

Նոյն իսկ Ծն. Ը. 4 տեղւոյն Հայերէն թարգմանութիւնն այսպիսի աւանդութեան մը հակառակ կ'ելլէ: Եթէ Ս. Գրքի հայ թարգմանիչները Մասիսի աւանդութեան մասին գէթ աղօտ գաղափար մը ունեցած ըլլային, այն ժամանակ τὰ Ἀραράτ Այրարատ նահանգին հետ յարաբերութեան մէջ դնելով ոչ թէ միայն «Այրարատ»ով թարգմանած պիտի ըլլային[110], այլ հակիրճ կերպով «ի լերինս Մասեաց», տալիս ընթերցողներուն համար շատ աւելի պարզ եւ հասկնալի պիտի ըլլար եւ միաժամանակ համուած իմաստին հաւատարիմ արտայայտութիւնը: Թէ բնականաբար Ս. Գրքի հայ թարգմանիչները ո՛րչափ ժողովրդեան հասկացողութեան յարմարելու միտ դրած են, կը ցուցնէ ի մէջ այլոց Ὠρίονն (Ես. ԺԳ., 10 եւ Յոբ ԼԸ., 31), որ Հայկով թարգմանած են:

Ըստ այսմ այսօրուան մեր ձեռքը հասած հայ մատենագրութիւնը հին առնելով ԺԱ. դարէն յառաջ Մասիսի աւանդութեան մը գոյութեան մասին կարելի չէ այլ եւս խօսք ընել: Սակայն եւ այնպէս Մուրատ (անդ, էջ 42 յղ.) կ'ուզէ առ այս ակնարկութիւն մը, թէեւ «միակը», Մովսէս Խորենացւոյ քով գտնել, որ «աղօտ կերպով հին, բերանացի աւանդութիւններէն քաղուած պատմուածք-

110 Տե՛ս վերը ծնթ. 2:

ներու բովանդակութիւնը կու տայ»: Պատմահայրս[111] Գորգի, Բանան եւ Դաւիթ աղբիւրներու հետեւողութեամբ կ'աւանդէ ազգերու բաժանման մասին յոյն փիլիսոփաներու մէջ տեղի ունեցած խօսակցութիւն մը, երբ ասոնց մէջէն ամէնէն յաջողակը՝ Ոլոմպիոդորոս այսպէս կ'ըսէ. «Պատմեցից ձեզ», կ'ըսէ, «զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալ, զոր եւ բազումք ի գեղջկաց զրուցեն մինչեւ ցայժմ: Մատեան լեալ զՔսիսութրեայ եւ զորդւոց նորա, որ այժմ ոչ ուրեք երեւի. յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի:

Յետ նաւելոյ Քսիսութրեայ ի Հայս եւ դիմելոյ ցամաքի, գնայ, ասէ, մի յորդւոց նորա կոչեցեալն Սիմ ընդ արեւմուտս հիւսիսոյ դիտել զերկիրն, եւ դիպեալ դաշտի միում փոքու առ երկայնանստիւ միով լերամբ, գետոց ընդ մէջ նորա անցանելով, ի կողմանս Ասորեստանի, դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս, եւ անուանէ յանուն իւր զլեառն Սիմ.[112] եւ դառնայ անդրէն յարեւելս հարաւոյ, ուստի եկն: Իսկ ի կրտսերագունից որդւոցն նորա Տարբան անուն, երեսուն ուստերօք եւ հնգետասան դստերօք եւ նոցին արամբք մեկնեալ ի հօրէն, բնակէ անդրէն ի նոյն գետեզեր, յորոյ անուն եւ զգաւառն անուանէ Տարօն, եւ զանուն տեղ-

111 Պատմութիւն, Ա., գ.:

112 Սասնոյ գաւառին մէջ (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 70): Խորենացին կ'ընդունէ այս անունը, որովհետեւ Սէմ անուան շատ նման է, զոր հոս Սիմի կը փոխէ:

ւոյն ուր բնակեցաւն՝ կոչէ Ցրօնս. զի անդ դառաջինն սկիզբն եղեւ բաժանելոյ որդւոց նորա ի Նմանէ: Նորին դարձեալ եւ առ եզերբ սահմանացն Բակտրիացւոց ասէին բնակել սակաւ աւուրս. մնացեալ եւ մի ոմն անդ յորդւոցն նորա: Քանզի կողմանք արեւելից Զրուան զՍեմ կոչեն, եւ Զարուանդ[113] դգաւառն անուանեալ ասեն մինչեւ ցայժմ: Բայց առաւել յաճախագոյն հինքն Արամազնեաց ի նուագս բամբռան եւ յերգս ցցոց եւ պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք»:

Այս երկար տեղիքը դիտմամբ յառաջ բերինք, որպէս զի ցուցնենք թէ որչափ խախուտ է Մուրատի գլխաւոր նեցուկը: Տեղիքիս մէջ յիշուող անունները՝ Քսիսութրոս, Սիմ — Սէմ, Սէմը Զրուանի հետ նոյնացնելը, Տարօնը Տարբանէն, Զարուանդը Զրուանէն յառաջ բերելն եւ ընդհանրապէս ամբողջ ոճն հայ ժողովրդական աւանդութիւն մը չի ներկայացներ, այլ Խորենացւոյ գիտական յերիւրանքը կը մատնէ: Նաեւ այն կարծիքը թէ Արամի յաջորդները «զայսոսիկ ասեն յիշատակօք» այնչափ անորոշ է, որ անկէ ոչինչ կարելի է եզրակացնել: Եւ նոյն իսկ եթէ տեղիքս ժողովրդական կորիզ մ'ունենայ, որ անկարելի չէ, այն ժամանակ նաեւ այս պատմուածքին տեսարանը Վանայ լճին արեւ-

---

[113] Զրուան եւ Զարուան անուններու մասին տե՛ս Marquart, Südarmenien und die Tigrisquellen, ՀԱ. 1914, էջ 115, ծնթ. 1 եւ 2 = Արտատպ., էջ 204, ծնթ. 2 եւ էջ 205, ծնթ. 1:

մտեան կողմը փնտռելու է, եւ Քախութրոսի վերջին կայանն ալ՝ հիմ առնելով Սիմ լերան գիրքն[114], որ Հայկական Տաւրոսի հետ նոյն ըլլալ կը թուի[115], եւ վերն ըսուածները, կ՚ըլլայ՝ ոչ թէ Այրարատ նահանգի Մասիսն, այլ Հայկական Տաւրոսի քով գտնուող Երկիրը կամ ընդարձակ իմաստով Կորդուաց աշխարհն[116], որուն մասին պիտի խօսինք յաջորդ հատուածին մէջ:

## § 5. ԿՈՐԴՈՒԱՑ ԼԵՌՆ ԻԲՐԵՒ ՏԱՊԱՆԱԿԻՐ ԼԵՌ

Հայ մատենագրութիւնը՝ թէ՛ թարգմանչականը եւ թէ՛ սկզբնագրականը մինչեւ ԺԱ. դար իբր տապանակիր լեռ միայն Կորդուաց լեռները կը ճանչնայ:

1. Եւսեբիոսի Քրոնիկոնի հայ թարգմանութիւնը. «Եւ ի նաւէն՝ որ չոգաւ դադարեաց ի Հայս, եւ ցայժմ սակաւ ինչ մասն ի Կորդուացւոց լերինն ի Հայոց աշխարհին մնայ նշխար ասեն»[117]:

2. Փաւստոս Բիւզանդ կը պատմէ[118].

---

114 Խորենացի, Պատմութիւն, Ա. իդ., Բ. ը., Արիստակէս Լաստ., գլ. ԻԱ., էջ 94:

115 Տե՛ս Marquart, Südarmenien, ՀԱ., 1914, էջ 113 = Արտատպ., էջ 202:

116 Հմմտ. նաեւ Hübschmann, անդ, էջ 75:

117 Քրոն. Աւգերեան, հատ. Ա. (Վենետ. 1818), էջ 36—37:

118 Գ. 10 Վենետ. 1832, էջ 22. Մուրատ, անդ, էջ 1 յջ.: P. Peeters, Anal. Boll., t. 38 (1920), էջ 312 յջջ.: Տեղիքիս հայոց իբր արեւելեան աղբիւր մը առ՛ս Bedjans, Acta Sanctorum (1892), հատ. Գ., էջ 435 ու. E. Nestle, Die Auffindung der Arche Noä durch Jakob von Nisibis ի Zeitschr. f. Kirchengesch., 26 (1905), էջ 242:

«Զայնու ժամանակաւ խաղաց գնաց մեծ եպիսկոպոսն Մծբնացւոց, այր սքանչելի ծերունի, վաստակաւոր ի գործս ճշմարտութեան, որում անուն Յակոբ, փոխանակ այգուն պարսիկ կոչէր, այր ընտրեալ յԱստուծոյ, յիւրմէ քաղաքէ անտի գայ հասանել ի լերինս Հայոց, ի լեառնն Սարարադայ ի սահմանս այրարատեան տէրութեանն ի գաւառն Կորդուաց. այր լի շնորհօքն Քրիստոսի, որպէս զօրութիւնք նշանաց եւ արուեստից լինէին ի ձեռաց նորա: Սա եկեալ ցանկացեալ փափաքեալ մեծաւ տենչանօք աղաչէր զԱստուած՝ տեսանել զփրկական տապանն Նոյեան շինուածոյն, զի յայս լերին հանգեաւ նա ի ջրհեղեղէն. քանզի զամենայն ինչ որ հայցէր, առնոյր ի Տեառնէ: Ապա մինչդեռ ելանէր ընդ դժուարին ընդ անջրդի ընդ ափափայն անապատին սարարատեան լերինն, աշխատեցան եւ ծարաւեցան նա եւ որք ընդ նմայն: Ապա գնէր ծունր մեծն Յակոբ ի վերայ երկրին, եւ կայր յաղօթս առ Տէր. եւ ի տեղւոջն՝ ուր եղեալ էր գլխոյ իւր՝ բղխեաց աղբիւր, եւ արբին նա եւ որ ընդ նմայն էին. որ մինչեւ ցայսօր ասեն այնմիկ աղբիւր Յակոբայ: Եւ ինքն ի նմին աշխատեալ ջեղեկէր՝ զխնդրելին տեսանել առանց յապաղութեան, առնէր աղօթս առ Տէր: Արդ իբրեւ էր նա խոնջեալ ի վեր ի դժուարին տեղւոջն մօտ ի կատարս, եւ կարի վաստակեալ էր, ննջեաց նա. եւ եկն հրեշտակ Աստուծոյ, եւ ասէ ցնա. Յակոբ, Յակոբ: Եւ նա ասէ. Աւասիկ Տէր:

Եւ առէ հրեշտակն. Ահա ընկալար Տէր զաղաչանս քո, եւ կատարեաց զխնդրուածս քո. այդ, որ կայ ընդ ոտարս քո, է ի փայտէց սապանակին, ահա բերի քեզ, անտի է այդ, զի այլ մի եւս յաւելցես ուտանել զայն, զի Տէր այդպէս կամեցաւ: Եւ մեծաւ խնդութեամբ յառն կացեալ, բազում գոհութեամբ երկիր պագանէր Տեառն, եւ ուտանէր զտախտակն` իբրեւ զի կացնաւ հատեալ հանեալ ձեղքեալ ի մեծ խոչ փայտէց: Եւ առեալ դառնայր անտի, հանդերձ շնորհատուր պարգեւելոյն, եւ որք ընդ նմայն երթեալք` իւրաք ճանապարհորդ լինէր»:

Սարարայի անունով ի՞նչ պէտք է հասկընալ: Սարարայ յիշեցուածը, զոր Փաւստոսի քով միեւնոյն գլխուն մէջ երեք անգամ կը կարդանք, կը գտնենք նաեւ ուրիշ տեղեր. 1. Կիւրեղ Աղեքսանդրացւոյ վերագրուած Ծննդոցի Մեկնութեան հայ թարգմանութեան մէջ[119]. 2. այն երեք ձեռագիրներուն մէջ, որոնք Էջմիածնի անաւարտ մնացած քննական Աստուածաշունչի հրատարակութեան (Ծն. Է. 4, ծնթ.) հիմը կը կազմեն. 3. Մովսէս Խորենացւոյ վերագրուած Հռիփսիմեանց պատմութեան մէջ (տե՛ս Գործք., էջ 300). 4. Գրիգոր Աղթամարցւոյ մէկ տաղին մէջ. «Լեառն Սարարայ, Կարմեղ եւ Սինայի». եւ վերջապէս. 5. ձեռագիր ա-

[119] Վենետիկեան Մխիթարեանց Մատենադարանին մէկ ձեռագիրը, Թ. 231, թղ. 13: Ձեռագիրն ինքնին ԺԹ. դարէն է, բայց օրինակեն ԺԲ. դարէն: Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ 602:

ձեռագրին մը մէջ՝ 1292ին, որ կը կարդանք. «Ի գաւառիս Սարաբազու, ի քաղաքիս՝ որ կոչի՝ ոք. Մարի» [120]:

Սարաբազի մեկնութիւնն ու տառ ուխարհագրական դիրքն որոշելն երկար ժամանակ խնդրոյ նիւթ էր: Առաջին անգամ Կէմին համարձակեցաւ իր գաղղ. թարգմանութեան մէջ [121] Սարաբազին նկարել ծանօթութիւն մը զնել ու նոյնացնել զայն Մասիսի հետ, բայց ձեւին ծագումն ալ սխալ գրչագրութեամբ մեկնել: Հիւբշման (անդ, էջ 76. ծնթ. 1) եւ Մարքուարտ (անդ, էջ 71 եւ 84. ծնթ. 1) այս մասին որոշ կարծիք մը չեն կրնար յայտնել: Միայն վերջինս անց մը (անդ, էջ 84. ծնթ. 1) նաեւ հնարաւոր կը համարի թէ Սարաբազ յառաջ եկած ըլլայու է «ի լերինս Սարաբազայ» բառերուն սխալ բաժանմամբ, այնու որ լերինսի վերջին ան Արաբազայ հետ միացած է»: Մարքուարտ սակայն հոս վարքին սրբագրութիւն մը կ'ընէ, այսինքն՝ լեառն կ'ուզէ կարդալ լերինս վերջիչայ ձեւով մեկնել կարենալու համար, որ սակայն բոլորովին անկարգ է, որովհետեւ հոյ գրչագրութեան մէջ, մանաւանդ Մեսրոպեան գրերու մէջ Ն եւ Ս յաճախ իրարու հետ կը շփոթուին: Ուստի սխալ բաժանմամբ Ս յաջորդ բառին հետ միացնելով յա-

[120] Տե՛ս Լալայեանց, Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի (Թիֆլ. 1915), էջ 119—122:

[121] Langlois, Collection des hist. anc. et mod. de l'Arménie, I, p. 218 b, ծնթ. 2:

ռաջ կու գար այդէն Սարարադ ձեւը[122]: Այս ձեւը անգամ մը ծագելէն ետքը բնականաբար հրապուրիչ պիտի ըլլար Վասպուրականի կողմերէն ծնած մատենագիրներուն եւ գրչագիրներուն համար Սարարադ ձեւն իրենց գրութիւններուն անմահացնելու, եւ աւելի անձուկ կերպով տապանակիր լեռն իրենց նահանգին հետ կապելը:

Թէ Սարարադի փոխարէն Արարադ ձեւն ուղիղ է, կը վկայէ Սեբէոսի քով գտնուող տեղիքը (էջ 2, տող 24—33), որուն համաձայն Հայկ Բաբելոնէն դէպ ի հիւսիս՝ Արարադ երկիրը կը չուէ, անկէ ալ աւելի հիւսիս երթալով ի մերձոյ Հարք գաւառին մէջ կը հաստատուի: Հոն գծուած Արարադի աշխարհագրական դիրքը թոյլ չի տար նոյնն Այրարատ նահանգին հետ շփոթելու: Եթէ ուղիղ է Մատիկեանի[123] կարծիքը թէ Սեբէոսի առաջին գլուխները Փաւստոսի առաջին երկու գլուխները կը կազմէին, այն ժամանակ այս տեղիքն ուղղակի ապացոյց մըն է թէ Սարարադը Փաւստոսի քով կրնայ միայն Արարադ եղած ըլլալ: Պէտք է միտ դնել որ Փաւստոսի Պատմութեան բոլոր ձեռագիրները միեւնոյն խմբի կը վերաբերին, միեւնոյն սխալներով, միեւնոյն սխալ ընթերցուածներով եւ թէ ամենահին ձեռագիրն ԺԷ. դարը չանցնիր[124]:

122 Տե՛ս նաեւ Հ. Ա. Մատիկեան, Սարարա՞դ թէ Արարադ. ի Յուշարձան (Վիեննա 1911), էջ 432—435:

123 Տե՛ս Անանունը կամ Կեղծ-Սեբէոս, Վիեննա 1913:

124 Հմմտ. Գ. Տէր-Մկրտչեան, Zeitschr. f. arm. Philologie, II, էջ 267 յջ.:

*Ամէն պարագային Սեբէոսի տեղիքն ապացոյց մըն է թէ Հայ մատենագրութիւնն Այրարատէն զատ Արարատ մըն ալ կը ճանչնայ, թէեւ ամբողջը հին Կոտայքանի տեսակէտին վրայ կազմուած է, ինչպէս որ Փաւստոսին ալ Աստուածաշունչն է որ (Ս)արարադ կը ներշնչէ:*

*Մարքուարտ* 1914*ին*[125] *այն կարծիքին եկած էր թէ Սարարադ անունը կազմուած է վրաց.* սա *նախդիրէ, ինչպէս Սա–Քարթվելօ, Սա–աթաբագօ եւն ձեւերուն մէջ եւ* Արարադէն, *սակայն արդէն իր* Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen *գործքին մէջ*[126] *տատամսելու սկսած է, այնու որ հետեւեալ նախադասութեան՝ «Անժխտելի է որ* Սարարադ *անունը... աստուածաշնչեան Արարատի հետ ազերս ունի, ձեւն ինչպէս որ ալ մեկնուելու ըլլայ» ծանօթութիւն մը կցած էր, ուր մէկ կողմանէ ձեռագրական աղաւաղումն այս դէպքին մէջ անհիմն կը համարի, իսկ միւս կողմանէ ալ այն ենթադրութիւնը, թէ վրաց.* սա *նախդիրն է որ հոս կը ներկայանայ (հմմտ. Σά-σπειρες Հերոդոտոսի քով) կը մերժէ, որովհետեւ այսչափ ուշ ժամանակ վրական ազդեցութիւն կարելի չէ փնտռել եւ այն այսչափ հարաւ: Սակայն այնու որ Մարքուարտ գրեթէ հինգ տարի ետքն՝ իր բա-*

125 *Տե՛ս* Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin 1919, *էջ* 17:

126 *Հանդէս Ամսօրեայ, էջ* 180 = *Արտատ. էջ* 216:

նախօտութեան տպագրութեան ժամանակ նկատի առնելով Մատիկեանի վերյիշեալ յօդուածը (Յուշարձանին մէջ) ծանօթութիւն մը կը յաւելու. «Բնականաբար ամէնէն աւելի հաւանականն է այն թէ Սարարադ ձեւը գոյութեան իրաւունք չունի, այլ իր ծագումը պարզապէս Արարատի սխալ գրչագրութեան կը պարտի եւ Ս. Գրքէն առնուած է[127]», կրնանք այլ եւս Waldemar Belckի կարծիքը[128] թէ Սարարատ «ուրիշ բան չէ, բայց եթէ Արարատ՝ տուրանեան Սա տեղական նախդիրով» բնաւ նկատի չառնել:

3. Թովմաս Արծրունի ունի հետեւեալ տեղիքն[129]. «Յետ կատարման աստուածային հրամանին՝ ի ծփական ջուրցն բերեալ տապանն յարեւելեայն ի միջոց աշխարհի՝ հանգեաւ ի լերինս Կորդուաց»:

4. Մովսէս Խորենացւոյ վերագրուած «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց», փոքրիկ կրուածքին մէջ կը պատմուի կուսաններու մասին թէ ինչպէս իրենց գաղթի ժամանակ Կորդուաց աշխարհէն կ՚անցնին եւ Սողոփ անունով լեռը կը հանին. «Բայց այսր լերին», կը գրէ հեղինակը, «ուր յԱսոր—

[127] Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 59, ծնթ. 5:

[128] Die Ursitze der Chalder und die Ausbreitung der chaldischen Macht ի Հանդէս Ամսօրեայ, ԽԱ. (1927), էջ 809: Փաւստոսի Սարարադի մասին տե՛ս նաեւ P. Peeters, La légende de S. Jacques de Nisibe, ի Anal. Boll., 1920, էջ 322 յջ.:

[129] Հրատ. Պետերբ. 1897, Ա., գլ. 1 (էջ 18—19):

ւոյ, թէ ի նուազել ջուրցն հեղեղաց, եհաս տապանն ի գլուխ լերինն, որ է Սարարադայ. եւ ընդ մէջ անցեալ սղոցաձեւկնն արքեյու-ղնաւն. եւ անուն քաղաքաղեղՋն կոչեցաւ Թըմնիս, այսինքն թէ ութ ոգիք ելին ի տապանէն[130]»։ Որչափ մեզի ծանօթ է, բոլորովին նորութիւն է թէ ասորի աւանդութեան մէջ տապանակիր լեռը (Ս)արարադ կոչուի։ Հաւանական է որ հոս (Ս)արարադը Փաւստոսի Պատմութենէն առնուած յաւելուած մըն է։ Նման բան մը կը տեսնենք նաեւ Միքայէլ Ասորւոյ ժամանակագրութեան հայ թարգմանութեան մէջ։ Մինչ ասորի բնագիրն ըստ հրատարակութեան J. B. Chabotի[131] կ՚ըսէ. «Անոնք տապանը թողուցին (եւյան), ինչպէս կ՚ըսէ Յովսէփոս[132], Այա—

[130] Մովսէս Խորեն. Գործք, Վենետ. 1865, էջ 300։ Մուրատ, անդ, էջ 28—29։ Հ. Ղ. Ալիշան, Հին հաւատք Հայոց (Վենետ. 1910, էջ 63—64) տեղեկս յառաջ կը բերէ միայն քիչ մը տարբեր բնագրով. նաեւ տարբեր ընթերցուածներ կու տայ Սողոփ եւ Թըմնիս անուններուն համար, ինչպէս Սաղոբ, Թըմնի կամ Թմնի։

[131] Chronique de Michel le Syrien, Paris 1899, t. I, p. 14.

[132] Ինչպէս Chabot ինքնին կը դիտէ, Բար Հեբրէոս ալ (Chron. syr., p. 7) նոյնը կ՚աւանդէ։ Բայց հոս շփոթութիւն մը կը տիրէ Ստրաբոնի պատճառաւ, որուն համաձայն (XII, 569) Ապամէա քաղաքը Κιβωτός = սնդուկ, տապան» մականունն ունի եղեր. հմմտ. նաեւ Պտղոմէոս V, 2, 25 եւ Պլինիոս, Hist. nat. V, 29։ Նոյն իսկ Սեպտիմոս Սեւերոսի եւ Մակրինոսի գահակալութեան ժամանակ կոխուած դրամներուն վրայ բոլորովին որոշ կերպով կը տեսնուին ΝΩΕ արձանագրութիւնն իր, կնոջ, ագռաւի եւ աղաւնիին պատկերով։ Այս մասին, ինչպէս եւ հրեայ գաղութին ձեռքով այս կողմերը Ս. Գրքին թողուած

մէկ քաղաքին մէջ, որ Պիտղիսոյի մայրաքաղաքն է. Հոս կը գտնուին տապանին մնացորդները: Այս մասին ուրիշներն ուրիշ կերպ կը խօսին», այս տեղ Հայ Թարգմանիչը[133] կ'աւելցնէ. «բայց ճշմարտագէս կայ ի Հայք Մեծ, ի լեառն Արարատայ, որ է Մասիս բառ բնագրոցն»:

Վերոյիշեալ գրուածքին հեղինակը կ'ուզէր ցուցնել այստեղ փաստով (Ա)արարատի դիրքն աւելի որոշել զայն Թըմնիսի հետ յարաբերութեան մէջ դնելով կամ նոյնացնելով: Այս Թըմնիսն ուրիշ բան չէ, բայց եթէ Թաբինք Թեմանին կամ Թամանին՝ այսօրուան Ջեզիրէյ Իբն-Օմար (Տիգրիսի քով) քաղաքին քովերը, այսօրուան քրդաբնակ գիւղը Բեթմանին, քրդերէն Հեշտանէ (այսինքն՝ 80, փոխանակ հեշտէ-նէ), որուն մասին Սախաու լսած էր թէ կը գտնուի Ջուդիին ետեւը, Նակրաւանէն 12—15 ժամ հեռու[134]: Իրր թէ այս Թեմանինը նոյն հիմնուած եւ տապանէն ելլող ութ հոգիներու[135] թուոյն

աղդեցութեան մասին տե՛ս E. Babelon, La tradition phrygienne du déluge ի Revue de l'hist. des religions, t. 23 (1891), p. 174 յջ.:

133 Հրատ. Երուսաղէմ 1871, էջ 10:

134 Sachau, Reise in Syrien und Mesopotamien, Leipzig 1883, էջ 376: Հմմտ. նաեւ Hartmann, Bohtan, 1, 53, 84. 2, 93, 128:

135 Հաւանաբար ասորերէնի վրայէն ܬܡܢܐ = ութ կազմուած է: Արաբերէնի վրայէն չափելով պէտք էին «ութսուն» (ثمانون) աչքի առջեւ ունենալ, որովհետեւ արաբները այս գիւղը Թամանին կամ Թամանուն կ'անուանեն:

հաղէտի համաձայն[140] տապանն ալ–Ջուդի լերան վրայ հանգչած եւ հոն Նոյ տաճար մը շինած է եղեր, որ տակաւին Քալիֆների ժամանակներն իսկ ուխտատեղի եղած է: Նոյն իսկ մինչեւ Աբբասեանց ժամանակները տապանի մնացորդներէն այն լերան վրայ կը ցուցուէին եղեր:

Ըստ այսմ տեսանք, որ «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց»ի հեղինակը (Ս)արարադը Թեմանինի քովերը կը փնտռէ: Արդեօք նոյնը կրնա՞նք ըսել Փաւստոսի համար: Բնագրէն ոչինչ կարելի է ապացուցանել, այլ միայն ենթադրել, որովհետեւ ամբողջ պատմուածքին ոճն ասորական աղբիւր մը կը մատնանշէ, ուրիշ նեցուկ մը կարելի չէ գտնել բնագրին մէջ: Առ այս ապահով կռուան մը կու տայ (կեղծ) Սեբէոս, որ Մար Աբասին հետեւելով կը պատմէ[141]. «Արդ՝ այս են անուանք ազգածինն արանց անդրանկելոյն ի Բաբելոն, գնացելոցն ընդ կողմանս հիւսիսոյ յերկիրն Արարադայ: Զի չուեալ խաղաց գնաց Հայկն ի Բաբելոնէ կնաւն եւ որդւովքն եւ ամենայն աղխիւն հանդերձ: Եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ ի տանն որ ի լեռնոտին, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ հաւրն՝ եւ եղբարբքն հանդերձ: Եւ ապա ետ զնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում որդւոյն Արա-

---

[140] Թարգմ. Ethé, t. I, 19, p. 320, տե. Սանտալճեան, Histoire, I, p. 137:

[141] Հրատ. Պետերբուրգ 1879, էջ 2—4:

մենակայ: Եւ ինքն չուեալ գնաց անտի եւս ի հիւսիսակողմն եւ չոգաւ բնակեցաւ ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ. եւ կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն[142]: Իսկ երկիրն ըստ նմին պատշաճի կոչեցաւ անուն Հայք՝ որ են հայազամբք հանդերձ...[143]:

---

[142] Ասիկա ժողովրդական ստուգաբանութիւն է: Տարակոյս չկայ որ հոս f արմատին կը պատկանի, որուն ապացոյց է սեռ. Հարfաց ձեւը, նմանապէս Χάρκα (Տուրուբերանի մէջ) Կոստանդին Ծիրան. քով (De administratione imp., cap. 44):

[143] Այսպիսի մեկնութեան մը փորձը, սովորական երեւոյթ մը նաեւ ուրիշ ժողովուրդներու քով, կարծես կռուան մը կու տայ ենթադրութեան մը, որ այսօր ինչ ինչ գիտնականներէն կը պաշտպանուի, այսպէս գ. օր. Kretschmer (Der nationale Name der Armenier, էջ 3 = հայ թարգմ. ՀԱ 1933, էջ 429 յջ.), որ զՀայկ յոյն մատենագրութեան Χάοι ժողովրդեան անուան հետ կը նոյնացնէ եւ յենլով բեւեռագրերու Խայաշա անուան վրայ կը կարծէ թէ «Հայերն իրենց Հայք անունը նախահայկական եւ նաեւ նախախալդեան ժողովրդեան պարտական են»: Նաեւ Հ. Յ. Տաշեան Հայք յառաջ կը բերէ Հայաշայէն, որոնք «կը նստէին ոչ միայն ի Փոքր-Հայս, այլ նաեւ Մեծ Հայոց լեռնաշխարհի մէջ, գոնէ Արեւմտեան Հայաստան, ոչ միայն Գամրաց արշաւէ յառաջ, ոչ միայն յառաջ քան Ուրարտեանց տիրապետութիւնը, այլ նաեւ յառաջ քան տա հասարակ թրակեան-փռիւգական գաղթականութիւնը կէս ի Փոքր-Ասիա»: Հայաշա, ինչպէս Տուպէ (հայ.՝ Ծոփք) եւ Ալշէ (հայ.՝ Աղձնիք) եւս կազմած են հայ ազգին գլխաւոր զանգուածը: «Հայաշայէն եւս եւքը՝ հայ ազգը կազմելու նպաստած են արք աշխարհին Arman (Արմէնյ լճին շուրջը): Ասոնք Հայաստան մտած են՝ Մարաց արշաւանքի հետեւութեամբ: Անոր համար Արմանիա, Արմինիա եւն միայն անտղան արձանագրութեանց մէջ կ'երեւան. եւ Դարեհի ծանօթ արձանագրութեան մէջ տակաւին մնացած է Ուրաշտու (Ուրարտու) Բաբելական խմբագրութեան մէջ»: Հ. Յ. Տաշեան կը կարծէ թէ ուղիղ է Մարքուարտի այն գաղափարը՝ թէ Հայք-Արմէնք զինուորական գաղթականութիւն ըլլան, որոնք հոն բերած են «Մարք՝ աշխարհը

Յայնմ ժամանակի թագաւորեաց ի Բաբելոն սրտորդ հսկայ Բէլն Տիտանեան, ճոխն յաստուածացեալ, որոյ հպարտ դուրութեամբ եւ սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ: Եւ էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի: Որոյ արարեալ առ աչաւք կախարդութեամբ հնարս՝ եւ հրամանս թագաւորականս ամենայն ազգաց. եւ հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր, եւ ետ երկիր պագանել իբրեւ Աստուծոյ, եւ զոհս մատուցանել:

Եւ վաղվաղակի կատարէին ամենայն ազգքն զհրամանս նորա. բայց մի ոմն Հայկ անուն նահապետ ազգացն ոչ հնազանդեցաւ ի ծառայութիւն նորա, եւ ոչ կանգնէր ի տան իւրում զպատկեր նորա. եւ ոչ մեծարէր զնա աստուածաւրէն չքով:

Եւ էր անուն նորա Հայկ, ընդ որում ծնաւ արքայի Բէլայ ոխութիւն մեծ: Եւ զօրաժողով լինի Բէլ արքայ ի Բաբելոն եւ զիմէ գնայ ի վերայ Հայկայ սպանանել զնա:

---

պահելու համար: Այս Արման աշխարհի բնակչութիւնն անտարակոյս Երանեան էր. եւ ասով կը մեկնուի Երանեան լեզուի այն մեծ ազդեցութիւնը Հայերէնի վրայ. ասով կը մեկնուի թէ ինչո՞ւ Արմենիա պաշտօնական նոր յորջորջանքը Հայոց քով սովորական չեղաւ. քանի Հայք անկէ գերիշխող եղած են» (տե՛ս Հ. Յ. Տաշեան, Հաթեր եւ Արարատեանք, Վիեննա 1934. Յաւելուած): Այսպէս նաեւ Ա. Խաչատրեան (Պատմ. Հայոց, էջ 41 յծ.), որ նոյն իսկ «Հայաս–տան»ի անկէ հին եւ ուղիղ ձեւը կը համարէ Հայաս–տան կամ Խայաս–տան: «Հայաստան»ի աւարտը կը համարի լոկ փոխառութիւն մը Երանեան լեզուէն՝ Արշակունեաց ժամանակ:

Գայ հասանէ յերկիրն Արարադայ ի տունն՝ որ էր նոցա հայրենի՝ զոր շինեալն էր ի լեռնոտին. եւ Կադմոս փախստական գնաց ի Հարք առ հայր իւր ազդ առնել նմա. եւ ասէ. «Դիմեալ գայ Բէլ արքայ ի վերայ քո. եւ եկն եհաս մինչեւ ի տուն անդր. եւ ես կնաւ իմով եւ որդւովք ահաւասիկ կամ փախստական:

Առնու Հայկն զԱրամենակ եւ զԿադմոս զորդի իւր. եւ զորդիս նոցա եւ զորդիս եւ-թանեցունց դստերաց իւրոց, արս հսկայս եւ նուազունս թուով:

Եւ ի գլխի հարկանի Հայկն Բէլայ, եւ կամեցաւ ըմբռնել զնա Բէլ ի բուռն իւր: Ոչ եւս Հայկն յերեսաց նորա. եւ գնայր նա փախստական. եւ Բէլ զհետ նորա երթայր ընդդարձակ հանդերձ զինակրաւն իւրով:

Զտեղի կալաւ Հայկն եւ ասէ ցնա. «Զի՞ պնդեալ գաս զհետ իմ. դարձիր անդրէն ի տեղի քո՝ զի մի մեռանիցիս այսաւր ի ձե-ռաց իմոց. քանզի ոչ վրիպի նետ իմ իմիք»: Պատասխանի ետ Բէլ եւ ասէ. «Վասն այնո-րիկ՝ զի մի անկցիս ի ձեռս մանկանց իմոց եւ մեռանիցիս. այլ եկ ի ձեռս իմ, եւ կեաց ի տան իմում խաղաղութեամբ, ունելով ի գործս զմանկունս ի տան իմոյ գործականս»:

Պատասխանի ետ նմա Հայկն եւ ասէ. «Շուն ես դու եւ յերամակէ շանց՝ դու եւ ժողովուրդ քո: Եւ վասն այնորիկ թափեցից իսկ այսաւր ի քեզ զկապարճս իմ»: Եւ ար-քայն Տիտանեանն սպառազինեալ, եւ վառա-

հասեալ ի կուռ ապաստաղլինութիւն անձին իւրոյ:

Եւ Հայկն Աբեթոյն մերձենայր եւ ունէր ի ձեռին իւրում զաղեղն, որպէս հեծան հզաւր մայրափայտեայ: Եւ Հայկին ստեղի կալեալ պատրաստի ընդդէմ նորա աղեղամբ:

Եւ կանգնէ զկապարճն ի գետոյ ընդ ինքեան յաղեղն սկայաւրէն կամարին[144], եւ ընդ գիրկս մտեալ զաւրութեամբ հարկանէ նետիւ զտախտակս երկաթիս, եւ ընդ պղնձի վահանն ի թափ անցուցանէ ընդ մսեղէն ար-ձանն յերկիր խարսխեալ վարեալ նետն. եւ վաղվաղակի կործանեալ զաստուածակար-ծեալ հսկայն. եւ զաւրք նորա փախստական լինէին: Եւ նոքա զհետ մտեալ թափեցին ի նոցանէ երամակս ձիոց եւ ջորեաց եւ ուղ-տուց:

Եւ Հայկ դարձաւ ի տեղի իւր. եւ չոքաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ. եւ բնա-կեցաւ անդրէն ազգաւ իւրով մինչեւ ցայժմ: Եւ ի ժամանակի մահուան իւրոյ ետ զնա կա-լուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում, որդւոյ Արամանեկայ եղբաւր Հար-մայի»:

Այս տեղիքին մէջ կը գտնենք ինչ ինչ յենակէտներ: Պատերազմի դաշտը Վանայ լճին արեւմտեան կողմը պէտք է որ գտնուի,

---

144 Այսպէս բնագիրն, որ աղաւաղուած կ՚երեւայ. կարդալու է. «Եւ կանգնէ զկապարճն ի գետին եւ զնետն եդեալ յաղեղն սկայաւրէն կամարին»: Թէ ինչ տարբեր ձեւերով աղաւաղուած է տե՛ս Հ. Ն. Ակինեան, Սերիա, Վիեննա 1924:

որովհետեւ Վանայ լճին արեւմտեան ափին վրայ բարձրացող լեռնակատարը կ՚անուանուի «Ներրովթ լեռ»[145], եւ ըստ հայկական զրոյցին Բէլ ճակատին մէջ իյնալէն ետքը հոն թաղուած է: Աւելի կը հետեւի թէ Արարատ երկիրը Նիմրուդ-Դաղի հարաւակողմը գտնուելու է, որովհետեւ Բէլ Արարատ երկիրին տիրելէն ետքն է որ Հայկ իւր զօրականով կը փութայ երկիրը կրկին ետ գրաւել, սակայն մեծագոյն ուժի առջեւ կը ստիպուի կռնակ դարձնել եւ փախչիլ դէպի հիւսիս մինչեւ որ Նիմրուդ-Դաղի քով ճակատի կը բռնուին: Այս նկարագրութեան համաձայն կը հասնինք Թեմանին կամ Փաւստոսի եւ ընդհանրապէս հայ մատենագրութեան Կորդուաց գաւառը: Հետաքրքրական է գիտել, որ Մարաբաս Հայկի թոռն, որուն ան Արարատ երկրին առաջին հանդրուանն իբր ժառանգութիւն կը տայ, Կադմոս կ՚անուանէ: Այս անունը հեղինակն ինքը կազմած է ասոր. qadmo կամ qadmojo = «առաջին» բառին վրայէն եւ այն երկիրն իբր հայկ. ամենահին աշխարհամասը (հարաւէն հաշուելով) կը յիշատակէ: Այս կարծիքը բոլորովին համապատասխան է հայկ. աւանդութեան, որուն համաձայն Հայկ աշտարակաշինութենէն ետքը Բաբելոնէն պաղթած է եղեր եւ Կորդուք (Քարդու) Հայաստանի ամէնէն հարաւային

145 Համմ. տաճկ. նաեւ «Նիմրուդ-Դաղ». տարակոյս չի վերցներ որ հայ մատենագրութեան «Բէլ»ը նոյն է Աստուածաշունչի (Ծն. Ժ., 8 յջ.) «Նեբրովթ»ի հետ:

*նահանգն էր։ Ըստ այսմ Կոգմոս թէեւ ոչ լեզուականօրէն, բայց տարրկայօրէն Կորդուքի (Բէթ Քարդու) վերադիր մըն է*[146]*։ Ուրեմն ըսուածներէն կը տեսնուի որ Ե.— Ժ. դարու հայ մատենագրութիւնն աւելի եկեղեցւոյն հետ Կորդուաց լեռն իբր տապանակիր լեռ կը ճանչնայ եւ Մասիսի մասին իբր այսպիսի բան չի գիտեր։ Եթէ սակայն վերջէն Մասիսն իբր տապանակիր լեռ մէջ տեղ կ'ելլէ, ասիկա կարելի է մեկնել հնչականութեան փոփոխմամբ, որով* Այրարատն Արարատ *եղաւ։ Թէ՛ գաւառական հայերէնի* այն *ինչ ինչ գաւառաբարբառներուն մէջ* ա *կամ* է *դարձած է, ունինք բաւական թուով օրինակներ, գ. օր.* մայր = մար *կամ* մէր, հայր = հար *կամ* հէր։ *Այս կերպով անգամ մը* Այրարատ *աստուածաշնչեան* Արարադ(տ)*ի արտասանութիւնն առանալէն ետքը Մասիսի աւանդութիւնը կարծես ինքն իրմէ երեւան ելած ըլլար, մանաւանդ որ Աստուածաշունչի մէջ Արարատ միշտ Հայաստանի հետ աղերսի մէջ կը դրուի, իսկ սար ամէնէն բարձր ու հռչակաւոր լեռն էր Մասիս, ըստ այսմ տապանը պէտք է որ սար վրայ կեցած ըլլայ*[147]*։ Երբ այս միաժամանակ* Նախճաւանը Նախիջեւան *եղաւ եւ իբր առաջին իջեւան մեկնուեցաւ, յայտնի է որ տապանի իջեւանի հետ յարաբերութեան մէջ պիտի դրուէր, որ արդէն Մասիսի վրայ փոխադրուած էր, այնպէս*

---

[146] *Հմմտ.* J. Marquart, Südarmenien usw.։ *ՀԱ* 28 (1914), *էջ* 181 = *Արտատպ.* 218։

[147] *Հմմտ. Մուրատ, անդ, էջ* 92։

որ տրուէն վրայ եւ ստուգաբանութիւն իրարու նեցուկ կրնային ըլլալ:

Ինչ որ ալ ըլլայ Ջրհեղեղի հայկ. աւանդութեան մը հետքը կարելի չէ գտնել եւ հնարաւորութիւնը չկայ Նախիջաւան (եւ նոյն իսկ Նախջաւան) իբր ἀποβατήριον[148] մեկնել: Իսկ Յովսէփոս, որուն համաձայն տապանը Հայաստանի մէջ լեռան մը կատարը կեցած է, ո՛չ Արարատ նուանէ, ո՛չ Մասիս լեռան եւ ոչ ալ Ναξουάνα քաղաքին մասին կը խօսի, եւ անոր կարծիքը թէ հայերը տեղ մը, որ Ջրհեղեղի աւանդութեան հետ աղերս ունի, ἀποβατήριον անուանած են, «կարելի չէ վստահելի համարել: Անիկա իր աղբիւրը չի յիշատակեր եւ մենք պատճառ չունինք ատոնց այլեւայլի լաւ համարել, եթէ նոյն իսկ հայկական եղած ըլլայ: Որովհետեւ նոյն իսկ հայ մը կրնար անոր հայկական տեղւոյ մ'անուան մասին սխալ տեղեկութիւն տալ եւ իրապէս ալ ըրած է, եթէ Նախիջաւանին իբրեւ «իջեւան» եւ այն մեկնած է[149]»: Գուցէ Յովսէփոս ἀποβατήριον բառով կը հասկնար Կորդուաց աշխարհին մէջ կամ Մանազկերտի քովերը տեղ մը համաձայն Նիկողայոս Դամասկացւոյն տեղիքին:

[148] Թերեւս կարելի ըլլայ Արարատի մէջ գտնուող Իջաւանի գիւղին անունը (Ինճիճեան, Վենետ. 1858, էջ 139. Մուրատ, անդ, էջ 63) դպոպէս մեկնել. սակայն գիւղը կը գտնուի Վանանդ գաւառին մէջ, բաս այսպէս շատ հեռու է Մասիսէն եւ Ջրհեղեղի աւանդութեան հետ բնաւ կապ չունի (հմմտ. Hübschmann, անդ, էջ 79. ծնթ.):

[149] Hübschmann, անդ, էջ 79:

կել եւ Ուրարտու կարդալ: Հաւանաբար միայն անոր համար, որպէս զի hare Araratէն (Ծն. Ը, 4) տարբեր ըլլայ[151]»: Այս հարցման կը պատասխանէ Շանդա. «Նախ եւ առաջ Թ. դարուն Ասուրնասիրպալի քով Ուրարտու եւ Արարդի կրկէն անուններն երեւան կու գան...: Երբ միեւնոյն Թագաւորն Արարդի եւ Ուրարտու (Ուրարտի) երկու անուն կը յիշատակէ, պատճառը կրնայ ըլլալ միայն որ ասորեստանցիներն երկու տարբեր անուն լսած եւ իրենց ասորեկոյական ձայնական արժէքին համաձայն տարբեր կերպ տառադարձած են: Ինչ որ ասորեստանցիներն ըրած են, նոյնը կատարած են նաեւ հին եբրայեցիներն Արարատի ձայնաւորման (Vokalisation) նկատմամբ, զէթ այն ժամանակ, երբ Թագաւորաց գրքերը ծագում առին»[152]: Եթէ Շանդայի այս տեսութիւնն ընդունէինք, Ս. Գրքի մէջ բառական յատուկ անուններ կամ օտար բառեր կրնայինք սրբագրել: Թէեւ բոլորովին համամիտ Շանդայի թէ քննադատութենէ պէտք չէ խուսափել «աւանդապաշտութեան» սիրոյն համար, որ անտարակոյս «ստակուին կուռն չի կրնար համարուիլ կարծիքի մ'ուղիղ ըլլալուն եւ միայն յաճախ իբրեւ վահան կրնայ ծառայել, որուն ետեւ անքննադատութիւնն ու պաշտպանողներու ապրասութիւնն անհոգ կը ծածկուին[153]», սա-

---

[151] Joh. Döller, BZ, 1903, էջ 350:
[152] BZ, 1904, էջ 118:
[153] Sanda, BZ, 1904, էջ 115:

կայն ստեղծած ենք բանել, մարդ պէտք չէ միւս ծայրահեղութեան՝ ընդհանրութեան մէջ իյնայ, եւ միշտ Ա. Գիւբբ յետագայեալ միայն բնաւորութեան վրայ երթալ։ Որով-հետեւ ասոնց նկատի առնելու որ շատ ա-նուններ տառադարձելու ժամանակ ամէն լեզուի մէջ կամայականութիւններ ու պա-տահականութիւններ կրնան տեղի ունենալ, որ. ուրարտական անունները տառադարձելու ժամանակ ասորական արձանագրութեանց մէջ ոչ միայն յաճախակի ուրարտական ձեւէն շեղումներ երեւան կու գան, այսպէս՝ ու-րարտ. Տուշպա (Վան-Տոսպ), ասոր. Տու-րուշպա, ուրարտ. Իշպուինիս, ասոր. Ուշ-պինա [154], այլ նաեւ ասոր. արձանագրու-թեանց մէջ ուրարտ. Ռուսա արքայական անուան երկու տարբերակներու կը պատա-հինք, այսինքն թէ՛ Ուր-սա-ա թէ՛ Ռու-սա-ա [155], որոնք խառն կերպով կը գործա-ծուին, սակայն Ուր-սա-ան աւելի առօրա-կան ձեւն է [156]։ Այս միեւնոյն երեւոյթը կը

---

[154] Շամշի-Ադադ, սիւն. Բ., 26 = KB (Keilinschriftliche Bibliothek), I, էջ 178։

[155] Ռու-սա-ա՝ Սարգոն, Տարեգ. 58, 75 = Keilschrifttexte Sargons I, էջ 12. 16։ Ուր-սա-ա՝ Սարգոն, Տարեգ. 40, 52 = Keilschrifttexte Sargons I, էջ 8, 10 եւն։

[156] Տե՛ս C. F. Lehmann, ZA (Zeitschrift für Assyriologie) 12 (1897), էջ 119 յջր.։ Համմ. գար-ձեալ ուրարտ. Սարդուրիս՝ Սի-դու-րի (Սալմանա-սար Բ., Նիմրուդի Կոթողին Տարեգ., 144 = KB I, էջ 144) կամ Սա-ար-դու-ու-ր[ի] (Տիգլաթպալասար Գ., Նիմրուդի Տախտակին արձանագր., 20 = KB II, էջ 6) կամ Սար-դու-րի (Ասուրբ. Ռասսամի Գլանին Տարեգ., սիւն. Ժ., 40. 43 = KB II, էջ 230)։

կրկնուի նմանապէս ուրիշ ազգերու անուն-ները տառադարձելու ժամանակ, այսպէս *Menasê* կամ *Minsê* (Ս. Գրքի Մանասէ)[157], *Aribi* կամ *Arubu*[158] եւն: Ի՞նչ պէտք է ըսել ասորեստանցւոց իսկ תַּרְתָּן (*tharthan*) բառին, Եօթան. Θαρθὰν (Դ. Թագ. ԺԸ, 17. Հայերէն հակառակ բոլոր բնագիրներուն «Թարթան» թարգմանուած է), որ կը նշանակէ սպարապետ, բարձրագոյն հրամանատար ասորեստ. բանակին: Պէտք է արդեօք Թուր-թա՞ն ստուգել: Ո՛չ. որովհետեւ Դելիչ[159] *tartânu* ձեւէն զատ *tartânu* ալ ունի: Ասորեստանցիներէն զատ այս միեւոյն երեւոյթը կը տեսնենք նաեւ Բողազքէօյի արձանագրութեանց մէջ, ուր Ս. Գրքի Թոգարման Թելիպինուսի մէկ արձանագրութեան մէջ[160] Թա-գա-րա-մա կամ Թե-գա-րա-ամ-մա[161] ձեւերով երեւան կու գայ: Յառաջ բերուած օրինակներէն յայտնի կը տեսնուի որ ոչ թէ միայն մեծ սխալ մըն է Արարատն Ուրարտու ստուգել ուզելն, այլ հակառակէն նկատելով ձայնական համաձայնութիւնն Արարա(տ)ի եւ Ուրարտուի միջեւ մարդ կը փոր-

---

[157] Տե՛ս M. Streck, Assurbanipal, հատ. Գ., էջ 706:

[158] Անդ, էջ 772:

[159] Friedr. Delitzsch, Assyr. Handwörterbuch, Leipzig 1896:

[160] Keilschrifttexte aus Boghazköi III, I, 1, 38. տող տառադարձութիւնն ու թարգմանութիւնը տե՛ս Hrozný, Boghazköi-Studien III, 90 էջը:

[161] Keilschrifttexte aus Boghazköi, 19, 20, 21 եւն:

ձուի զայն վերջնոյս երկրորդական ձեւը համարիլ: Եթէ սովորական ձեւէն կը շեղի այն ալ բառասկիզբն է, որ յառաջ բերուած օրինակներով դիւրաւ մեկնելի է, իսկ բառավերջը բնաւ հարկ չկայ նկատի առնել, որովհետեւ ասորեստանցւոց, ինչպէս բոլոր սեմական լեզուներուն մէջ բառավերջը շատ կամայական է, այսպէս ճիշդ Հայաստանի համար ունինք չորս ձեւեր. mâtu Ur-ar-ṭi կամ Ú-ra-ar-ṭi, mâta Ur-ar-ṭa եւ ինչպէս սովորաբար mâtu Ur-ar-ṭu[162] եւ Սաղմ. Բ.ի քով Ար–րա–մի եւ Ար–րա–մու[163]: Այս երկու անուններն իրարու այնչափ նման, դրեթէ նոյնաձայն կը հնչեն որ ըստ ինքեան զարմանալի կը թուի թէ ինչպէս այս համաձայնութիւնը Շանդայի պէս մասնագէտի մ՚անդրադարձութենէն կրնար վրիպիլ: Թէ իրապէս այս երկու անուններն իրարու հետ կապ ունին, անոնց աշխարհագրական դիրքը միայն պիտի կարենայ որոշել:

Արարդի լեռը մէկ անգամ միայն բեւեռագրերու մէջ կը յիշատակուի, եւ այն Սալմանասարի տարեգրութեանց մէջ[164], ուր 884ին Թումմէյի դէմ (Ռովանդուզի կողմերը) անկէ ալ յառաջ Կիրրուրի (ըստ Շանդայի նաեւ Ուրմիա լճին կողմերն եւ անկէ արեւմուտք) կ՚արշաւէ: Հոս ի մէջ այլոց խուբուշկիայէն հարկ կը ստանայ: խուլունի անց-

162 Հմմտ. M. Streck, Assurbanipal, III, 814:
163 Մենաքար, Բ., 48 = KB I, էջ 164:
164 Սիւնակ Ա., 61 = KB I, էջ 62:

քով կը յառաջանայ մինչեւ Խալխի[165] եւ կը նուաճէ Խալխի երկրին Խաբու, Խաթարու, Նիշտուն, Իբբիդի, Միդկիա, Արզանիա, Թեյա, Խալուա — քաղաքները, որոնք Ուսու, Արուա եւ Ա-րա-ար-դի՝ հսկայ լեռներուն (šadâni dannute) միջեւ կը գտնուին: Բեւեռագրերու դի նշանն, ինչպէս արդէն Շանդա կը գրէ, Ասուրնասիրպալ սիրով տի նշանին փոխարէն կը գործածէ. ըստ այսմ կրնանք իրաւամբ նաեւ Արարատի տառադարձել:

Հիմայ փորձենք նախ եւ առաջ այս Արարդի լերան (կամ լեռնաշղթային) դիրքը ըստ կարելւոյն ճշդել: Ըստ բեւեռագրին (Տարեգ. I, 59 յջք.) յիշեալ քաղաքները Խալխիի մէջ կը գտնուին: Բայց որովհետեւ Խալխա, ինչպէս Շանդա ալ կ'ընդունի, աշխարհագրական շատ ընդարձակ գաւառ մըն է, որ Վանայ լճին հարաւէն մինչեւ Եփրատի արեւմտեան եզերքն գտնուող ամբողջ երկիրը կը պարփակէ, այս պատճառով ուրիշ բան չի նշեր, բայց եթէ այս երկարաձիգ աշխար-

---

165 Թէեւ Շանդա հոս եւ յաջորդ տողերուն մէջ միշտ Կիրխի կը գրէ, ինչպէս մինչեւ վերջերս միակ ստորագրական ձեւն էր, սակայն հակառակ մեր գերմաներէն սկզբնագրին Խալխի ընթերցումը նախընտրեցինք հետեւելով E. Forrerի առաջարկութեան (Real-Lexikon für Assyriologie I, էջ 281), որ հետզհետէ ընդունելի դարձաւ: Նոյն իսկ E. Weidner, որ (AfOF = Archiv für Orientforschung VI, էջ 224) առաջ հակառակ եղած էր քանի մը տարի ետքն (AfOF X, էջ 20, ծնթ. 135) յետոյ կոչեց: Խալխի աշխարհին հետ նոյն է Խալխա, որ ծանօթ էր ասորեստանցւոց արքունիքին մատակարարած իր աշխարհներով. երկիրս կը տարածուէր Տիգրիսի եւ Վանայ լճին միջեւ դէպի արեւմուտք մինչեւ Դիարբեքիր:

համալին մէջ գտնել կէտ մը, ուր վերյիշեալ ութ քաղաքներն եւ Արտաղի լեռը կարելի ըլլայ զետեղել: Հոն Ծանդա (անդ, էջ 18 յջր.) աշխարհագրական երկու հնարաւորութիւն կ՚ընդունի:

883ի արշաւանքի տեղեկագրին մէջ Ասուրնասիրպալ (Տար. 1, 112 յջր.) կը յիշէ Թելա քաղաք մը Նիրբու երկրին մէջ: Այս երկիրը, զոր Ծանդա վերին Տիգրիսի աւազանին կողմը (հիւսիս-հարաւ ընթացքով) արեւմեան Արգանա քաղաքին հարաւային կողմը կը փնտռէ, «կը տարածուէր դէպի հարաւ գրեթէ մինչեւ Դիարբեքիրի աշխարհագրական լայնութեան կամ թերեւս դեռ անկէ անդին: Ըստ այսմ հոն տեղ մը զետեղելու է նաեւ Նիրբուի մէջ գտնուող Թելա քաղաքը»:

Տարեգիրք 3, 104 Ասուրնասիրպալ կը յիշէ Բարզա-Նիշտան քաղաք մը: Հիւսիսէն հարաւ արշաւելով Թուշխայէն այս քաղաքի առջեւէն անցնելով կը հասնի Դամդամմուսա եւ աւելի յառաջ Ամիդ-Դիարբեքիր: Դամդամմուսա Ծանդա կը զետեղէ Ամիդի հիւսիսային կողմը եւ ասոր հետեւանքով Բարզա-Նիշտան դեռ աւելի հիւսիս՝ Տիգրիսի աւազանին եզերքը կամ գուցէ Արգանայէն դէպի Դիարբեքիր տանող ճամբուն վրայ փնտռելու է: «Եթէ ութ քաղաքներուն մէջ յիշուած Նիշտան իբր համառօտութիւն Բարզա-Նիշտանի համարել կարենանք», կ՚ըսէ Ծանդա, «այն ժամանակ խնդրական վայրերէն երկրորդ մըն ալ որոշ ստուգութեամբ զետեղած

կ՚ըլլանք։ Այս պարագային Նիշտուն Թելայի հիւսիսային կողմը ըլլալու է եւ անկէ ոչ շատ հեռու»։

Այս ենթադրութեան երրորդ կռուան մը կը գտնէ Շանդա Պեստինգերեան տախտակին մէջ, որ (11, 3) այն կողմերը՝ Դիարբեքիրի հիւսիսային կողմը եւ Տիգրիսի արեւմտեան եզերքէն քիչ մը հեռու կը նշանակէ Արսինիա մը[166]։ «Յայտնի է որ ասիկա հին Արսանիան է, որ արդէն բաւական յաճախ Խաբխի երկրին մէջ կը յիշուի։ Ռիտտէր[167] այս Արսինիան Արղանայի հետ նոյնացուց։ Բայց որովհետեւ Արղանային բեւեռագրերու Արքանիան կը համապատասխանէ, կարելի չէ անուններու պատահական նոյնահնչութեան դիմել։ Սակայն ամէն պարագային այս Արսանիան Արղանայէն հեռու չէր»։

Հատարու քաղաքը Շանդա կ՚ուզէ «ի հարկին» նոյնացնել Եփրատի արեւելեան եզերքը գտնուող Հազրոյի հետ։ Արուա լեռը Հոմմէյին հետ Միւղիշ երկրին «շատ Արուման» կը համարի։ Մնացածը չի կրնար որոշել։ «Աշխարհագրական այս ենթադրութեան համաձայն Արարդի պէտք ըլլայ Եփրատի եւ վերին Տիգրիսի մէջտեղը տարածուող լեռնաշխարհին մէկ մասը, գուցէ 1850 մ. բարձր Քարաջա-Դաղին հիւսիսային փոքրիկ գօտին»։

---

[166] Քարտէսի վրայ կայանները նշանակուած են արեւելքէն արեւմուտք ուղղութեամբ. ad Tigrem, Coissa, Arsinia եւն։

[167] Ritter, Erdkunde II, 17։

Սակայն առանց նկատի առնելու, որ Նիշտուն-Բարզա-Նիշտունի նոյնացումը խնդրական է, ինչպէս արդէն ինքնին Շանդա ստիպուած է դիտել, այս ենթադրութեան դէմ կ'ելլեն երկու ծանր պատճառներ. նախ Տաբերգրքին միեւնոյն տեղիքը (I, 62 յջք.) կը յիշէ Նիշտունի մէջ կուսակալ (փոխ-կուսակալ?) մը Բուբու անունով, որ Աշուրնասիրպալի առաջին արշաւանքի ժամանակ 884ին պաշտօնանկ եւ ապա Արբելայի մէջ մորթազերծ կ'ըլլայ: Արդ ինչպէս տեսանք, Բարզա-Նիշտուն Դամդամմուսայի քովերը կը գտնուէր: Սակայն այս վերջին քաղաքին մէջ կը նստէր հին ժամանակէն ի վեր ասորեստանցի կուսակալ մը՝ իբր գլուխ Սաղմանասար Ա.էն հոն հաստատուած ասորեստանեան գաղութին: Այսպիսի կուսակալ մըն էր Հուլայի, որ 883ին կ'ապստամբի, սակայն Թալաւուրն վրայ հասնելով Քինաբուի մէջ (Դամդամմուսայի հիւսիսային կողմը) գերի կը բռնուի եւ մորթազերծ կ'ըլլայ (Տար. I, 102—110): Արդ եթէ 884ի արշաւի պատմուածքին մէջ յիշուած ութ քաղաքներն իրապէս վերին Տիգրիսի կողմերը կը գտնուէին եւ Նիշտունը նոյն է Բարզա-Նիշտունի հետ, այն ժամանակ բոլորովին անըմբռնելի կը մնայ թէ՝ ինչպէս Աշուրնասիրպալ 883ին բնաւ յիշատակութիւն չ'ըներ՝ թէ ինքն արդէն հերուն միեւնոյն տեղը գործք ունեցած է: Մէկ տարուան միջոցին սոսկ միեւնոյն երկիրն երկու անգամ ապստամբած պիտի ըլլայ եւ սոսկ-

Հետեւ ասորեստանցիները կրկին ապստամբողներու դէմ մասնաւորապէս անգթօրէն կը վարուէին, ապահովապէս Ասուրնասիրպալ 883ի տեղեկագրին մէջ այս մասին դէթ խօսք մ'ըրած պիտի ըլլար, թէ ինքն որչափ իրաւունք ունէր սովորական անգթութեանց դիմելու, երբ գաւառ մը կրկին անգամ գլուխ կը վերցնէր: Դարձեալ պէտք է միտ դնել որ այս պարագային տարօրինակ կերպով երկու այսպէս մօտաւոր տեղեր (Նիշտուն-Բարդա-Նիշտուն եւ Դամդամմուսա) ասորեստանցի կուսակալներ նստած պիտի ըլլան, որ հարելի չէ ենթադրել:

Երկրորդ՝ ուրիշ աւելի ծանր պատճառի մը համար այն ութ քաղաքներն Եփրատի եւ վերին Տիգրիսի մէջտեղը դետեղելը մերժելի է: Ասուրնասիրպալ ասոր հայոց տեղեկագրին մէջ (Տար. I, 68 յջք.) կ'ըսէ՝ «Կիրրուրիէն ելայ, Հուլունի անցքով մտայ միւս կողմը գտնուող Խարխի երկիրը, Հաթու, Հաթարու եւն»: Եթէ ութ քաղաքներու դետեղումը ճիշդ ըլլար, այն ժամանակ Ասուրնասիրպալ լռած պիտի ըլլայ Խարխի մէջէն կատարած արշաւի մասին, զոր ստիպուած էր կտրել ամբողջ երկարութեամբ արեւելքէն (Վանայ լճին հարաւային կողմը) դէպի արեւմուտք եւ միայն իր արշաւին վերջին հանգրուանի մասին բան մը պիտի կարենար պատմել: Ճիշդ է որ տարեգրոց Նախորդ մասին մէջ Խուբուշկիայի մէջէն կատարած արշաւի մասին լռութեամբ կ'անցնի, սակայն

ոյսպխի մեծ ոստում մը դէպի արեւմուտք մինչեւ Արդանոյի հարաւային կողմը հակառակ է ասորեստանցւոց տարեգրքերուն սովորութեան եւ վերոյիշեալ բնագրին ոճին եւս չի համապատասխաներ: Այս երկու պատճառներն ալ կը ստիպեն զՇանդա, վերը յառաջ բերուած աշխարհագրական համադրութիւնը լքելու եւ հետեւեալ եզրակացութեամբ շատանալու. «Այն ութ քաղաքներով երկիրը Ծարխեի արեւելեան մասին մէջ տեղ մը կը գտնուէր, գուցէ Վանայ լճին հարաւային կամ հարաւ-արեւմտեան կողմը, այնպէս որ Ասուրնասիրպալ Հուլուն-անցքի կարճ չուէ մ'ետքը խնդրոյ նիւթ եղող տեղը կրնար հասնիլ»:

Այս եզրակացութեան ուղիղ ըլլալուն ապացոյցը կը գտնէ այն հնարաւորութեան մէջ, որ ութ քաղաքներուն երկրը կարելի է «հաւանական կերպով Վանայ լճին հարաւ-արեւմտեան կողմը» զետեղել: Թելան կը նոյնացնէ Թիլլի հետ, որ կը գտնուի արեւելեան Տիգրիսի արեւմտեան ճիւղին հետ խառնման տեղը: Արսանիան է անոր համաձայն Արզն (Շէյխ Իւնուս), աւերակ մը՝ Եզիդխանէի գետափը՝ Թիլլի հիւսիս-արեւմտեան կողմը: Մխակկիա անունը հետեւելով Բելքին կ'ուզէ տեսնել Մոզիկանի՝ Բաղէշի արեւմտեան եւ հարաւ-արեւմտեան կողմը գտնուող գաւառին անուան մէջ: Ըստ այսմ խնդրոյ նիւթ եղող երկրին դիրքը «մերձաւորապէս» կ'որոշէ. «Կը տարածուէր Տիգրիսի.

եղերքը գտնուող այսօրուան Թիլէն հիւսիսային ուղղութեամբ մինչեւ Մոզիկան, այս է մինչեւ Բիթլիս-Չայի ակնաղբիւրն եւ կը պարունակէ արեւմտեան Տիգրիսի եւ Բիթլիս-Չայի գետեզերքները, ինչպէս նաեւ այս լեռնային աշխարհամասին արեւմտեան կողմը տարածուած ցած բլրաշխարհը (հոն են Արզնի աւերակները): Այս սահմանագծումը բաւականաչափ համապատասխանելու է այն պատկերին, զոր ութ բերդերը պարունակող լեռնային երկրի մը մասին ստիպուեցանք կազմել»:

Ուսու, Արուա եւ Արարդի իբրեւ «շաղանի ղաննութէ», հակայ լեռները Շանդա կը զետեղէ Բիթլիս-Չայի արեւելեան կողմը բարձրագոյն լեռնաշխարհին մէջ՝ Սղերթին կողմերը՝ մինչեւ Թիլ եւ Տիգրիս հասնող Ջեբել-Ջուդիի փոքրիկ գօտին: Բայց որովհետեւ կարելի չէ որոշել թէ այս ութ քաղաքներն եւ երեք լեռները թուելու ժամանակ աշխարհագրական որոշ կարգ մը նկատի առնուած է թէ ոչ, Արարդի աշխարհագրականօրէն զետեղելու համար երկու հնարաւորութիւն աչքի առջեւ ունի, այսինքն եթէ երեք լեռներու անուանց շարքը հիւսիսէն հարաւ ընդունինք, «այն ժամանակ Արարդի-Արարատ հարաւակողմն իյնալու է եւ Թիլի արեւելեան կողմը գտնուող Ջիբել-Ջուդիի վերջին փոքր գօտին ներկայացնելու է: Կրնայ սակայն նաեւ Տիգրիսէն աւելի հիւսիս կամ դեռ աւելի վեր

Բիթլիս-Չայի բով փնտռուիլ[168]»: Վերջին են-
թադրութիւնը մեզի աւելի հաւանական կը
թուի: Բնական է որ քանի մը անուններու
համադրութեան վրայ հիմնուած այս դետե-
ղումը բոլորովին ստոյգ չէ: Արսանիա եւ
Թելա անուններ են, որոնք մէկէ աւելի եղած
ըլլալու են: Առաջնոյն նկատմամբ Շանդու
ինքն ալ կ'ընդունի. երկրորդին «բլուր»
նշանակութենէն կրնանք մենք նոյնը եզրա-
կացնել. եւ իրապէս երկրորդ Թիլ մը կը
նշանակէ Լինչի Հօյատտնի քարտէսն եւ
այն Մշոյ արեւելեան կողմը: Մի թէ մեր Արա-
ծանին (Մուրադ-սու), որ բեւեռագրերու մէջ
ալ Arzania կամ Arsania[169] կ'անուանուի
այս Արսանիան չի՞ յիշեցներ: Արարդին դե-
տեղելու համար պէտք չենք գլխաւորաբար
պարագայ մ'անտեսել եւ այս է չուին ճամ-
բան: Ասուրնասիրպալ իր արշաւը կը կա-
տարէ կամ Կիրրուրին դէպի Խարխի Արեւե-
լեան Տիգրիսի (Բոհթան-սուի) երկարու-
թեամբ եւ կամ անկէ աւելի հարաւ: Վերջին
պարագային այս գետը երկու անգամ անցնե-
լու պիտի ստիպուէր, զոր Ասուրնասիրպալ
ասորեստանցի թագաւորներուն քով տիրող
ընդհանուր սովորութեան համաձայն պէտք է
որ անպատճառ յիշէր արշաւին անբացատրելի
դժուարութիւնը չեշտելու համար, որ ճիշդ

---

[168] Ընդգծումը իմս է:

[169] Հմմտ. Սալմանասար Բ., կոթող, 143 = KB I, էջ 144. Մենուաս, արձ. Բ., 45 - KB I, էջ 164:

այս թագաւորներու պարծենկոտութեան ա-
մենէն աւելի համաձայն պիտի ըլլար։ Բայց
այժմ հաւանական է որ Բաղէշի քովերը գըտ-
նուող անցքի մը մէջէն Խարխի մտած է [170],
եւ այն ժամանակ այն երեք լեռները Հայկա-
կան Տաւրոսի լեռնաշղթային մէջ մինչեւ Բա-
ղէշ փնտռելու է։ Որովհետեւ շատ հաւանա-
կան է որ Խարխի գրեթէ մինչեւ Հայկական
Տաւրոս կը տարածուէր [171]։

Արդ այս խնդրական հարցին շուրջ մեր
կարծիքով պայծառ լոյս կը սփռէ Սաղմա-
նասար Ա.ի (իբր 1270ին) [172] մէկ արձանա-
գրութիւնն, որուն հ. 27 հետեւեալ բնա-
գիրն ունի. «*i-na šur-ru šangû-ti-ia* ^māt^ *u-ru-*

---

170 Կը թուի թէ Աշուրնասիրպալ ու Տիգլաթ-պիլեսեր Ա.ի պէս (Հատուածակամանց արձանագր. Դ., 49 յջր.) մինչեւ Բաղէշ նոյն ճամբան բռնած է։ Եթէ ուրիշ քաղաքներն Արածանի–Արսանիայէն դէպի հարաւ փնտռել ուզենք, այն ժամանակ Աշուրնասիր-պալ ու ինչպէս Տիգլաթպիլեսեր դէպի հիւսիս, այլապէս դէպի հարաւ կամ արեւմուտք արշաւած պիտի ըլլայ։ Տիգլաթպիլեսերի այս արշաւի մասին տե՛ս Schrader, Zur Geographie des assyr. Reiches, 1890, էջ 328, ծնթ. 1. Streck, ZA 13 (1898), էջ 69 յջ.։

171 Նաեւ Շրադէր (անդ, 328, ծնթ. 1) Խարխի այսպէս սահմանագծել կը թուի. երբ 16 լեռները («հսկայ լեռները»), զորոնք Տիգլաթպիլեսեր Ա. անցաւ, Նաիրիի սահմանը մտնելու համար (Հատուածակ. Դ., 58—70, 71) «Եփրատի ձախ ափն, այսինքն Արածանի-Արսանիայի հարաւակողմն, բայց այժմ էապէս Խարխի սահմանին, այսօրուան Քուրդեստանի մէջ, Տիգրիսի ձախ եւ հիւսիսային կողմը, Տիգրիսի եւ Մուրատի մէջ-տեղ» կը փնտռէ։ Այս կարծիքին կը հետեւի Streck, ZA 13 (1898), էջ 101 = հայեր. թարգմ.։

172 KAH = Keilschrifttexte aus Assur histor. Inhalts, I, թ. 14 (էջ 18—25)։ Տառադարձութիւն եւ թարգմանութիւն E. Weidnerէ AOB = Altorientalische Bibliothek, էջ 112։

at-ri»[173], այսինքն «ի սկզբան թագաւորութեան իմոյ անկան Ուրուատրի աշխարհք»: Թէև Ուրուատ(դ, թ)րի-աշխարհներու (B: Urat[d, t]ri-աշխարհներ) մասին իրարու բոլորովին հակառակ կարծիքներ յայտնուած են, սակայն և այնպէս աւելի հաւանական կը թուի E. Weidnerի Altorientalische Bibliothekի այս մասին հրատարակչին ենթադրութիւնը[174] թէ Ուրուատ(դ, թ)րին յետագայի Ուրարտուին «Հայաստանի» հետ նոյնացնելու է: Ուրուատ(դ, թ)րի կը յիշուի դարձեալ Տիգլաթպիլեսեր Ա.-ին[175] մէկ յաջորդին արձանագրութեան մէջ [m]ât maš(?)-gu-unի և mât miel-d[i(?)...]ի կից: Ադադնիրարի կը տեղեկացնէ[176] թէ սարերին Զարէն Լուլումէ, Խաբխի և Զամուա երկիրները մինչև Նամրի երկրին անցքերը կոտրեց և ընդարձակ Կումմանի-երկիրը մինչև mât me-iḫ-ri mât sa-lu-a-ù mât ú-rat[d, t]-ri նուաճեց: Իսկ որովհետև Կումմանի մարդիկ Կապպադովկիա՝ Տաւրոսի հիւսիսակողմը բնակած են և հոն ալ Մեհրի երկիրը փնտռելու է[177], այն ժամա-

---

[173] B: u-rat-ri.

[174] Համմ. Memnon VI, էջ 195. դարձեալ AOB, էջ 113, ծնթ. 9, ուսկից առնուած են Ուրուատրիի մասին եղած հետեւեալ ծանօթութիւնները. Նմանապէս Luckenbill, AJSL = American Journal of Semitic Languages and Literatures, XXVIII, էջ 186:

[175] KAH = Keilschrifttexte aus Assur histor. Inhalts, II, 74, 12:

[176] KAH II, 84, տող. 23—25:

[177] Տե՛ս H. Winckler, AOF = Altorientalische Forschungen, III, էջ 323 յշ.: — Fér Mehri հմմ. K, 2806, տող. 13 (L. W. King, AKA = Annals of

*նակ Ուր(ու)ատ(դ, թ)րին ալ Կումմանի երկրին արեւելեան կողմը պէտք է փնտռել: Երկու երկիրներու սահմաններն ալ Եփրատի ծոցին կողմերը՝ Խարբերդի քով դիրար շօշափելու են: Ամէնէն կարեւորն է սակայն մեր բնագրին սիւն.* III, 18 *յջք. տեղիքն, որուն համաձայն Սաղմանասար Ա. փախչող* Kutî *մարդիկը մինչեւ Ուրուատ(դ, թ)րի աշխարհին սահմանները կը հալածէ: Կուտի աշխարհն Ասորեստանի հիւսիսային կամ հիւսիս-արեւելակողմը կը գտնուի*[178]*: Այն ժամանակ Ուրուատ(դ, թ)րի իւր հիւսիսային սահմանակից դըրացին ըլլալու է, ըստ այսմ Վանայ լճին կողմերը գտնուելու է: «Բոլոր տեղիքները համադրելով մարդ այն եզրակացութեան կու գայ՝ թէ* Ուրուատ(դ, թ)րի անունն էր այն լեռնաշխարհին, որ կը տարածուէր Վանայ լճին եւ Եփրատի ծոցին միջեւ մինչեւ Խարբերդին քով[179]*: Այս երկիրը յետոյ Ուրարտու կոչուեցաւ, այնպէս որ երկու անուանակոչումներն ալ նոյն են: Այսու Ուրուատրի ընթերցուածը կրնայ նաեւ ամենա-*

---

the Kings of Assyria, *էջ* 119)· *Ասուրնասիրպալ Բ.*, *Տարեգիրք* III, 91 (King, *անդ*, *էջ* 374)· KAH II, 58, I, 19, 60, II, 32, 61· *յոջկ.* 26, 83· *յետսկ.* 8, 84· *յոջկ.* 24, 153· *յետսկ.* 20, 22· CT = Cuneiform Texts from Babylonian Tablets in the Brit. Museum, XXXVI, 8, I, 14· KBo = Keilschrifttexte aus Boghazköi, 14 *եւ անդրադոյն տեղիքներ այս Բողազքէօյի բնագիրներուն մէջ:*

[178] AOB I, *էջ* 57, *ծնթ.:*

[179] *Ընդգծումն ինծմէ:*

մեծ հաւանականութիւնն ունենալ[180]»: Այս Ուրուատրի, որ ինչպէս Նաիրի իբր հաւաքական անուն ուրարտական գաւառական իշխանութեանց հասկնալու է, կը շրջափակէր ըստ այսմ ամբողջ հայկական Տաւրոսն եւ հետեւաբար նաեւ Արարատի լեռը:

Ուրիշ կարծիք ունէին մինչեւ հիմայ գիտնականները. այսպէս մինչ Սայս «Վանայ լճին արեւելեան եզերքը Բիայինա–Վան բերդով Ուրարտացւոց իշխանութեան միջնակէտն ու ելակէտը» կը համարի, Շրադէր[181] անոնց սկզբնական բնակավայրը Երասխի դաշտը կը փոխադրէ, որովհետեւ անոնք Տիգղաթպիլեսեր Ա.ի քով չեն յիշատակուիր, այլ առաջին անգամ Ասուրնասիր–պալի քով: Ասոր հակառակ Lehmann[182] եւ

---

[180] Ernst Weidner, անդ, որուն համաձայն *mât u-raṭ-ri* կը յիշուի նաեւ Assur 12451 (Photo Assur, 2971): — Տող 32—36 յիշուած Ուրուատրի ութ նահանգներէն Խիմէ, Մաշգուն (Բարգուն ?), Սալուա եւ Լուխա ուրիշ տեղ ալ կը յիշուին. գ. օր. Խիմէ. *mât ḫi-mi*, Տիգղաթպիլեսեր Ա. Հատուածակ. արձան. Դ., 10 (King, AKA, էջ 60), *mât ḫi-im-m[i]*, Assur 17184, տող 8 (որ սակայն KAH II, 74 ի կը պատկանի). նաեւ *mât ḫi-mu-a*, KAH II, 68, 12 = 71, 4 հո՞ս զետեղելու է: — Մաշգուն (Բարգուն). *[m]ât maš(?)-gu-un*, KAH II, 74, 13, *mât maš(?)-gu-un*, Assur 17132, յետսկ. 17 (հմմ *mât ḫi-ru-aḫ*, որ կ'ամբողջացնէ KAH II, 75): — Սալուա. *mât sa-lu-a*, KAH II, 63. II, 4 = 71 a, 5, 84. յոջկ. 25: — Լուխա. *mât luḫi*, Տիգլաթպիլեսեր Ա. Հատուածակ. արձ. Դ. 10 (King, AKA, էջ 60. անտարակոյս հաւասար է *Eluḫat* ի Ադադնարարի Ա.ի քով. տե՛ս AOB, էջ 59, ծնթ. 6): Այս տեղիքներէն ոչ մին կը հակասէ Ուրուատրիի վերոյիշեալ զետեղման:

[181] Zur Geogr. des assyr. Reiches, էջ 333 յջ.:

[182] ZA, 1897, էջ 113:

Belck[183] Տիգլաթպիլեսեր Ա-ի քով[184] յի-շուած Urratinaš կամ Urrahinaš կը կարդան Wincklerին հետ[185] «Urartinaš, որ է խալդի լեզուով Ուրարտու-քաղաք, ինչպէս որ Թայ-գիմա՝ Թայգի-քաղաք կը նշանակէ» (Լէման): Սակայն մինչ Լէման Ուրարտացիներն արեւ-մուտքէն գալթել եւ Վանայ լճին հարաւա-կողմը բնակիլ կու տայ, Բելք կը կարծէ «ամէն հիմ» ունենալ «Թայրի-Ուրարտացի-ները սկզբնական բնակավայրը Տիգրիսի եւ Զաբրսի մէջ տարածուող վայրի լեռնաշ-խարհին մէջ փնտռելու» (նոյն, էջ 811). այնու որ երկուքն ալ Ուրարտինան Վանայ լճին հարաւակողմը կը դնեն: Սակայն այս ենթադրական Ուրարտինան, որուն կարծեցեալ դիրքը — Վանայ լճին հարաւակողմը — բնաւ ստոյգ չէ, չի կրնար Ուրատարի-Ուրարտու երկրի մասին մեզի յառաջ բերուած տարա-ցայցը տեղորոշել, որովհետեւ Ուրարտինան ալ կարելի է շատ լաւ վերն իբր Ուրարտու-նշանակուած աշխարհին մէջ, որ է Վանայ լճին արեւմտեան կողմը՝ Հայկական Տաւրոսին մէջ զետեղել, որովհետեւ Տիգլաթպիլեսեր Ա-ի այս արշաւանքն ուղղուած էր գլխաւորաբար Կումմուխի եւ Թարբիի երկիրներուն դէմ: Ծանիկս[186], Սանտալճեան[187] եւ ուրիշներն

183 Beiträge zur Urgeschichte Armeniens ի Հանդ. Ամս., 1927, էջ 805 յջ.:
184 Արձ. Բ. 36 եւ 45:
185 KB I, էջ 20 յջ.:
186 BZ, 1904, էջ 120:
187 Histoire I, էջ 103:

Ուրարտացւոց սկզբնական բնակավայրը կը գտնեն Կարնոյ եւ Արածանիի միջեւ :

Աշխարհագրական այս համաձայնութիւնը կ՚արտաքսէ ամէն տարակոյս Արարդի = Ուրարտու նոյնութեան մասին : Արեւելցիներուն քով սովորական երեւոյթ է երկրին անուան համաձայն նաեւ մէջը գտնուած լեռներն անուանակոչել. ըստ այսմ Արարդի-լեռ (կամ լեռներ) կը նշանակէ միայն Ուրարտու երկրին լեռները : Թէեւ «միեւնոյն թագաւորն Արարդի մը եւ Ուրարտու (Ուրարտի)[188] մը կը յիշէ», սակայն ասկէ բնաւ չի հետեւիր «թէ Ասորեստանցիներն երկու տարբեր անուններ լսած եւ առանց տարակուսական ձայնական արժէքին համաձայն արտագրութեան ժամանակ ալ տարբեր կերպով ներկայացուցած են», ինչպէս Շանդա կը կարծէ : Այսպէս אַשְׁכְּנַז (Աշքանազ) անունն Ասորեստանեան արձանագրութեանց մէջ[189] Ašguza եւ Պատգամահարցերուն մէջ[190] Iš-kuza ձեւերու կը վերածուի, որչափ որ ալ այս ձայնաւորն աւելցուած ըլլայ քաղցրահնչութեան համար, ըստ որում սեմական ժողո-

---

[188] Առաջնակերպ (Standard) արձանագրութեան մէջ. անոր բնագիրը տե՛ս Abel-Winckler, Keilschrift-texte, տող 9. ultu reš eni mat Subnat adi māt Urarṭi kutsu iksud, այսինքն՝ Սուբնատի (Սեբենէ-սուի) ակնաղբիւրէն մինչեւ Ուրարտու : Šanda, BibZ, 1904, էջ 118:

[189] Հատուածակողմանց Ա. եւ Գ., սիւն. Բ., 27 տող. եւ Հատուածակ. Բ., սիւն. Գ., 16 տող. (KB II, 128. 146):

[190] Kn — Knudtzon Gebete (Leipzig 1893), 35, յետադ. 9:

բոլորովին անտարբեր է այն հարցը թէ արդեօք Ասուրնասիրպալ Թ. դարուն Արարդիով հայկական Տարօնն ընդհանրապէս՝ թէ այս լեռնաշղթային մէկ լեռնակատարն ակնարկել կ'ուզէր : Ամէն պարագայի շահեկան է դիտել որ Սասնոյ լեռնաշղթային մէկ լեռը կ'որոշէ միւս լեռներուն հետ Ջրհեղեղի ալիքներէն տարուբեր տապանը հիւրընկալած ըլլալու պատուոյն համար :

## § 7. ԱՐԱՐԱՏ-ՄԱՐԱԹԿԷՆ

Գէորգ Կիպրացի (945—947), էջ 48, տապանակիր լերան մասին շատ հետաքրքրական տեղեկութիւն մ'ունի. «Հոն կը վերջանայ Միջագետք եւ ուր կը գտնուին Տաւրոսու Բաղէշի կապանն[195] եւ կը սկսի հիւսիսային կողմը Մեծ Հայք. եւ այս աշխարհին մօտ՝ Տաւրոսի կողմը բնակող երկու ժողովուրդներէն մին կը կոչուի Աւթեցիք եւ երկրորդը Սանասունք : Հոս կը գտնուի բարձր լեռ մը՝ Մարաթկէն[196] անուն, ուր

195 Յուն. է. κλεισοῦρα (= կղեսուր [Տող. 80]) Βαλαλεισων, սկզբնական է ապահով Բաղաղէշ, ինչպէս կը տեսնուի Թովմ. Արծր., էջ 110, ծան., արաբ. ad darb Badlis = «կիրճ, անցք, դուռն», հմմտ Bit-lis. Հմմտ. Gelzer, Georg. Kyp., p. 168 :

196 Կը յիշուի դարձեալ ὄρος ὑψηλὸν ἐπονομαζόμενον Βαραθκέν (տե՛ս Leonis Sapientis et Photii ordo Patriarcharum in Hieronymi synectemus, ed. Parthey 1866, p. 89, հմմտ. էջ 821 առ G. Hoffmann, Auszüge persischer Märtyrer, p. 175. P. Peeters, Anal. Boll., t. 38 [1920], p. 320), որ անտարակոյս Μαραθκέν սրբագրելու է :

Մարութի վրայ անցնիլը մեկնելու համար: Հայ ժողովրդական հոգեբանութիւնը դիւրաւ ուզէր Մարութին իբր տարածողներ չեն տեսնել, որովհետեւ անիկա է Հայաստանի ամէնէն բարձր եւ [illegible] լեռը: Ամէն պարագային կը հասնինք հոն, որ առաջնորդած էր զմեզ արդէն Մովս. Խորենացւոյ, Պատմ. Ա, 6 (տե՛ս վերը՝ էջ 43 յշ.) Ջրհեղեղի աւանդութիւնն. անիկա կը հաստատէ ոչ թէ Մարութի աւանդութիւնն, այլ այն, ինչ որ Գէորգ Կիպրացի, ինչպէս նաեւ Նիկողայոս Դամասկացի տարածողներ իրենց մասին աւանդած են (տե՛ս վերը՝ էջ 27):

Այս վկայութիւններուն նշանակութիւնն աւելի արժէք կը ստանայ, երբ նկատենք որ հոն՝ Սասնոյ կողմերը հին Ուրարտացիներու ցիրուցան մնացորդները եւ նոյն իսկ Ուրարտու անուան ապրիլը կը տեսնենք: Այսպէս Յովհաննէս Եփեսացւոյ (ծն. իբր 506ին յ. Ք.) գրութենէն[202] կ՚իմանանք թէ՝ Անձիթ գա-

---

[202] Joannis episcopi Ephesi Syri Monophysitae Commentarii de beatis orientalibus et Historiae Ecclesiasticae fragmenta, latine verterunt W. J. van Douwen et J. P. N. Land. Amstelodami 1889. զոր այս անգամ կը գործածենք: Ասորերէն բնագիրն աւելի կատարեալ քան Will. Cureton-ի հրատ. (Oxford 1853) հրատարակած էր արդէն յառաջագոյն նոյն ինքն Land, Anecdota Syriaca, tom. II (Lugduni Bat. 1868): Այս մասին տե՛ս Ա. Դեակոնովի քննական ուսումնասիրութիւնը Іоаннъ Ефесскій и его церковно-историческіе труды (Յովհ. Եփեսացի եւ անոր եկեղեցապատմական աշխատութիւնները), Պետերբուրգ 1908. տե՛ս նաեւ Assemani, Bibl. Or., t. II, pp. 83—90:

ւառին մէջ կար Ortājē[203] անունով ժողովուրդ մը, որ տակաւին պահած էր իր սեպհական լեզուն, ունէր իր վանքն ու Ամիդ քաղաքի պարիսպներէն ներս՝ իր դպրոցը[204]: Օրտայէ[205] (ստուգ. *Օրտարտ ձեւին) կ'անուանէին սորիներն ընդհանրապէս Տիգրիսի

---

[203] Ortājē, Beth Ortājē = «Օրտայեցւոց երկիրը», Յովհ. Եփ., էջ 49, տ. 25, էջ 122, տ. 11 եւն. եւ Josua Stylites, ed. Wright, p. 39. Hübschmann, ON, 236, ծնթ. 2 = Հայ. թրգմ. 55, ծնթ. 1: Օրտայեցիք կը յիշուին Ծոփաց եւ Անգեղտան բնակիչներուն, Բարբարոսներուն, Հայերուն եւ Հեթանոսներուն, Կապպադովկացիներուն եւ Ասորիներուն հետ: Հմմտ. Th. Nöldeke, Zwei Völker Vorderasiens, ZDMG (= Zeitschr. d. Deutschen Morg. Ges.) 33 (1879), 163 յջ., Մարքուարտ, Հանդ. Ամս., 1915, էջ 96 = Արտատպ. էջ 222. Նոյնը՝ Entstehung, 16:

[204] Յովհ. Եփ., էջ 182, տ. 22—25. «Այս (վանահայր կարգուեցաւ) Մար Յովհաննէս, որմէ մենաստանն իր անունն առաւ... որ Օրտայեցի կը համարուէր եւ կը կոչուէր, որովհետեւ եկեղեցին, դպրոցն եւ վարդապետ ըլլալուն Օրտայեցւոց երկիրը գնաց, ուր շատերը կը խրատէր, կ'ուսուցանէր եւ ուղղութեան կը բերէր, այնպէս որ մինչեւ իսկ Օրտայեցւոց լեզուն կը խօսէր, այս պատճառաւ ալ Օրտայեցի համարուած եւ անուանուած է, թէեւ ինքն ազգաւ զուտ ասորի է»: տե՛ս գործնալ էջ 184. տ. 7. էջ 186. տ. 16—18: Հմմտ. նաեւ Դիւակոնով, անդ, էջ 11 եւ 38—39:

[205] Անտարակոյս սոյն տպագրուած ձեւն է Օրտայեցի, զոր կը գտնենք Մարութայի վարքին մէջ. «կին մի անուն Մարիամ դուստր նախարարաց Հայոց տուեալ եղեւ կին Օրտայեցւոց (տարբ. Ուրտացի) քրմապետի, որ էր տէր այսմ աշխարհի» (Վարք եւ Վկայաբանութիւնք սրբոց, Վենետ. 1874, հատ. Բ., էջ 18: Տե՛ս նոյնը նաեւ Աւգերեան, Լիակատար Վարք, Վենետ. 1810, հատ. Ա., էջ 585, ուր Օրտայեցւոց ձեւն եղած է Որտացւոց — այսպէս սրբագրելու է բնագրին Սոտացւոց կամ Ըստացւոց ձեւերն, եթէ վերջինս եղած չէ Որտա[յե]ցւոց, որ ամէնէն ուղիղն է): Այս կարգի քրմապետներ, աշխարհական իշխանութեամբ՝ հաւաստուած են Ա. դարուն Քրիստոսէ յառաջ եւ ետքը:

յորձորձուին, որոնք Բելադորիի[209] համաձայն «թարթարոս»ներ են եւ նաեւ al-Artan անունը կը կրեն: Նէօլտէկէ[210] իրաւամբ հոս al-Ortay (ատ. Ortāyē) ընթերցումը շատ հաւանական կը գտնէ: Տոմաշէկ[211] սակայն կը տարակուսի թէ «արդեօք արամայեցի Որտայեցիք իրենց Հանձիթ բնադաւառէն մինչեւ Տարօն եւ մինչեւ Բաղէշի կողմերը՝ Տիգրիս կրնայի՞ն տարածուած ըլլալ: Թերեւս Նէրսէյի ըլլայ հետեւեալ տեղեկութիւնը յիշեցնել, որ հնագոյն ժամանակներէն է (Պլինիոս, Զ., 128). Կղաւդիոս Կեսար կ՚ըսէ թէ Արածանիի ընկերը Տիգրիս Arthenei (տարբ. Archene) մէջէն կը հոսի կ՚անցնի: Արթենէ դժուարաւ կրնայ Արզն (հայ. Արձն, Աղձն, Աղձնիք, 'Αρζανηνή) եւ կամ Սարարոնի 'Αρσηνής (Արճէշի լիճն ու երկիրը) ըլլալ»: Տոմաշէկ կը միտի զայն նոյնացնել Յովհ. Մամիկոնեանի քով յիշուած Արձան բարձունքի մը (ի Տարօն՝ Հաշտենից դիմացը) եւ Արուղփեղայի (տարեգր. ցանկ հրջ. 590, 594) Քալաթ-Արզանի հետ (Մուշի գաւառին մէջ): Եթէ հոս ծանրակշիռ կէտ մը կայ, այն ալ

---

նեաց տան նախահայրը կ՚ըլլայ (Մովս. Խոր. Բ., Է. Վարդան, Աշխարհագր. St. Martin, Mémoires, t. II, p. 430. հմմտ. Hübschmann, ON 315 = հայ. թրգմ. 173 յջր.):

208 Ասողիկ, Պատմ., էջ 107. յուն. Χοθαῖται (Գէորգ Կիպ., 48), ար. Խոթայթիյա (Beladhori, p. 211 յջ. Fragm. hist. ed. de Goeje, p. 547, at-Tabari, Annales III, 3, p. 1404 յջր.):

209 Beladhori, էջ 211:

210 ZDMG 1879, 165:

211 Sasun, 21 = հայ թրգմ. էջ 29:

Արթենէն է, զոր դիւրաւ կարելի է Օրարտի հետ նոյնացնել: Եւ կրնայ որ արդէն Մարքուարտ այս Ա(օ)րթան կամ Արտաան եւ Օրտայէ կոչուած բարբառին համարժէք համարած եւ անոր մէջ Աւրարտու անունը նշմարած է մեկնելով ամբողջ երեւոյթը պարզաբանութեան (Haplologie) օրէնքով յառաջ եկած յոկ սղում մը, որով *Օրար(ա)տր, *Արար(ա)տր, Արտի, Օրտի յանգած է: Այսպէս շատ հաւանական կը գտնէ որ Մայաթ (կամ Մարաթկէն) այս միեւնոյն անունը ներկայացնէ Մ– վրացերէն վերադիրով, «որ հաւանաբար նաեւ վերին Եփրատին եզերքը գտնուող حل مـفـتـا քերան անուան մէջ ալ երեւան կու գայ եւ վրական երկիրներուն մէջ յաճախ կը տեսնուի[212]», ինչպէս Արգիշել եւ Մարգիշել[213]:

Մարքուարտ Ա(Օ)րթան անունը «Ուղթի յատուկ ժողովրդական անունը» կը համարի: Որովհետեւ անոր համաձայն խալթ «իրականին ուրիշ բան չէ, բայց եթէ հին խալդիի կանոնաւոր փոփոխութիւնը հայերէնի ձայնական օրէնքներուն համաձայն[214]»: Ըստ

---

[212] Հանդ. Ամս., 1915. 96 Արտաազ. 222. Հմմտ. նաեւ Ցուցարան, 296. Entstehung, 17:

[213] Streifzüge, 171:

[214] Այսպէս խալթ յառաջ եկած է *խալթէն եւ այս ալ խալդէն, ինչպէս Խաղտայ ու. khaldajaէն: Ասոմնայինի թուրի փոխուելը խաղտիի Χάλδοι անուան կանոնաւոր ձայնաշրջութեանը (Lautverschiebung) կը պատկանի ինչպէս փայթ եւ յուն. σπονδή. Հմմտ. նաեւ յուն. Φᾶσις < *Φάτις, վրաց. ფოთი (ռուս. Поти), հայ. Փայթ (Հիւպշ., էջ 35 եւ 291. ծնթ. 2. Հրատ.

այսմ հոս ալ նման շրջում մը տեղի ունե-ցած է ինչ որ կը տեսնենք հայ. Տայք-Վանի ուրարտական Բիայնա-Տուրուշպայի նկատ-մամբ, այսինքն թէ ազգին հին անունը (Խալդի-նի) երկրի անուն եղած է, երկրի հին անունն ալ ազգի անուն դարձած է, ա-սոր հակառակ քաղաքի անունը նահանգի ա-նուն (Տոսպ)։ Այս ազատ եւ արիասիրտ Խալ-դիներն են, որոնք իբրեւ վարձկան զինուոր արեւելեան Հայաստանի սատրապին՝ Որոն-տասի եւ Արտուքասի բանակին մէջ Հայե-րուն եւ Մարերուն հետ միասին՝ յունական բիւրուց դէմ ճակատեցան Կենտրիտէսի (Բոհտան-սուի) քով, Հայաստանի եւ Կոր-դուաց աշխարհին (Բէթ Քարդու, Բոհտան) սահմանին վրայ[215]։ Ասոնք նախնիներն են քաջ օրտայեցիներուն կամ խութեցիներուն, որոնք տակաւին Թ. դարուն Խոյթ բարձրա-գաւառին մէջ իրենց հին — Հայերուն ան-հասկանալի — բազմաթիւ գաւառաբարբառ-ները բաժնուած (ճիւղաւորուած) լեզուն

---

(նշանով). նմանապէս նուրբ եւ թաւ գրերու միջեւ տարբերութիւն կը տեսնենք նախահայկական Անձիտ, Անձիթ, Հանձիթ անուան մէջ։ «Աստանձայինի մ'աղջե-ղի ու փոխուիլը, որ դաղղիերէնն ու հոլանդերէնը կը յիշեցնէ, թէեւ հոս յարաբերաբար այնպէս ու չ ժամա-նակաշրջանի մը համար միայն վկայութիւն ունինք, կրնայ սակայն նաեւ նախաքրիստոնէական շրջանին ալ տեղի ունեցած ըլլալ։ Իրապէս չեմ դժուարիր Խոյթ, *Խաւթ նախապատմական *Խադտի վերածելու եւ այս անուան մէջ Խալդի-Նի ժողովրդական անունը ճանչնա-լու» (Südarmenien, 228· Entstehung, 68, ծնթ. 4)։

[215] Xenophon, Anabasis, IV, 3. 4· Հմմտ. նաեւ Markwart, Südarmenien, 228։

թոց ոյժից կազմեալ[247], և միով կերակրով և միով համգերձիւ բաւականանան զամառն և զձմեռն. և են առաջեալ զէնս աշաւեալ և համապազ կրելով ընդ ինքեանս, ի պատրաստութիւն զօրանալոյն որք ի լերինն բնակին: Այլ և ի ժամանակս հաւելոց թշնամեաց լերկինն իւրեանց՝ զան միւսան լեռնայինքն յօգնութիւն իշխանացն, զի են ախրանէրք: Իսկ վասն ձեռնն անկոյսն զօրութեանն որ այն ինչ յամօլոյն ի վայր գեղեալ լինին՝ հնարաւորեալ իւրեանց փայտս երկեւ զանուրս չուանօք պարանակեալ չուրջ զատամբք, զիւրա ընթանան ի վերայ ձեռնն երկեւ ընդ ցամաք երկիր: Եւ են գաղանաբարոյք, արիւնարբուք, առ ոչինչ համարելով զսպանումն եղբարց հարազատաց, նաև զանձանց եւս. և կոչին ազգս մեկնաչայլնք սորճանգակք[218], բնակեալք ի լերինն որ բաժանէ ընդ Աղձնիս և ընդ Տարօն: Եւ յաղագս խրթնի և անհեռացուելի խօսիցն և բարուցն կոչին Խութ, յորոց անուն և լեառնն Խոյթ անուանի[219]: Եւ գիտեն զազգման զհին Թորգոմեանցն վարդապետացն Հայոց, զոր համապազ ի բերան ունին: Սոքա են զաւառք Ասորոց, որ չուեցին զկնի Ադրամե-

[217] Այս է ստուգութեամբ Խարբուկն, որ յու յարմարութիւն ունի ձմեռն հղուենի վրայէն ամայթար քայլքու - տե՛ս Ինճիճեան, Նոր Հայ., 201:

[218] Իբրև այսպիսի կր զանուէին Տփղիսի Խոշաք իւն Խամայիլ իշխանի ծառայութեան մէջ. Տարաքի, III, 1416, 4—5:

[219] Այս ստուգաբանութիւնը ընականաբար ժողովրդին ռամկական է:

Նախ եւ յառաջ ի՛նչ հասկնալու է պատականներու իմաստով Γορδυαῖα ὄρη, «Կորդուք-Քարդու-լեռներ» բառով: Որովհետեւ պատմական աշխարհագրութեան տուեալները «Կորդուք-Քարդու-լերանց» դասական գաղափարի տարածութեան մասին բոլորովին անորոշ են եւ այս երկրամասին սահմանները քարտէսներու վրայ առ հասարակ ճշգրիտ չեն նշանակուած, այս պատճառաւ կ՚արժէ որ հիներուն Կորդուք-Քարդու-լերանց աշխարհագրական գաղափարին ծանօթանանք. հոս մեզի ամէնէն լաւ ծառայութիւնը կը մատուցանէ Ստրաբոն:

Յունական մեծ աշխարհագէտը (ԺԱ, 12, 2 յէջ.) Տաւրոսը կը դնէ Կարիա եւ Լիկիա ծագած եւ այդպէս կ՚անուանէ Փոքր Ասիոյ ամբողջ լեռնային դրութիւնը, առանձնապէս սակայն Տաւրոս անունը կը կրէ լոկ իրեն, այս լեռնաշղթային հարաւային գանգուածը՝ Եփրատի անցքէն դէպի արեւելք: Ամփոփենք հոս մեր խնդրոյն հետ առնչութիւն ունեցող էական կէտերը. «Սակայն այն մասերն, որոնք Եփրատէն անդին, Կապադովկիայէն եւ Կոմմագենէյէն դէպի արեւելք կը տարածուին» (փոքր-ասիական Տաւրոսի շարունակութիւնն Եփրատի արեւելեան եւ Տիգրիսի հարաւային կողմը, հիւսիսային լեռներու մասին յառաջագոյն խօսած էր), «սկիզբը Տաւրոս անունը կը կրէին, որ Ծոփքն եւ միւս Հայաստանը Միջագետքէն կը բաժնէ. ոմանք զասոնք Կորդուաց լեռներ ալ կ՚ա-

նուանեն․ ասոնց մէջ է նաեւ Մասիոս լեռն, որ Մծբինէն ու Տիգրանակերտէն վեր կը գտնուի: Յետոյ (հակադրելով վերոյիշեալ «սկիւթը»ն) աւելի բարձրանալով (Տաւրոս) Նիփատ (Նիփատէս) կ'անուանուի: Այս կողմերը՝ ասոր (լերան = Նիփատի) հարաւային լանջքէն կը բխեն նաեւ Տիգրիսի ակերակունքը: Նիփատէն աւելի անդին տարածուելով լերան կողքը կը կազմէ Զագրոս լեռն, որ Մարաստանը Բաբելաստանէն կը բաժնէ», այսինքն Ծոփքի եւ միւս Հայաստանի հարաւակողմեան լեռնաշղթան (Հիմայ Քարաջադաղ եւ Տուր-Աբդին կամ Իզ-Տոր) սկիւթը (κατ' ἀρχάς) կ'անուանուէր նմանապէս Տաւրոս (ինչպէս Եփրատի արեւմտեան կողմը կցուած լեռն եւ ընդհանրապէս ամբողջ փոքրասիական լեռնաշղթան[225]): Մծբինէն վեր գտնուած մասն ալ դեռ Մասիոս լեռ (Μάσιον ὄρος) կ'անուանուի, սակայն ուրիշներն այս Տաւրոսը Կորդուաց լերինք (Γορδυαῖα ὄρη) կը կոչեն, որով ասորիները Տուրա դէ Մաշէն երեքպատիկ անուն կը կրէ՝ Տաւրոս, Մասիոս եւ Կորդուիք: Որովհետեւ հոս Մա-

---

225 «Հայկական Տաւրոսն» Ստրաբոն կ'անուանէ թէ «Անտիտաւրոս» եւ թէ նաեւ պարզապէս «Տաւրոս»․ «Հիւսիսային մասին մէջ կը գտնուի Ծոփք՝ Մասիոս լերան եւ Անտիտաւրոսի միջեւ: Վերջինս կը սկսի Եփրատէն եւ Տիգրիսէն եւ կը վերջանայ Հայաստանի արեւելեան կողմը շրջապատելով Ծոփքը, մինչ միւս կողմանէ Աքիլիսէնէն կը պարունակէ, որ կը գտնուի Տաւրոսի (փոխանակ Անտիտաւրոս ըսելու) եւ Եփրատի ակերէն միջեւ՝ դէպի հարաւ պարփակուածքին վերեւը» (ժա, 14, 1—3):

սրան այժմեան Տուր-Աբդինն (Մարդին-դաղ) է, Նփատն (Նիփատէս) ալ կը համապատասխանէ — եթէ Տիգրիսի աղբերականներու մասին եղած ակնարկութիւնն անտեսենք — Բոհտանի Ջեբէլ-Ջուդիին, բայց այս Կորդուաց լեռներուն հետ կը նոյնանայ եւ այսպէս ալ անունն կը գործածէ Պտղոմէոս, Աշխրհ. 31. Երբ կ'աւանդէ թէ Նփատն Արբելայի պատերազմի դաշտէն կը տեսնուէր[226]: Աւելի ճշգրիտ եւ ուղիղ կը ներկայացնէ Ստրաբոն, ԺԱ, 14, 2, Կորդուքին. «Մասիոսի վրայ՝ Կորդուաց մէջ (կամ կից) Նիփատը կը գտնուի դէպի արեւելք դարձած, ապա Աբոսն, ուրկից կը բխեն նաեւ Եփրատն եւ Արաքսը[227]». սակայն այս կարծէն յայտնի կը տեսնուի միաժամանակ որ Ստրաբոն Նփատը շփոթած է Ջեբէլ-Ջուդիի հետ, մինչդեռ իր աղբիւրը Նփատի ուղիղ դիրքը տուած ըլլալու է, ինչպէս կը ցուցնէ Աբոսի՝ այսինքն Կարնոյ հարաւային կողմը գտնուող Պալանդէօքէն-դաղի հետ անոր ունեցած աղերսը:

Ըստ Ստրաբոնի նախնական աղբիւրին մէջ Նփատի տեղը ցուցուած էր՝ ոչ թէ Մծբնի հիւսիսային կողմը գտնուող Մասիոս լերան համեմատութեամբ, այլ Մա-

---

[226] Համ. W. Fabricius, Theophanes von Mitylene, 139, առ Մարքուարթ, Հանդ. Ամս. 1913. 95 = Արտատպ. 13:

[227] *Τοῦ δὲ Μασίου ὑπέρκειται πρὸς ἕω πολὺ κατὰ τὴν Γορδυηνὴν ὁ Νιφάτης, εἶθ' ὁ Ἄβος, ἀφ' οὗ Εὐφράτης ῥεῖ καὶ ὁ Ἀράξης.*

Երաշխաւոր կոչեն, յառաջին Մասեաց»: Այս տեղիքներէն դատ Փաւստոս Բիւզանդացւոյ քով ուշադրութեան արժանի դէպք մը կայ, ուր կը պատմուի թէ Հայոց Տիրան թագաւորն՝ Ատրպատականի Շապուհ Վարազ սատրապին ի պատիւ արքունական որսորդութիւն մը սարքեց «յերկիրն Ապահունեաց, յառաջին մեծի լերինն Մասեաց», այն տեղն, որ Աղիորսոց քաղաք կը կոչուի[233]: Ապահունիք գաւառը, Ստրաբոնի Φαυνῖτις, Տուրուբերան նահանգին մասն էր եւ Բզնունեաց՝ այսինքն Վանայ ծովուն արեւմտեան կողմը կ'իյնար եւ Արածանին զայն կ'ոռոգէր, սահմանակից էր հարաւէն Բզնունեաց, իսկ արեւմուտքէն Հարք գաւառին, որ ընդհանուր առմամբ Բուլանըխ դաշտավայրին կը համապատասխանէ, որուն մէջն էր նախարար Մանազկերտը (Մելազկերտ)[234] եւ որ արեւելքէն մինչեւ Արածանւոյ ակերակունքը կը հասնէր[235]: Ուստի հաւանականութենէ այլ վեր է, որ նաեւ Փաւստոս Մասիսով՝ Սիփան լեռը կը հասկնայ. մանաւանդ թէ կ'երեւայ որ Սիփան-Մասիսը՝ Արարատ կոչուած Ազատ-Մասիսէն[236] զանա-

---

գործ 199, Խլաթի (Ախլաթ) եւ Արճէշի միջեւ. տե՛ս Hübschmann, ON, էջ 324, 328. Հայ. Թրգմ. էջ 187, 194:

233 Գ., ե., էջ 51:

234 Մովս. Խոր. Ա., ժբ., էջ 26:

235 Մովս. Խոր. Աշխարհացոյց, էջ 31. տ. 14, 24—25:

236 Տես այս անուան մասին վերը § 4 եւ § 7. Murad, Ararat und Masis, 52:

դանուելու համար Նիխ-Մասիք անունը կը կրէր[237]։

Երբ հայ մատենագրութիւնը Սիփան լեռն իբրեւ Մասիս կը ճանչնայ, որ Նպատի աշխարհագրական դիրքն (Սորարոնի համաձայն) որոշելու համար ամէնէն յարմարն է, անկէ կը հետեւի թէ Հայոց Սիփան-Մասիսն եւ Սորարոնի Մասիս լեռը պէտք է որ նոյն ըլլան եւ թէ Սորարոն հայկական Տաւրոսի այս լեռնակատարը պարզապէս շփոթած է Մծբնի հիւսիսակողմը գտնուող Մասիս լերան հետ։ Այս շփոթութիւնը կրկնուած է Սորարոնի քով ուրիշ տեղ մը (ժա, 5, 6), ուր սակայն Մասիս լեռը միայն Սասնոյ եւ Թոյթի լեռնաշղթան կընայ յարաբերել։ Հոս ըստ Թէոփանէս Մետիլինեցւոյն կը նկարագրէ թէ ինչպէս Կովկասի բնիկներն ամառը լայն, անուանման, սապատանով օծտուած ձեան ոտնամանով, — որ պատրաստուած է չխաղախորդուած եզան մորթէ, — սանդալներ եւ ձիւնալից բարձունքներ կ'ելլեն եւ ապա իրենց բռնելով եզան մորթի մը վրայ նստած վար կը սահին։ Արդ այս բանը, կը յարէ Սորարոն, տեղի կ'ունենայ նաեւ ատրպատականեան Մարաստան եւ Հայաստան՝ Մասիս լեռներուն վրայ, միայն թէ հոս ներբաններուն տակն սապատան ագուցուած կաւարներ կը կապեն։ Այս վերջին խօսքերը կրնանք իրաւամբ Մարքուարտի

---

[237] Հմմտ. այս բուածներու մասին Մարքուարտ, Հանդ. Ամս. 1913, 95—97 = Արտատպ. 13—16։

հետ իբրեւ յաւերժական մը նկատել, որ դժուարաւ. Թէ Թէոփանէսին վերաբերի, որուն Ատրպատականի մասին ունեցած ծանօթութիւնը շատ չնչին էր, այլ հաւանաբար Պոսէյդոնիոս հնագոյն աղբիւրէ մ'աւելցուցած է: Հոս յիշուած Հայաստանի Մասիս լեռը չի կրնար Մծբնի հիւսիսակողմեան Մասիոս լեռն ըլլալ, ինչպէս կը կարծէ Տոմաշէկ[238], որովհետեւ Տուր-Աբդինը միջին բարձրութեամբ լեռ մըն է — աւելի հարաւ եւ այն կողմին, մինչ հոս յայտնապէս ձիւնաշատ բարձրալեռան մասին է խօսքը: Ասոր վրայ կ'աւելնայ պարագայ մը, այսինքն Թէ Ստրաբոնի իսկ վկայութեան համաձայն (ժա, 12, 4) Մասիոս լեռը Ծոփքն եւ Հայաստանի միւս գաւառները Միջագետքէն կը բաժնէ. ուստի այսպիսի լրագէտ եւ ճշգրտապատում պատմիչ մը, ինչպիսին ըլլալ կը տեսնուի վերոյիշեալ տեղեկութեանց հեղինակը, ապահնարապէս [illegible] չկարենար Տուր-Աբդինը Հայաստանի տալ: Թէ նա Մասիոս լեռ ըսելով հայկական Տաւրոսի արեւելեան բարձրալեռը՝ Սասնոյ եւ Խոյթի ալպեան լեռնագաւառը կը հասկնար, ապացոյց է Թովմ. Արծրունւոյ կենդանի նկարագրութիւնն, որ դնէ տակաւին այն անմատչելի լեռնագաւառներու անդրէնածիններուն ինքնայատուկ ձեւն ստամաններու կործանութիւնը. «Իսկ վասն ձեանն անհնարին զօրութեանն որ այն

[238] Sasun, էջ 14 = Հայ. Թրգմ., էջ 19. Նաեւ Streck, ZA 1898, 87 = Հայ. Թրգմ., 35:

ինչ յամպոյն ի վայր գեղեալ լինին՝ հնարաւորեալ իւրեանց փայտս իբրեւ զանուրս չուանօք պարունակեալ շուրջ զոտամբք, դիւրաւ ընթանան ի վերայ ձեանն իբրեւ ընդ ցամաք երկիր [239]» ։

Այս վկայութեանց համադրութենէն կը տեսնուի որ Մասիոս լեռը Ստրաբոնի առումով մինչեւ Սիփան լեռը կ՚երկարէր եւ որովհետեւ Մասիոսէն վեր գտնուող Նպատը Կորդուքի մէջ [240] էր, ըստ այսմ վերջինս (Կորդուք) մինչեւ Նպատ կը հասնի եւ կը շրջապատէր ու նուաղն հայկական Տաւրոսի արեւելեան մասը փաստօրէն նաեւ Սիփան լեռը [241] ։ Լեհման-Հաուպտի համաձայն [242] Մասիոսն «ոչ թէ, ինչպէս մինչեւ հիմայ ընդհանրապէս կը կարծուէր, անուն մըն էր տաւրոսեան լեռնաշղթային անէլի արեւելեան մասին պատկանող լերան մը (կամ լեռներու խումբի մը), այլ անիկա ամբողջ տաւրոսեան լեռնաշղթային հին եւ ուղիղ անունն էր»։ Ըստ այսմ Ստրաբոնի քով Մասիոսն եւ Կոր-

---

[239] Թովմ. Արծր. Բ., 7, էջ 121. տե՛ս վերը։

[240] Ստրաբոն, ԺԱ, 14, 2։ Մեր հարցին համար մեծ նշանակութիւն մը չունի թէ ինչպէս այս տեղ κατὰ τὴν Γορδυηνήν կը թարգմանուի, «Կորդուքի մէջ» թէ «Կորդուքի կից», սակայն առաջինը Ստրաբոնի լեզուին հոգւոյն համաձայն ըլլալ կը թուի. հմմտ. κατὰ τὴν Ἀτροπατίαν Μηδίαν καὶ κατὰ τὸ Μάσιον ὄρος τὸ ἐν Ἀρμενίᾳ, ԺԱ, 5, 6. այս պարագային Կորդուք անունն աւելի ընդարձակ աշխարհագրական գաղափար մը կը ստանայ։

[241] A. Šanda, MVAG 1902, պր. 2, էջ 23 յջ.։

[242] Հանդ. Ամս. 1927, 798 յջ. Կ՚ատարէ նաեւ իր Armenien I, էջ. 14 եւ 16. Հատ. 2. պր. 1, էջ 421 յջջ.։

գուր աշխարհագրական ընդարձակ գաղա-փարներ են, որոնք յետոյ ժամանակի ըն-թացքին անձկացան: Որովհետեւ երբ Ստրա-բոն Քարաճա-դաղ եւ Տուր-Աբդին լեռնա-շղթային մասին խօսած ժամանակ մոռցիր կ'ըսէ որ անոնք գանի Կորդուաց լեռներ ալ կ'անուանեն (ԺԱ, 12. 4), «այնպէս կ'երեւայ թէ անկից», կը կարծէ Շանդա, «Հնագոյն աղբիւրներ, մասնաւորապէս իր հեղինակա-ւոր աշխարհագիր Երատոսթենէս (276—196 Ն. Ք.) աչքի առջեւ ունի[243]»: Իսկ այս ենթա-կայութիւնը մեր խնդրոյն համար շատ ծան-րակշիռ է: Ասով կը ստանանք յայտնի ապա-ցոյց մը թէ հիներու գաղափարին համաձայն, մասնաւորապէս Բերոսոսի եւ Աղեքսանդր Բազմագիտէսի ժամանակ, որոնք ասուր-նայերան Կորդուք–աւանդութեան առջին հեղինակութիւններն են, Կորդուք անունը կը ներկայէր հայկական Տաւրոսի գէթ մէկ, եւ այն՝ արեւելեան մասը: Եւ տակաւին այսօր ալ, Մշոյ գաւառը Սասնոյ գաւառէն բաժնող լեռնաշղթան Կորդուք անունը կը կրէ[244]:

Այս բաւածներէն ետքն յայտնի է հաստատելը թէ Կորդուաց–աւանդութեան այս առջին հեղինակութիւնները միայն հայկա-կան Տաւրոսի լեռնաշղթան աչքի առջեւ կրնան ունեցած ըլլալ, մանաւանդ որ Գէորգ Կիպրացին մեզի հասուցած հին աւանդու-թիւն մը Սարաթէյէն կամ Սարաթ լեռ

243 A. Šanda, անդ, էջ 25:
244 Ա. Քալանթար, Սասուն, էջ 8:

Սասնոյ մէջ երբեւ ապաստանելու կը ճանչնայ եւ երկիրը՝ ունի հին աւանդութիւն մը Նիկողայոս Դամասկացւոյն քով՝ Մինիան լեռն երբեւ ապաստան, ինչպէս որ վերն արդէն ցուցուեցաւ, բայց այսմ այս երկու հին աւանդութիւններն ալ ապաստանակիր լեռը Հայկական Տաւրոսի արեւելեան մասին մէջ կը փնտռեն:

## § 9. ԲԱԲԵԼԱԿԱՆ ՋՐՀԵՂԵՂԻ ԶՐՈՅՑԻՆ ՏԱՐԱԾԱԼՈՒԹԸ՝ Նիծիր — Աշուր — Սամիոս

Ի՞նչ կ՚ըսէ այս վերջիշեալ եզրակացութեան բաբելական ջրհեղեղի զրոյցն, որ մեզ այլազան պատմուածքներով կը ներկայացուի եւ որոնց միայն հատակտորները մեզի հասած են[245]: Բացի Բերոսոսի պատմուածքէն, զոր Եւսեբիոս[246] կ՚աւանդէ, յատկապէս է

[245] Հմմտ. Das Gilgamesch-Epos. Neu übersetzt von Arthur Ungnad und gemeinverständlich erklärt von Hugo Greßmann (Göttingen 1911), ուր բոլոր հատակտորները՝ նաեւ Meißnerի հրատարակածները (տես MVAG, 1902. թիւ 1) տառադարձութեամբ ու թարգմանութեամբ յառաջ բերուած են: Նորագոյն հրատարակութիւն մըն է. The epic of Gilgamish. Text, Transliteration and Notes by R. Cambelle Thompson, Oxford 1930: Դիւցազներգութենէս հատակտորներ հասած են նաեւ հիթիթ. լեզուով. տես Joh. Friedrich, Die hititischen Bruchstücke des Gilgameš-Epos, ZA 39 (1930), էջ 1—82, տառադարձութեամբ ու թարգմանութեամբ բնագրին եւ ծանօթութիւններով: Հմմտ. նաեւ A. Jirku, Altorientalischer Kommentar zum Alten Testament, 1923, էջ 31 յջջ., Joh. Nikel, Genesis und Keilschriftforschung, 1903, էջ 176 յջջ.:

[246] Քրոն. Մատն Ա., էջ 31—37:

Ա. պատմուածքը (ԺԱ. տախտակը)։ Վերջինս վկայութիւն մըն է Գիլգամէշ-դիւցազն կոչուած բանաստեղծութեան, որ տասներկու երգերով «բաբելական Հերակլի» քաջագործութիւնները կը պատմէ։ Այն լեռն, որուն վրայ Ութ-նապիշտիմ՝ բաբելական Նոյի նաւը կը հանգչի, Նիծիր կ'անուանուի։ Ասոր դիրքը կարելի է մերձաւորապէս որոշել Ասուրնասիրպալի (885—860 Ն. Ք.) մէկ արձանագրութեամբ[247], եթէ հոն յիշուած Նիծիր լեռը համանուն Ջրհեղեղեան լերան հետ նոյն է։ Արդ այս լեռը կը փնտռուի ընդհանրապէս փոքր կամ ստորին Զաբի ձախակողմը, Ալթուն-Քէօփրիւ արեւելեան կամ հարաւ-արեւելեան կողմը՝ եւ այն կա՛մ Սուլեյման-դաղի լեռներէն մին կը համարուի եւ կա՛մ դեռ աւելի արեւելք կամ հարաւ-արեւելք ինկող լեռ մը[248]։ Աշխարհագրական այս գնահատման համաձայն Ասուրնասիրպալի Նիծիրը չի կրնար բնականաբար Կորդուքը կամ Ջեբել-Ջուդին՝ սարը եւ սուրբ աւանդութեան, «ինչպէս նաեւ Բերոսոսի»[249]

[247] Տարեգր. սիւն. Բ., տող 34, 36 յջ. (տե. KB I, էջ 76—77)։ Աշխարհագրական ցանկին մէջ (II R 51, Nr. 1) կը ներկայանայ իբր *šad Ni-ṣir šad* (կամ *mât*) *Gu-ti-i* = լեառն Նիծիր՝ լեառն (կամ աշխարհին) Գուտիի։

[248] KAT³, էջ 549, ծնթ. 4, Streck, ZA 15 (1900), էջ 272 յջ. = Հայ. Թարգմ., էջ 141, Lehmann-Haupt, Armenien II, էջ 338 յջ.։

[249] H. Winckler, Keilinschr. Textbuch zum A. T., 1909, էջ 80 յջ. Հմմտ. նաեւ վերը § 2, § 5 եւ § 8, ուր տեսանք թէ Բերոսոսի աւանդութեան, որ է «Կորդուացւոց լեառն ի Հայոց աշխարհին», հայկական Տարգումի հետ նոյն է։

նարկեր Աշուրնասիրպալի վերյիշեալ արձանագրութեան 39րդ տողը. «Այս բանակատեղին ճամբայ ելայ դէպի Նիծիր լերան վերեւը գտնուող քաղաքները, որոնց տեղն ոչ որ տեսած էր»: Միաժամանակ պէտք է միշտ աչքի առջեւ ունենալ որ Ասորեստանցիներուն ու Բաբելացիներուն աշխարհագրական ծանօթութիւնը համեմատութեամբ դասական աւանդութեան շատ աւելի անկատար է, ինչպէս Տիգրիսի ստորերկրեայ ընթացքի մասին եղած նկարագրութիւնէն կը տեսնուի[253], եւ հետեւաբար այն չափով

---

ժամանակ կորած է ասորեստանեան այն պատերազմական ճամբան, որուն վրայէն ոչ միայն իր յաջորդները մինչեւ Տիգրիսի փապուղին (Բիրքլէյն-սու) հասած էին, այլ նաեւ ինքը մինչեւ Մուսասիր եւ թէ նոյն իսկ Կապադովկիոյ ասորեստանեան զօրութիւնը աշխարհակալ թագաւորին «ժամանակէն է կամ անոր յաղթութեանց մէջ հետեւանքը, հիմայ հաւանականութեան բարձրագոյն աստիճան մը կը ստանայ» (Lehmann-Haupt, Armenien, II, էջ 117): Ուրարտուի աշխարհագրական գիտքի մասին գէթ Թ. դարուն համար չի կրնար խնդիր ըլլալ Սալմանասար Գ.ի (860—826) արձանագրութիւնը Տիգրիսի փապուղիի մէջ գտնուելէն ետքը (տ. Lehmann-Haupt, անդ, I, 434 յջր.), մանաւանդ թէ արդէն ասոր հայրն՝ Աշուրնասիրպալ Բ. ըստ իր մէկ արձանագրութեան (տ. § 6. ծնթ. 188) այս կողմերն արշաւած է, եթէ ասոր մէջ յիշուած Սուբնատ ակնաղբիւրը Բիրքլէյն-սուն է, ինչպէս կը կարծուի ընդհանրապէս, զոր Lehmann-Haupt (անդ, I, 442) Միջագետքի Բաբիլի ակնաղբիւրին հետ կը նոյնացնէ:

[253] Հմմտ. Lehmann-Haupt, ՀԱ 1927. 799 յջր., որ յառաջ բերելով Պլինիոսի (N. H. VI, 127. 128) ծանօթ տեղիքը — քաղուած հին աղբիւրէ մը՝ հաւանաբար Հեկատէոսէն՝ կը դիտէ թէ հոն նկարագրուած Տիգրիսի երկու անգամ ստորերկրեայ ընթացքը ինքն «իրականութեան աւելի մօտ է» (էջ 803), ինչպէս թէ Վանայ լիճը միայն մէկ տեսակ ձուկ ունի եւն. Հմմտ. նաեւ հեղինակին Armenien, I, 460 յջր.:

միայն գնահատելու է: Այս չափանիշը կ'արժէ առաւելապէս բաբելական ջրհեղեղի զրոյցին համար, որ իր պէսպէս խմբագրութիւններով կարող չէ յառկայէս մեզի իբր վստահելի առաջնորդ մը ծառայել՝ տապանակերան աշխարհագրական դիրքն որոշելու համար, որովհետեւ իր զանազան պատմուածքներուն մէջ կը փոխուին նաեւ անունները: Եւ զարմանալի ալ չէ, վասն զի «բնագրի մը կանոնականացումը տեղի չէ ունեցած, ամէն բանաստեղծ (աւանդող) կրնար զայն փոփոխել»[254]: Նմանապէս հնարաւոր է որ Նիծիրն ըլլայ «Բաբելացւոց եւ Ասորեստանցւոց նոյն լեռնաշղթային տուած գործածական անունը եւ այս պարագային կարելի է թէ սեմական բառ ըլլայ՝ 'փրկութիւն, նշանակութեամբ՝ կամ դիմամբ ընդունուած՝ ջրհեղեղի պատմութիւնն ակնարկելու եւ կամ հիմնուած լոկ ժողովրդական ստուգաբանութեան վրայ. ըստ այսմ բառախաղը կ'ըլլայ պատճառ՝ ջրհեղեղին այս լերան հետ կապուելուն»[255]:

Հին Բաբելացիներուն տապանալերան մասին ունեցած գաղափարը ճանչնալու կռուան մը կարծես կը մատակարարէ Գիլգամէշ—դիւցազներգութեան 11րդ երգին համեմատութիւնն 9րդ երգին այն տեղիքին հետ, ուր կը պատմուի թէ նաւը Նիծիր լե-

---

[254] H. Winkler, անդ, էջ 88. ծնթ. 1:
[255] Streck, ZA 15 (1900), էջ 273 յջ. = Հայ. թարգմ., էջ 143:

յան վրայ պատարելէն ետքն Ուտ-Նափիշթիմ իր կնոջ հետ աստուածներու դասուն մէջ կ'անցնի եւ այս պատճառաւ ալ դրախտ՝ աստուածներու բնակավայրին, որ «գետերու բերանը» կը գտնուի, փոխադրուելու կ'արժանանայ.

«Էա նաւ մտաւ,
Բռնեց ձեռքէս եւ հանեց ցամաք,
Հանեց ցամաք եւ ծնրադրեցուց կինս իմ
    կողքիս,
Շօշափեց մեր ճակատը, մեր երկուքին մէջեւ
    մտնելով օրհնեց զմեզ.
'Յառաջագոյն Ուտ-Նափիշթիմ լոկ մարդ էր,
Արդ Ուտ-Նափիշթիմ եւ իր կինը մեզ աս-
    տուածներուս նման պէտք է ըլլան.
Ուտ-Նափիշթիմ պէտք է բնակի հեռուն՝
    գետերուն բերանն,.
Առին զիս, հեռուն՝ գետերուն բերանը տուին
    ինձ բնակարան[256]»:

Այս տեղիքին զուգակշիռ է 9րդ Երգն, որ մեզի «գետերուն բերանն» բառած բացատրութիւնը հասկանալի կը դարձնէ: Գրեթէ 18 տողի բացէն ետքը բնագիրը կը շարունակուի[257].

---

[256] Տախ. ԺԱ, տող 198—205. տես Ungnad-Greßmann, Gilgamesch-Epos, էջ 59, ծնթ. 1: Նախընտրելի է «գետերուն ակնաղբիւր» բացատրութիւնը. տես վարը՝ ծնթ. 277:

[257] Տախ. Թ., տող 36 յջր., տես Ungnad-Greßmann, անդ, էջ 40 յջ.:

իր հօրը կամ նախահօրն՝ Ուտ–Նափիշտի-մին, «որ անկէ մաու [աստուածներու] դասուն մէջ [եւ կեանքը գիտեց]»: Կարիճ–մարդը կը յայտարարէ թէ այս անհնարին է, վասն զի «լերան մէջ ոչ որ ճամբայ գտած է» եւ սարը պառաձառն այ է.

«Տասներկու կրկնաժամ կը տեւէ ներքնա-
կային [լերան (?)],
Անթափանցելի է խաւարը, չկայ [ոչ մի
լոյս]»:

Ի վերջոյ թոյլ կու տայ Գիլգամէշին որ երթայ «Մաշու լեռները», «լեռները, բարձունքները», «ողջապահ կարծեաց աշխարհներու դունէն» անցնի (տող 69—77. 120—126): Կարիճ–մարդուն այս թոյլտուութեան վրայ Գիլգամէշ ճամբայ կ'ելլէ «արեւու ճամբան» քալելու.

«Կրկնաժամ մը [հասաւ...].
Անթափանցելի էր խաւարը [չկար ոչ մի
լոյս],
Թոյլ չէր տար իրեն իր... տեսնելու ինչ որ
ետեւը [կը գտնուէր]»:

Եւ այսպէս յառաջ կ'երթայ առաջին ինն կրկնաժամերը (տախ. Թ. տող 130—137):

Երբ «տաս կրկնաժամեր կը կայէ», [երբը] մօտ է (տող 138 յջ.) եւ տասներկու կրկնաժամերուն «կը լուսնայ»: Կը հասնի «աստուածներու պարտէզը (?), երբ զայն կը տեսնէ, դէպի հոն կ'ուղղուի»:

Աստուածներու պարտէզին շլացուցիչ փառաւորութիւնը կը ճանչցուի իր պտուղներէն, որոնք հոն մասնաւոր կերպով կը յիշուին, թէեւ ասոնց թուումը կատարեալ ըլլալ չի թուիր 15 տողի բացին հետեւանքով։ Իսկ ասոնց «յորդութիւնն (?) ու առատութիւնը» պատկերացնելու համար կը համեմատուին «յուրդի (?) մայրիի մը» կամ «ծովասէղի (?)» հետ կամ կ՚ըսուի թէ «փուշ ու տատասկի նման առատ (?) է ... քարը» (տող 164—167, 183—186)։

Գիլգամէշ աստուածներու պարտէզէն անցնելէն ետքը, կը շարունակէ դիւցազներգութիւնը (տախ. Ժ), ծովի մը կը հանդիպի, որուն եզերքը Սիդուրի–Սաբիթու աստուածուհին կը պահակալէ։ Դիւցազն երկար ճանապարհորդութենէն վայրագ տեսք մը կը ստանայ. այդ կերպարանքին տակ աստուածուհին այս տարօրինակ մարդն, որուն երկու երրորդն աստուածային է, չի կրնար ճանչնալ, անկէ իբրեւ չար դեւէ մը կը դարհուրի եւ անցքը կը փակէ։ Սակայն սպառնալիքով կրնայ մուտք կամ գէթ իր հարցումին պատասխան ստանալ։ Կը պատմէ աստուածուհւոյն յուզիչ խօսքերով իր ճակատագիրը.

«Երիտասարդ բարեկամս, դաշտին յովազը,
Էնգիդու, երիտասարդ բարեկամս, դաշտին յովազը,
Որ ամէն բան..., այնպէս որ լեռը բարձրացանք,

*Երկնային ցուլը բանեցինք եւ այս սպաննե-*
*ցինք,*
*Խումբաբա*[258] *ընկճեցինք, որ մայրիներու*
*անտառին մէջ կը բնակէր*

---

[258] Այս Խումբաբա կամ Հումբա. Խմբագրութեան համաձայն Խումբաբա Հրէշ-դեւին հետ երկու դիւցազն բարեկամներուն — Գիլգամէշի եւ Էնգիդուի — ունեցած կռիւը կը ներկայացնէ Բերլինի Թանգ. Յառաջակողմեան — ասիակ. բաժնին (VA 7246 — լայն. 13'8 սմ., բարձր. 8'1 սմ., ամէնէն հաստ մասը 1'8 սմ., գտնուած անյայտ տեղէ) կաւէ բարձրաքանդակ մը (Terrakotta-Relief), զոր Dietr. Opitz, Der Tod des Ḫumbaba վերնագրին ներքեւ կը հրատարակէ AfO V (1928—1929), էջ 207—213. այսպէս կը համկնայ նաեւ Thureau-Dangin (տես Rev. d'Assyriologie, XXII, էջ 24 յջք.), թէեւ S. Smith, որ նման կաւէ բարձրաքանդակներ հրատարակած է (տե՛ս Annals of Archaeol. and Anthropol. Univ. of Liverp. 11 (1924), էջ 107 յջք.), չի մերժեր հոն դիւցազներուն եւ հրէշ-դեւին մէջեւ եղած կռիւը տեսնել (տե՛ս JRAS, 1926, էջ 440 յջք.): Թէ ընդհանրապէս Գիլգամէշ-դիւցազներգութիւնը զարեւրով իր ազդեցութիւնն ունեցած է՝ կը վկայէ Լուսիբը գործածական Κουβάβος = Խումբաբա անունը (տե՛ս Ungnad-Greßmann, անդ, էջ 77 եւ 111), նմանապէս թէ մինչեւ իսկ Յոյներուն հասած է (հմմտ. A. Ungnad, Gilgamesch-Epos und Odyssee [Kulturfragen 4/5] եւ P. Jensen, Gilgamesch-Epos, jüd. Nationalsagen, Ilias und Odyssee [Ex Oriente Lux III, 1]): Իսկ Ber. Gemser, «Odysseus-Utanapištim» (AfO III [1926], 183—185) կը կարծէ թէ Ոդիսեւս եւ Ուտնապիշտիմ նոյն անուններն են, նկատելով մէկ կողմանէ վերջնոյս զանազան ձեւերն, ինչպէս՝ հին բաբելական, ասորեստական եւ հիթիթ. Ul-lu-uš, U-ul-ú եւն ձեւերը (Ullû գուցէ ակկ. ullûm: հեռաւորն է) եւ միւս կողմանէ ալ այն պարագան որ «Ոդիսեւս անուան ստուգութեան մէջ դեռ մ՚իսկ անփոփոխ չէ մնացած. յատկապէս նաւ ձեւը նախապէս կը համարուի, մէկ ծով աստուածներ ալ յանախ կը պատահին, այսպէս Ullušի հետ համաձայնութիւնն այն առանձնակ ակնառու է որ նոյնութեան մը հնարաւորութիւնը կարելի է նկատի առնել. իսկ -ոյշ վերջաւորութիւնը վերջէն կցուած է անհասկանալի փոխ առնուած օտար անունը յունացնելու համար»: Այս մշակու-

Լերան կիրճերուն (?) մէջ առիւծներ սպան-
նեցինք,
Բարեկամս, որ ինծի հետ ամէն դժուարու-
թիւն կրեց եւն.
Անոր վրան հասաւ մարդկային ճակատա-
գիրը:
Վեց ցերեկ ու գիշեր ողբացի իր վրան,
Մինչեւ... Թոյլ չտուի թաղելու զինքը եւն.
[Բարեկամս, զոր կը սիրեմ,] հող [դար-
ձած է],
Էնգիդու, բարեկամս, զոր կը սիրեմ, [հող
դարձած] է»:

Սեպհական օրհասին հեռանկարն արդէն սարսափով կը պատէ նոյն իսկ Գիլգամէշն, ինչպէս ամէն սովորական մարդկային էակը.

«[Մի՞թէ ես ալ անոր նման] պիտի չպառ-
կի՞մ պառկելու,
[Առանց կրկին կանգն]ելու ի յաւիտեանս»
(տող 46 յջ., հմմտ. տ. 115 յջ.):

Արդ կը խնդրէ աստուածուհիէն որ իրեն ալ Ուտ-նափիշտիմին ասնոր ճամբան ցուցնէ, որմէ կ'ուզէր տեղեկանալ թէ ինչպէս կարելի է անմահութիւնն ստանալ: Աստուածուհին նախ զինքը կը զգուշացնէ. «Շամաշ արեւու աստուածէն զատ ոչ ոք բնաւ ծովը կոխած անցած է, բայց մաման-

---

Միջին փոխյարաբերութեանց միջնորդները կը համարի ոչ թէ Փիւնիկեցիներն, ինչպէս յառաջագոյն կը կարծուէր, «այլ փոքրասիական ժողովուրդները»:

ւորապէս վտանգաւոր են մահուան ջրերը, որոնք անդէնական աշխարհին առջեւ իբր խափանարար կանգնած են եւ որոնց մէջէն անցնիլը պարզապէս անկարելի է»: Սակայն եւ այնպէս աստուածուհին կը կարեկցի եւ կ'առաքէ զինքը Ուր-Շանաբիին՝ Ուտ-Նապիշտիմի նաւավարին. ասիկա միայն կրնայ իրեն օգնել, որովհետեւ ասիկա ունի քարէ արկղները. կը յայտնէ նաեւ անոր բնակավայրն անտառին մէջ: Կրկին ու կրկին զուր ջանքերէն ու տառապանքներէն ետքը վերջապէս կը յաջողին նաւավարն ու Գիլգամէշ նեղ շարժական կամուրջի մը միջնորդութեամբ վտանգաւոր մահուան ջրերու վրայէն անցնելու եւ կը հասնին արդէն իրենց վախճանին՝ ծովուն անդէնական եզերքն, ուր երանելի Ուտ-Նապիշտիմ՝ «հեռաւորը» կը բնակի (տող 65—172):

Բնագրէն կարելի չէ եզրակացնել, թէ հոս երանելիներու «երկիր» մը կամ «կղզի» մը հասկնալու է, զուցէ գրեթէ 20 տողի բացն ունէր այս մասին անդրադոյն տեղեկութիւն մը: Մեր հարցի համար աւելի նշանակալից է, որ հոս տրուած է մեկնութիւն մը «գետերու բերան» բացատրութեան, որ ջրհեղեղի զրոյցին մէջ (տախ. ԺԱ., տող 204) իբր բնակավայր Ուտ-Նապիշտիմի յիշուած է: Ըստ այսմ այս ծովը իբր «գետերու բերան» նշանակուած է, այսինքն իբր այն ովկիանոսն, որուն մէջ բոլոր անդէնական գետերը կը թափին — համապատասխան երկրաւոր

ովկիանոսին։ Ամէն պարագային երկրիս վրայ տարածուող ովկիանոսը չի կրնար հասկցուիլ, որովհետեւ Գիլղամէշ արեւադուռին հասնելով արդէն երկրիս ծայրը հասած կ՚ըլլայ եւ անկէ անդրենական աշխարհն անցած է։ Շատ հաւանական է որ այս «գետերու բերանը», զոր մեզի աւանդուած դիցաբանութիւնն անդրենական աշխարհ փոխադրած է, սկզբնապէս ովկիանոսին հետ նոյն էր, որովհետեւ «աստուածներու պարտէզը» մեծ ծովով մը Ուտ-նափիշտիմի կայանէն բաժնելը իրաւացի չ՚երեւար, այլ հակառակէն աւելի պատշաճ է ենթադրել թէ այն տեղ, ուր է աստուածներու բնակավայրը, հոն է նաեւ կայանն երանելիներուն, որոնք աստուածներու դասը փոխադրուած են։ Ըստ այսմ սկզբնապէս Բաբելացիներու պատկերացումներուն մէջ երկու զուգահեռ աշխարհներ պէտք ենք զանազանել. երկիրս կա՛մ բարձր, անհասանելի լեռով մը շրջապատուած է կա՛մ յորդառատ անանցանելի ծովով մը, որոնք սահմանական աշխարհս անդրենականէն կը բաժնեն. ասդին կը բնակին մարդիկ, իսկ անդին աստուածներն ու երանելիները։ Բայց դիցաբանութեան բանաստեղծը դիցային յանդուգն քաջագործութիւնները մեծցնելու համար երկու զուգահեռականներն ալ օգտագործած է եւ այսպէս իրարու վերաբերող աշխարհներ, այնինքն՝ աստուածներու պարտէզն ու երանելիներու բնակավայրը, իրարմէ բաժնած

է [259]։ Այս մեկնութիւններն անկարգ կը դառնան, եթէ բնագրին ina pî nârâti բացատրութիւնը «գետերուն աղբերակունքը» թարգմանուի, որ, ինչպէս վարը (ծնթ. 270) պիտի տեսնենք, Գրէսման ինքնին կ՚ընդունի եւ ատով «երանելիներուն կայանը» Հայաստան փոխադրուած կ՚ըլլայ, ինչպէս Բերոսոս արդէն կ՚ըմբռնէ եւ այսպէս կը վաւերացնէ թարգմանութեանս ճշդութիւնը, մինչ «գետերուն բերան» բացատրութեամբ միայն Պարսկական ծովածոցը կրնայ հասկցուիլ։

Արդ հնարաւո՞ր է այս երկնքի եւ երկրի մէջտեղ գտնուող սահմանալեռն աշխարհագրականօրէն տեղ մը գետեղել։ Գրէսման [260] այն կարծիքն ունի թէ այս դիցաբանական լեռն սկզբնապար անանուն եղած ըլլալու է, սակայն — ինչպէս Գիլգամէշ-դիւցազներգութիւնը կը ցուցնէ — արդէն յարաբերաբար շատ կանուխ Մաշու անունն առած է։ Կ՚ընդունի պէթ հնարաւորութիւնը. «Կրնայ ըլլալ — թէեւ այս ենթադրութիւնն անպայման հարկաւոր չէ — որ անունս աշխարհագրականօրէն որոշ լեռան մը վրայէն փոխ առնուած եւ դիցաբանական սահմանալեռան վրայ փոխանցուած է. սար գիրքի մասին դիւցազներգութիւնս ոչ մի կասկած կու տայ։ Արամհնու. դէպի լեռ տանող ժայռէ դուռն, այն մութ ճամբան, որ փապուղիի նման լե-

[259] Հմմտ. Ungnad-Greßmann, անդ, էջ 163 յջ.։
[260] Անդ, էջ 161։

յան մէջէն կ'անցնի[261], *պատուական քարե-րով լեցուն պարտէզը, մուտացու. Ջրերով ով-կիանոսն երկրիս վրայ տեղ մը գոյութիւն չունին եւ միայն* աստուածներու աշխարհին *մէջ գտնուելու է*[261]: *Դուրս այս կէտին մէջ մեղք օգնել կարենալ Ալեքսանդրի վէպին, որ Գիլգամէշ-դիւցազներգութենէն կախում ու-նենալ կը թուի*[262]. *ասոր մէջ այն լեռն, ուր կը հանգի մեծ Թագաւորն արեւու երկնային պատուհանէն անցնելէն ետքն եւ խաւարի աշխարհը մտնելէն յառաջ, կ'անուանուի* Մասիս, *հին հայկական եւ մինչեւ այսօր Հայոց միջնադարուն՝ Արարատի բարձրա-գոյն լերան գործածական անունն է: Այն հնարաւորութիւնը՝ թէ յետագայ պատմիչ-ներ Մաշու լերնց ծանօթ Մասիսի հետ նոյնացուցած ըլլան, կարելի չէ մերժել». անուններու. նմանութեան արդէն մատնի-չած էին* Lidzbarski, Meißner, Hunnius[263]; *«սակայն շատ մը պատճառներու համար ներելի է ենթադրել՝ թէ երկու անուններն ալ սկիզբէն իսկ նոյն եղած են»:*

*Սակայն հազիւ կարելի է ենթադրել թէ Բաբելոնացիք այս խոր հնութեան շրջանին ու-նեցած ըլլան այսպիսի ընդարձակ աշխար-*

---

261 *Ընդգծումը մերն է:*

262 *Կ'ըսէ էջ* 184. *«Մասու՛ կամ լեռը Գիլ-գամէշ, ինչպէս եւ Ալեքսանդր կ'անցնին* խաւարին լեռները, *որոնց հետ* mons Masius *անունն ամենա-հին ժամանակներէն մինչեւ նորագոյն ժամանակներս կապուած է»:*

263 *Տե՛ս* Ungnad-Greßmann, *անդ*, *էջ* 162, *ծնթ.* 1:

հագրական ծանօթութիւն մը, որ մինչեւ Հայաստանի միջնաշխարհը կարենար հասնիլ: Բայց ընդունելէն ետքը՝ թէ Սարարանի համաձայն հայկական Տաւրոսը Մասիս լեռն է եւ թէ այս լեռնաշղթային վերջին արեւելեան մասը նոյն իսկ Հայերէն Մասիս կ'անուանուի, ինչպէս վերը տեսանք, կարելի չէ ժխտել հաւանականութիւնը թէ նաեւ Մաշու հայկական Տաւրոսի հետ նոյն է: Արդէն այս կարծիքին եկած էի, երբ մեծ զարմանքով տեսայ, որ Lehmann-Haupt ալ վերջերս լոյս տեսած «Հանդէս Ամսօրեայ»ի յոբելինական թուոյն մէջ[264] յօդուածով մը «Ամենահին ծանօթութիւնը Հայաստանի մասին» այս հարցին շուրջ կը խօսի եւ Գրէսմանի հակառակ միեւնոյն կարծիքը կը պաշտպանէ. «Մութ փապուղին Մաշու լերան մէջ, Մասիս լեռն, ասպետներու աշխարհին մէջ փնտռելու չէ, այլ էր եւ է Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող իրականութիւն մը, ինչպէս եւ, առանց ընաւ Գիլգամէշ-դիւցազներգութեան հետ կապակցութեան մէջ դնելու ՙՀայաստան երբեմն եւ հիմա, գործքիս մէջ, հատ. Ա., 1910, էջ. 14 եւ 16, ցուցուցած եմ[265]: Հակառակ մինչեւ հիմայ տի-

---

264 Խ. տարի (1927), թիւ 11—12 (էջ 795 յջք.), որ լոյս տեսաւ 1928ին, երբ ներկայ գործքս իբր քննաճառ արդէն աւարտած էր:

265 Կ'առաջէ դարձեալ Armenien einst und jetzt, Հատ. Բ., Մասն Ա. (1926), էջ 421 յջք., ինչպէս մասնաւորապէս Հատ. Բ., Մասն Բ. վերջաբանին, էջ 834—847. ուր J. Friedländerի Die Chaldirlegende und

րող կարծիքին, ինչպէս հոն ընդարձակ կերպով ներկայացուցած եմ, Մասիս չէ Տաւրոսի լեռնաշղթային աւելի արեւելեան մասին պատկանող լերան մէկ գագաթին (կամ մի այսպիսի խումբի) անուն մը, այլ է հին ուղիղ անունն ամբողջ տաւրոսեան լեռնային դրութեան[266]:

Հայաստանի այս վաւերական խուզարկուն դիւցազներգութեան մէջ նկարագրուած լեռը կարող այս մութ անցքն ուղիղ կերպով կը նոյնացնէ Տիգրիս-փապուղիի հետ, որ Տաւրոս-Մասիսի մէջ կը գտնուի եւ «որուն մէջէն արեւելեան Տիգրիսի կամ Բոհտանսուի գլխաւոր ակնաղբիւրը կը հոսի եւ փաստացի կարելի է ցուցնել որ հին ժամանակ շատ աւելի ընդարձակ տարածութիւն ունեցած է քան այժմ: Նաեւ արեւմտեան Տիգրիսը (Դիարբեքր-սու) երբեմն աւելի երկար ստորերկրեայ ընթացք մ'ըրած է, ինչպէս պատմական-աշխարհագրականօրէն եւ աշխարհախօսօրէն անհերքելի կերպով ապացուցուած է[267]»:

Թէ Մասու հայկական Տաւրոսի հետ նոյն է կը վկայէ նաեւ 10րդ երգին մէջ (տախ. Ժ, տող 50) յիշուած մայրիներու լեռը, որ 5րդ երգին մէջ աւելի մանրամասն կը նկարագրուի: Անոր մէջ (տախ. Ե, տող 6) լեռս

der Alexanderroman գրքի հիման վրայ Կուրանի (ԺԸ. 59 յջք.) զրոյցն ալ նկատի կ'առնէ:

[266] Հանդ. Ամս., 1927, էջ 798 յջ.:

[267] Անդ, էջ 799:

վերջիններուն համաձայն դրախտը հիւսիս կը գտնուի, շատ լաւ կը համապատասխանէ այն զրոյցներուն, որոնք յաճախ Թագաւորներու ծնունդն «անծանօթ լեռներուն», այսինքն դրախտին մէջ եղած կը պատմեն[274]: Վերջինս հիւսիս գտնուած ըլլալու է, որովհետեւ ատոր զուգակշիռ՝ Թագաւորի մանկան ընկեցիկ ըլլալու մասին եղած զրոյցները զմեզ հոն կը փոխադրեն. հոն նորածին արքայազունը փոքր տուփի մը մէջ դրուած Հայաստանի լեռներէն Եփրատի վրայէն դէպի Բաբելաստան լողալով կը հասնի[275]: Անկէ Գրէսման կը հետեւցնէ. «Ինչ որ Հին Կտակարանէն կռահելով կարելի է եզրակացնել, նոյնը տեղական աւանդութիւններով ևս ուղիղ կը ցուցուի՝ այսինքն աստուածներու լերան հիւսիս գտնուելու գաղափարը[276]:

Սակայն բոլորովին անմեկնելի կը մնայ՝ թէ ինչու Գրէսման Մաշու լեռն Արարատի Մասիսին հետ կը նոյնացնէ եւ ոչ թէ Տաւրոս–Մասիոսի հետ: Իր յետագայ մէկ հրատարակութեան մէջ[277] իր նախկին կարծիքն

---

[274] Հմմտ. տեղիքները առ Greßmann, Ursprung der israelitisch-jüdischen Eschatologie, էջ 271: Հոս Թագաւորն իր «որդի Աստուծոյ» կը փառաբանուի:

[275] Տես Սարգոնի ծննդեան զրոյցը Ունգնադի թարգմանութեան մէջ TB (= Altorient. Texte und Bilder zum AT.) I, էջ 79: Ասոր համաձայն աստուածները կը բնակին այն տեղ, ուր Եփրատը կը բխէ:

[276] Gilgamesch-Epos, էջ 114:

[277] «Der Eingang ins Paradies», AfO III (1926), 12, ուր աւելի պայծառ կերպով կը խօսի թէ աստուածներու բնակավայրը՝ դրախտը Հայաստան էր. «Ըստ Ծն. Բ., 10 յջ. դրախտը կը գտնուէր այն տեղ, ուր

եւ կ՚ուզէ այս կերպ արտայայտուելով․ «․․․Դրախտի մուտքին ուր գտնուելին երկար ժամանակէ ի վեր արդէն ճանչցած է Richard Hartmann, թէեւ սա միայն մութ, ստորերկրեայ փապուղին աչքի առջեւ ունեցած է, որուն մէջէն Գիլգամէշ անդի աշխարհ անցեր է իր Ուտ-նապիշտիմ նախահայրը փնտռելու համար։ Այս փապուղիին հետ կապուած են ինչ ինչ զրոյցներ ոչ միայն հին

---

Փիսոն, Գիհոն, Տիգրիս ու Եփրատ հասարակաց ակնաղբիւրէն կը բխին։ Թէեւ Փիսոն ու Գիհոն ապահովապէս կարելի չէ որոշել եւ Տիգրիս ու Եփրատ հասարակաց ակնաղբիւր չունին, սակայն անտարակուսելի է որ այս գրոցը (!) գրախոսը Տիգրիսի ու Եփրատի ակնաղբիւրին կողմերը՝ հետեւաբար Հայաստանի բարձրավանդակին մէջ կը փնտռէ։ Միեւնոյն պատկերը պիտի ենթադրենք Ջրհեղեղի գրոցին (!) մէջ։ Տապանը կը հանգչի Արարատ, լերան վրայ․․․։ Ասոր եւս Բաբելացիներուն ծանօթ էր, մանաւանդ թէ Բաբելացիներէն ծագում առած է (տե՛ս իմ ենթադրութիւն, տես վերը ծնթ. 271)։ Մինչ Եփրատ ու Տիգրիս իբր աստուածներու գետեր, կ՚արժէ, պէտք է որ սանց ակնաղբիւրին տեղն աստուածներու աշխարհին ըլլայ։ Հայաստանի լեռներուն վրայ Թամուզ ու Սարգոն՝ աստուածներու որդիները կը ծնանին. ասկէ եղեգնէ մակոյկով գետնիվար Բաբելոն կը հասնին եւ հոն իրենց Իշտար սիրուհւոյն օգնութեամբ թագաւոր կը կարգուին։ Հակառակ ճամբան կ՚ընէ Ջրհեղեղի հերոսն, որովհետեւ այս դէպքին ոչ թէ աստուածը մարդ կ՚ըլլայ, այլ հակառակէն մարդն՝ աստուած։ Ուտնապիշտիմ կը յափշտակուի ina pî nârâti (տախտ. ԺԱ., 205), այսինքն՝ 'երկու գետերուն աղբերակունքը,։ Թէ այս ուղին իմաստն է, կ՚ապացուցանէ Բէրոսոս, որ յայտնապէս կը յիշատակէ Հայաստան իբր այն տեղն, ուր տապանը հանգչեցաւ եւ Քսիսութրոս 'չէք յաչաց եղեւ,, այսինքն՝ գրաւեր կամ անդի աշխարհ մտաւ։ Եթէ հին գրոյցն 'երկու գետերուն բերանը, կամ Պարսկական ծոցին վայրը կարծած ըլլար, այն ժամանակ Հայաստան բնաւ ասոր տեղը չէր կրնար անցնիլ»։

ժամանակ, այլ նաեւ ներկայիս»: Հետեւաբար իրաւացի է իր երբեմնի կարծիքը՝ «Դէպի լեռ տանող ժայռէ դուռն, այն մութ ճամբան, որ փապուղիի նման լեռան մէջէն կ՚անցնի, ...Երկրիս վրայ տեղ մը գոյութիւն չունին եւ միայն ստուերներու աշխարհին մէջ փնտռելու է[278]» բոլորովին խախտում համարիլ: Ստոյգ է՝ թէեւ Բաբելաստան քաղաքները դեր չեն խաղար, լեռներ բնաւ չեն տեսնուիր, սակայն եւ այնպէս ներեալ չէ ամբողջ իրողութիւնն «ստուերներու աշխարհին» վերագրել, այլ հակառակէն աւելի իրաւացի է ենթադրութիւնը՝ թէ հոս «երեւան կու գան ուրիշ տեղ, ծառ աշխարհ տեսնուած պատկերներ[279]», այսինքն Հայաստան, եթէ ընդհանրապէս Սումերացիք Փոքր Ասիոյ լեռներէն Բաբելաստան չեն գացած, որոնց ազդեցութիւնն զգալի է վերջնոյս վրայ[280]: Հայաստան Բաբելաստանէն այն աստիճան հեռու չէ, որ սոյն աշխարհագրական հայեցողութենէն բոլորովին վրիպէր. ասորեստանեան գաղութը Դիարբեքիրի կողմերն ապացոյց է թէ իր հնութեան շրջանին իսկ Հայաստան բոլորովին անծանօթ երկիր մը չէ եղած:

Դիւցազներգութեան Մաշու լեռան հետ նոյն է Ս. Գրքի ազգահամարին[281] מַשׁ

---

278 Ընդգծումը մերն է. տ. Ungnad-Greßmann, Gilgamesch-Epos, 161:
279 Անդ, էջ 162, ծնթ. 2:
280 Հմմտ. անդ, էջ 114:
281 Ծն. Ժ., 23 եւ Ա. Մնաց. Ա., 17:

(Մաշ) [282], որ կը յիշուի իբր վերջինն Արամայ չորս որդիներուն: Բոխարտի ենթադրութիւնը թէ այս Մաշը նոյն է դաշտականներու. Մասիոս լերան հետ Դելիչ[283] «մեծ ստուգութեամբ» կ'ընդունի եւ կը հասկնայ Տուր-Աբդին լեռն, որուն ստորոտէն կը բխէ Հիրմաս (այսինքն Նահար-Մաս) կամ Mygdonius գետը: Հիներուն Մասիոս լեռը Կիպերտ արդէն նոյնացուցած է Տուր-Աբդինի հետ, որ նաեւ ընդհանուր ընդունելութիւն գտած է: Սակայն վերը (§ 8) տեսանք թէ Մասիոս է Հայոց Սիփան-Մասիսը: Ասով Ս. Գրքի Մաշն եւ դիւցազներգութեանս Մաշուն, որոնց ձայնական նոյնութիւնն ակնյայտնի է, կը նոյնանան նաեւ աշխարհագրօրէն, ուստի բաբելական ջրհեղեղի Նիծիրն ալ — եթէ ունի ընդհանրապէս գոյութեան հիմ մը — աշխարհագրօրէն հոս գտնելու է:

Թէեւ Գիլգամէշ-դիւցազներգութիւնը մէկ կաղապարէ թափուած ըլլալու չէ, ինչպէս կ'ապացուցանեն անոր փոթերն ու կարանները, որոնք տեղ տեղ աւելի կամ նուազ հաւանականութեամբ շօշափելի են[284], սակայն այս սկզբնաբար անկախ նիւթերն այնպէս միաձնաբար ձուլուած են, որ ամբողջ բա-

---

282 Հայերէնը հետեւողութեամբ Եօթանասնից թարգմանութեան երկու տեղն ալ ունի Մոսոք առանց անդրադառնալու որ Հ. 3 արդէն յիշուած է Մոսոք իբր Յաբեթի որդի:

283 Fr. Delitzsch, Wo lag das Paradies, Leipzig 1881, էջ 259. Հմմտ. նաեւ Streck, ZA 13 (1898), 87 = Հայ. Թարգմ., էջ 35:

284 Հմմտ. այս մասին Greßmann, անդ, էջ 200 յջ.:

նաստեղծութեան մէջ միայն մէկ հիմնական գաղափար կ՚ընթանայ, այսինքն մեռնելու հարկադրանքն, որ մարդկութեան վրայ կը ծանրանայ եւ որմէ ոչ ոք կրնայ զերծանիլ եւ հետեւաբար ըմբռնելի է կեանքի՝ անմահութեան ծարաւն, այնպէս որ նախընթացը կրնայ միայն իբր ներածութիւն ծառայել այս հիմնական գաղափարին, որուն մէջ Ջրհեղեղի զրոյցը պարզապէս հիւսուած է:

Ջրհեղեղի զրոյցի ծագման ժամանակի նկատմամբ, որ զմեզ ամէնէն աւելի կը հետաքրքրէ, շատ դժուարին է վերջնական ստուգութեամբ խօսիլը: Մեզի հասած բնագիրն Ասուրբանիպալի (իբր 650ին Ն. Ք.) մատենադարանէն է, որ ապահովաբար բաբելական սկզբնագիր մ՚իրեն հիմ ունի: Շուրիպպակ քաղաքին կործանումը (իբր 3400ին Ն. Ք.) կու տայ մեզի terminus a quoն: Զրոյցին համաձայն այս քաղաքն Եփրատին եզերքը շինուած եւ գետին ողողումով կործանած է: Սակայն գերմանական Արեւելեան Ընկերութեան պեղումներն, որոնցմով Ուտ-Նապիշտիմի ծննդավայրը՝ Ֆարա բլուրին ներքեւ երեւան եկաւ[285], ցուցուցին, թէ անիկա ոչ թէ Եփրատի ողողումով՝ այլ հրդեհով աւեր աւերակ եղած է, ինչպէս մոխրի բարձր խաւէն կը տեսնուի: Բայց որովհետեւ Համուրաբբիի ժամանա-

---

[285] Հմմտ. MDOG (= Mitteil. der Deutschen Orient-Gesellsch. zu Berlin), Nr. 15—17 (Նոյ. 1902—Օգոստ. 1903):

կէն՝ երբ Ն. Ք. 2100էն ի վեր Շուրիպպակ անունը բաբելական պատմութենէն բոլորովին անհետացած է[286], եւ վասն զի ոչ Ասորեստանցւոց գլխաւոր աստուածն Աշուր եւ ոչ ալ Բաբելացւոց Մարդուկը կը յիշուին, ներելի է մեծ հաւանականութեամբ ենթադրել թէ Գիլգամէշ–դիւցազներգութեան մէջ գտնուող Ջրհեղեղի զրոյցին խմբագրութիւնն իր նկարագրական ձեւը Համուրաբբիի ժամանակէն յառաջ ստացած ըլլալու է, հետեւաբար Ն. Ք. 2100 տարին terminus post quem կը կազմէ[287]:

Ա. Գրքի Ջրհեղեղի պատմութեան ժա–

---

[286] Պէտք է միտ դնել, որ Բերոսոս Շուրիպպակ անունը չ՚աւանդեր, այնպէս կը թուի թէ անոր Ջրհեղեղի հերոսը Σίσπαρα = «ի Սիպպարացւոց քաղաքին» (Փրոն. Ա., էջ 36 յծ.) կը բնակի, որովհետեւ հոն է որ նա իր գրութիւնները կը թաղէ: Ըստ այսմ Սիպար կամ Սիպպար պէտք է բոլորովին կորսուած Շուրիպպակի իբր յետագայ փոխանակութիւն մը համարել: Թէ ինչո՞ւ համար ճիշդ ալ Սիպպար գործածուած է, կարելի չէ որոշ ըսել: Նաեւ Սիպպար, ինչպէս Շուրիպպակ, Եփրատի եզերքը կը գտնուէր եւ հաւանաբար, ինչպէս վերջինս, որ հրդեհի աւերածէն ետքը դէթ իբր փոքր քաղաք մը վերաշինուեցաւ, Ելամացիներէն կործանեցաւ, սակայն կրկին ծաղկեցաւ ու նոր պայծառութեան հասաւ: Գուցէ Նաբոնիդի կողմէն Եբաբբարայի արեւու մեհեանին քով կատարուած պեղումներն, որոնք շինութեանց նոր վաւերագրեր երեւան բերին, զրոյցին վրայ ազդած եւ կամ տախտակները թաղելու շարժառիթը տուած են. Հմմտ. Greßmann, անդ, էջ 191, ծնթ. 3: Lehmann-Haupt (Armenien, II, 2. Յաւելուած, էջ 45*) կը համարի Բերոսոսի աղբիւրը համեմատութեամբ Գիլգամէշ–դիւցազներգութեան «փոփոխուած եւ այն կրօնականէս եւ բարոյականէս աւելի զարգացած տեսութիւններ յայտնող» խմբագրութիւն մը (Հմմտ. եւ իր Neue Studien zu Berossos ի Klio XXII, Պրակ 1/2, 1928):

[287] Հմմտ. Greßmann, անդ, էջ 191 եւ 209:

մանակին համար նկարագրական է որ տապանակն իբր «արկղ» մը կամ «սնտուկ» մը կը ներկայացուի, մինչ մեզի հասած բարելական բոլոր ջրհեղեղի զրոյցները «նաւու» մը մասին կը խօսին: Ասոր համար նոյն իսկ Գրեսման կ՚ընդունի՝ թէ «արկղի այս պատկերացմամբ..., իսրայէլեան ըմբռնումին իրօք շատ հին աւանդ մը պահած է[288], որովհետեւ ըմբռնելի է թէ ՙարկղը, յետագային ՙնաւով, մը փոխանակուած ըլլայ, մինչ հակառակ զարգացումը հաւանական չէ[289]»: Այս եզրակացութիւնը կը կարծեմ թէ ներեալ է նաեւ տապանալերան ի նպաստ արժեցնել: Որովհետեւ նոյն իսկ Գրեսմանի տեսակէտին համաձայն չկայ հոս ոչ մէկ պատճառ անդրագոյն բարեփոխութեան. վասն զի չկայ հոս «բարոյական չարժանիթի» մը հարցը, այսինքն «բարոյականութեան» կամ «միաստուածեան» աշխարհայեցողութեան հակառակ եղող «վտանգաւոր» բան մը «հեռացնել» ուզելը: Հետեւաբար սրբազան մատենագիրը պահած է նաեւ տապանալերան սկզբնական հին գաղափարն ու միայն — որպէս զի հաւանաբար ինք զինքը հակասանայի ընէ — կոչած է զայն երկրին բնակիչներուն անունով: Նոյնը կարելի է ըսել նաեւ Բերոսոսի պատմուածքին մասին[290], որուն հա-

288 Ընդգծումը մերն է:
289 Անդ, էջ 220:
290 Պատմուածքին նախնական բնոյթին հաւաստեան համար ներեալ է զուգէ նկատի առնել Քսիսութրոս անունը, այսինքն՝ խսիս-աթրա, որ է աթրա-խա-

մաճայն տապանալեռը Հայաստանի Կորդուաց լեռներէն մին է: Վասն զի իր ժամանակի ըմբռնումով Γορδυαῖα ὄρη անունը կը ներփակէր նաեւ հայկական Տաւրոս-Մասիոն, ինչպէս արդէն վերը տեսանք[291]:

Հետեւաբար կարծեմ իրաւացի է Նիծիր լեռը հոս փնտռելն եւ զայն Մաշու սահմանալեռան, այսինքն Տաւրոս-Մասիոսի հետ նոյնացնելը. իսկ ենթադրութեանս հիմը կը կարծեմ տեսնել նաեւ դիւցազներգութեան բնագրին մէջ: Երբ նաւը Նիծիր լերան վրայ կը դադարի, «Էա աստուածը նաւ կը մտնէ, կը բռնէ Ուտ-նապիշտիմի ձեռքէն եւ ցամաք կը հանէ[292]», այսինքն երանելիներու երկիրը: Այսպէս նա կեցած էր սահմանալերան վրայ եւ չէր կրնար ու ներեալ ալ չէր առանց աստուծոյ մը միջնորդութեան երանելիներու աշխարհը մտնել. եւ այս շատ իրաւացի էր: Զի եթէ «երկերրորդական-աստուածը» Գիլգամէշ չէր կրնար այս բանն ընել[293], որչափ եւս առաւել պարզ մարդ մը, որչափ ալ «բարեպաշտ» եւ «չափազանց խելացի» եղած ըլլար:

Մինչեւ հիմայ ըսուածներէն ակնյայտնի

---

ḫsu = «շատ խելացի» բառին շրջումը. այս Ուտ-նապիշտիմի վերադիրներէն մին էր. տ. Gilgamesch-Epos, տախտ. ԺԱ., տող 196 (էջ 59): Արձանագրութեանց բնագիրներէն ունեցած սոր չեղումներու մասին տ. Greßmann, անդ, էջ 213 յջ.:

[291] Ուրիշ կերպ Greßmann, անդ, էջ 215:

[292] Համմ. տախտ. ԺԱ., տող 114 եւ 198—199:

[293] Համմ. տախտ. Թ. եւ Ժ.:

կը տեսնենք՝ թէ ինչպէս հասկնալու է ԾՆ. Ը, 4 «Արարատ»ն եւ ուր փնտռելու է զայն, միայն հայկական Տաւրոսի լեռնաշղթային մէջ։ Ուրիշ կերպ պէտք է դատել սակայն «Արարատ»ը միւս տեղիքներուն մէջ, ինչպէս Ես. ԼԷ, 38 (Դ. Թագ. ԺԹ, 37) եւ Եր. ԾԱ, 27, որոնք նմանապէս Ուրարտու երկրին կը հային։ Բայց որովհետեւ ասոնք յետագայ եւ տարբեր ժամանակներուն գրուած են, պէտք է միշտ նոյն ժամանակուան Ուրարտուի քաղաքական-աշխարհագրական սահմանը նկատի առնել, որ անտարակոյս աշխարհագրական ընդարձակման եւ անձկացման ենթարկուեցաւ ատեն, ինչպէս յաջորդ հատուածէն կը տեսնուի։

## § 10. ՏԱՊԱՆԱԼԵՐԱՆ ԵՐԿԻՐՆ՝ ՈՒՐԱՐՏՈՒ ԵՒ ԱՆՈՐ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

Ուրարտու[294] կամ Խալդիս («Խալդի-աշխարհ»), ինչպէս բնիկներն իրենց Խալ-

---

[294] Ուրարտուի կամ Ուրաշտուի ստուգաբանութեան մասին տ. R. Bleichsteiner, „Die Subaräer des alten Orients im Lichte der Japhetitenforschung" ի P.-W.-Schmidt-Festschrift (1928), էջ 4, որ ինչպէս Սուբար-տու, նոյնպէս եւ Ուրար-տու անուններուն -տու ածանցն իբր երկիրներու անուն կազմող մասնիկ մը կ'ըմբռնէ։ Այս կը տեսնուի նաեւ եղամերէնի մէջ -տի ձեւով (տու > տի յաբեթական լեզուներուն մէջ յաճախ տեսնուած ձայնափոխութեան համաձայն՝ ինչպէս *Ha-pi-r-ti* < *Haja-pi-r-ti* < *Halla-pi-r-ti* = Եղամ՝ երկրին բնիկներէն տրուած անունն, ինչպէս տակաւին արդի վրացերէնին մէջ. հմմտ. *Rus-e-ti* = Ռուսաստան, *P'rang-e-ti* = Գաղղիա եւն)։ — Ց. Վ. Սանտալճեան յունարէնով կը մեկնէ իբր

դիս [295] գլխաւոր աստուծոյն վրայէն երկիրն ալ կ'անուանէին, իր քաղաքական իշխանութեան գագաթնակէտը հասաւ Ն. Ք. Թ. դարու վերջերը Մենուաս Թագաւորին օրով [296],

---

ուլ-է «չերինք» եւ արուս «բարձունք ած. բարձրացեալք» (Աստրեան. եւ պարսիկ սեպագիր արձանագրութիւնք, էջ 131)։

[295] Նաեւ ժողովրդեան մէջ մի անդամն իբր Խալդիսի պաշտողը Խալդի կ'անուանուէր։ Հետեւաբար աստուածն էր ժողովրդեան ներկայացուցիչն ու անուանադիրը։ Գուցէ միւս աստուածութիւններն ալ հաւասարապէս իբր Խալդինի, Խալդի–աստուածութիւններ (կամ Խալդիսի պաշտպաններ) կ'անուանուէին։ Խալդիսի համար եւ անոր ի պատիւ անդի կ'ունենային ուխտահանդիսութիւններ, կը կատարուէին բազմ շէնքերն ու ջրանցքներն, որոնք Խալդիսի երկրաւոր պաշտպաններուն բարօրութեան համար սահմանուած էին։ Տօսպ–Վան մայրաքաղաքն, այս աստուծոյն կայանը՝ Խալդի–քաղաքն (Խալդինա) է. ամրակուռ բերդեր, նոյն իսկ մայրաքաղաքէն շատ հեռու շինուածները, «Խալդի-քաղաքին դռները» կը համարուէին։ Ուստի ամբողջ պետական յօրինուածութիւնն աստուածպետական վարչաձեւ մ'ունէր եւ բացի Խալդէի ժողովրդէն հազիւ կարելի է յիշել ուրիշ ժողովուրդ մը, որուն քով այս գաղափարն այսպիսի ակներեւ կերպով իրականացած ըլլայ։ Հմմտ. C. F. Lehmann-Haupt, VBGA 27 (1895), էջ 579։ Նոյնը՝ Armenien, Հատ. Բ., Մասն Ա., էջ 164 յջ.։ Խալդի անունը կը ստուգաբանէ J. Karst, Alarodiens et Protobasques, էջ 86, իբր Chalduni կամ Chaldiuni, բառկ. ahaldun կամ -dün < *akhaldun կամ *khaldun եւ տարօրինակ կերպով ասոր արմատին հետ, որ է al, hal, ahal < *akhal = «կարողութիւն, զօրութիւն», աղերսի մէջ կը դնէ հայերէն ծանօթ բարդ բառերն, ինչպէս աշխարհ–ա–կալ. երկր–ա–կալ. ամեն–ա–կալ. վերջինիս հետ կը համեմատէ նոյն իսկ բերբ. amenugal (-qual) = «թագաւոր, վեհապետ» բառը. տ. եւ նոյնը՝ Grundsteine, էջ 6. կարդալ այս տեսութեան մասին տ. եւ Lehmann-Haupt, Armenien, II, 2. էջ 941 յջ.։ Խոյթ = Խալդ նոյնութեան մասին տ. վերը՝ § 7, ծնթ. 214։

[296] Ուրարտական–Խալդի թագաւորներու մասին տ. Lehmann-Haupt, Das urartäisch-chaldische Herrscherhaus, ZA 33 (1920), էջ 27—71. Lehmann-

որ արդէն իսկ գահակից իր Իսպուինիս հօր եղած էր աշխարհակալութեան արշաւանքները դէպի հարաւ՝ տիրապետութեան հետամուտ Ասորեստանցւոց դէմ, ինչպէս Քէլիշինի կիրճին մէջ երկու թագաւորներէն կանգնուած կոթողը կը ցուցնէ[297]: Այսպէս Թոփանդուզի առջեւ գտնուող ժայռէ գուռն, որ խալդի եւ ասորեստանեան պետութեան միջեւ բնական սահման մը կը կազմէր, քաղաքական սահման դարձած էր, որովհետեւ, ինչպէս արդէն Լեման-Հաուպտ[298] իբր ականատես կը հաստատէ, անկարելի է Նինուէէն եւ Արբելայէն հսկայ բանակներով Թոփանդուզի նեղ կիրճի մէջէն անցնիլ: Այս պատճառաւ ալ Մուծածիր, որ աշխարհագրականօրէն Ասորեստանի աւելի մօտ էր, տիրուած էր այնպիսի սերտ կերպով Ուրարտուի կողմնակից ըլլալ, որ Սարգոն

---

Haupt, Armenien, II, 2. էջ 685. որով նախորդ սահմանման (տ. I, էջ 532. II, 1. էջ 24 յյ., 155 եւ 320) անարժէք կը դառնայ: Յ. Սանտալճեան, Ասոր. եւ պարսիկ սեպ. արձանագրութիւնք. Յառաջաբանութիւն (էջ 5—81). Հ. Յ. Տաշեան, Ուսումն դասական հայերէն լեզուի, էջ 383—425: Տես նաեւ վարը՝ ծնթ. 341:

[297] Համմտ. Wald. Belck, Die Kelischin-Stele und ihre chaldisch-assyr. Inschriften, «Anatole», Zeitschrift f. Orientforschung, Heft 1, 1904. Albr. Götze, Zur Kelischin-Stele, ZA 39 (1930), էջ 99—128 խալդի եւ ասորեստանեան լեզուներով (վերջինս սարգոնեան շրջանի գրատառերով), տ. եւ Lehmann-Haupt, Stele und Sockel, Klio 24 (1930), էջ 148—168: Երկրորդ երկլեզուեան արձանագրութիւնն է Տոպզաւէի կոթողը. տ. Lehmann, Zwei unveröffentlichte chald. Inschriften, ZDMG 58 (1904), 815—852. Նոյնը՝ Armenien, II, 1, էջ 288—345:

[298] Armenien, II, 1, էջ 283 յյ.:

ուրարտական Խալդիս աստուծոյն մասին այնպէս կը խօսի իբր թէ Մուծածիրի Աստուած մ'ըլլար. «Անոնք անոր (Թուշպայի կամ Ուրզանայի) աստուածը՝ Խալդիս թագաւորական արտախուրակով զարդարեցին եւ Ուրարտուի արքայական գաւազանն անոր բռնել տուին», եւ դարձեալ. «Որովհետեւ Ուրզանա թագաւորն, որ անոնց (Մուծածիրցիներուն) վրայ կը տիրէ, Աշուրի խօսքին չհնազանդեցաւ, իշխանութեանս լուծը թօթափեց եւ ինծի ծառայելն արհամարհեց, որոշեցի այս քաղաքին բնակիչները գերի տանիլ: Խալդիս աստուածը՝ Ուրարտուի նեցուկը դուրս բերել տուի: Իբրեւ այս տեղւոյն բացարձակ տէրն իր քաղաքին դրան առջեւ կանգնել տուի (այսինքն տաճարէն հեռացնել տուի)...: Իբր իշխանակալ մտայ Մուծածիր, Խալդիսի բնակարանը, իբր տէր Ուրզանայի արքայանիստ պալատին մէջ բնակեցայ»[299]:

Խալդիներու պատերազմական գործառնութիւններն ուղղուած էին գլխաւորաբար դէպի հիւսիս, ուր անոնք Ասորեստանցիներու հետ բախում ունենալէ խոյս կու տային: Մենուաս արդէն հօրը դահակից տարածեց իր աշխարհակալութիւնը մինչեւ Երեւանի դաշտը (գլխաւորաբար հպատա-

---

[299] Thureau-Dangin, La huit. campagne de Sargon, տող 342, 346—348, 350: Ամէն տեղ ուրարտ. Խալդիս աստուածը կ'անուանէ Խալդիա, որ երկրի անունն է:

կեցնելով ճոխոս տէրութիւնը) եւ նուաճեց հիւսիս–արեւմուտք՝ Արածանիի վերեւ գըտնուող երկիրները մինչեւ Եփրատի ակնաղբիւրն եւ աւելի անդին մանաւորապէս Դիաոս (տարբեր. Դայաէնի)[300] երկիրը: Իսկ ասոր որդին Արգիշտիս Ա. Երեւանէն ալ անդին անցաւ եւ մինչեւ Սեւանայ լճին հարաւային եւ հարաւ–արեւմտեան եզերքը յառաջացաւ եւ ասկէ Լենինականի (Ալեքսանդրապոլսոյ) վրայէն Շիրակ կտրելով Կարսի եւ Սարիկամիշի քովէն անցնելով դէպի հարաւ արշաւեց եւ այսպէսով Երեւանի ու Կարսի նահանգներն իր պետութեան հետ միացուց, ինչպէս այս կողմերը գտնուող Ուրարտացիներէն շինուած ջրանցքներէն եւ արձանագրութիւններէն յայտնի կը տեսնուի[301]:

Սաղմանասարի ժամանակ (860—825) Ուրարտացւոց Արամու թագաւորին մայրաքաղաքն էր Արզաշկու(նու)[302]: Ասոր քովերը կը բարձրանան Ադդուրի եւ Երիտիս

---

300 Բեւեռագրերու այս ձեւերուն հետ նոյն կը համարուին դասականներուն Taoi կամ Taoḳoi = Տայք. տ. Lehmann-Haupt, Armenien, II, 2, էջ 792:

301 Ասոր տուեալներու մասին տ. Lehmann-Haupt, Armenien, I, էջ 164 յջ., 168 յջ., 172, 466 յջ. եւ 479 յջ.:

302 ál Ar-za-aš-ku. Սաղմ. Մենաքար, Բ., 48, 52, 54 = KB I, էջ 164 յջ.: — ál Ar-za-aš-kun. Սաղմ. Բալաւաթի Դր. արձ. Բ., 6. Գ., 2: — ál Ar-za-aš-ku-nu. Սաղմ. Նիմր. Կոթ. 43: — ál Ar-su-uš-kun. Սաղմ. Բուլ. Բ. 6. — mât Ar-za-aš-kun. Layard, 13, 5, 6:

լեռները։ Ադդուրիի[303] կիրճերուն մէջ Արամէ Սալմանասարէն կը պարտուի։ Բելք[304] Ադդուրին եւ Ադուրիի՝ հիներուն Ակուրիի կամ Ադդուրիի[305] հետ ունեցած մեծ նմանութեան մասին ընելով հետեւեալ եզրակացութեան կը յանգի. «Ասորեստանցին հարաւէն կուգոյ, ուստի Արրամու կրնար միայն հիւսիսային լեռներուն մէջ ապաստանարան գտնել, իսկ հիւսիսային լեռները արեւելեան կողմէն անմատչելի, Արարատով կը վերջանան։ Արդ՝ չե՞նք կրնար, ինչպէս կը կարծէ Բելք, Ակուրի կամ Ադդուրի անուան մէջ տեսնել՝ Արարատի կամ ամբողջ լեռնաշղթային Ուրարտացւոց քով սովորական եղած այս անուանակոչութիւնը»։ Թէեւ Բելք[306] Երիտխան կը նոյնացնէ Սիփան-դաղի հետ, հարցական նշան մ'աւելցնելով, սակայն այս նոյնացման ճշդութեան մասին չենք ուզեր բնաւ հոս խնդիր ընել, վասն զի այժմ մեր հարցին համար կարեւոր է միայն Արդաշկուի դիրքը։ Պրաշէկ[307] յենլով Բելքի ինչպէս նաեւ Շորէքի[308] գրութեանց վրայ Երասխի հովիտը կը դնէ զայն։ Շորէքի կարծիքն

---

303 *šad Ad-du-ri*. Սարգ. Մենաք. Բ., 49 = KB I, էջ 166։

304 VBGA (= Verhandl. d. Berliner Gesellsch. f. Anthropol.), 1893, էջ 71։

305 Աւելի ուղիղ է՝ Ակոռի, Ղ. Փարպ. կ'անուանէ զայն գեօղն Մասեաց. Հմմտ. Hübschmann, ON, էջ 364 = Հայ. Թրգմ., էջ 251։

306 ZA IX, էջ 351։

307 Prášek, Geschichte, Հատ. Ա., էջ 60։

308 ZA 14 (1899), էջ 111 = Հայ. Թարգմ., էջ 70։

ուելլի պայծառ կերպով կարելի է տեսնել անդրադարձն ալրիչ տեղիքէ մը[309], որուն համաձայն «շատ հաւանական է որ Արարատ = Ուրարտու անունը նախնաբար Վանայ լճին արեւելակողմը՝ Հայաստանի մէկ մասին անունն էր, մերձաւորապէս այն աշխարհամասին, որ մէջէն Երասխը կը բղխէ եւ այսօր ալ Արարատ կը կոչուի. բայց այժմ Վանայ լճին եզերքները Ուրարտացւոց բնակավայր եղած են, վերջիններուն հիւսիս-արեւելքէն յառաջանալովը»: Այս կարծիքին կը հետեւի նաեւ Էդ. Մայէր[310]: Չեն պակսիր գիտնականներ, որոնց համաձայն Ուրարտացիները Արածանիի վերի կողմերէն Վանայ լճին եզերքները գաղթած են, ինչպէս Սանտալճեան[311], որ Արդաշկու(Նաւ) Կարնոյ Արծնի հետ կը նոյնացնէ եւ Բիլլէրբէք[312], որ այն մօղրաքաղաքը Բիւրակն լեռներուն (Բինգեօլ-դաղի) հարաւ-արեւելեան դաւթավին կամ կողին վրայ կը դնէ: Այս կարծիքներէն չի տարբերիր նաեւ Լեման-Հաուպտի

[309] Անդ, էջ 119 = Հայ. Թարգմ., էջ 78:

[310] Ed. Meyer, Geschichte des Altert. (1926), I, 694:

[311] Ասորեստ. եւ պարսիկ սեպ. արձանագր., էջ 14: Նոյնը՝ Histoire, Հատ. Ա, էջ 106. հմմտ. նաեւ էջ 39 յծ., ուր կը խօսի Ուրարտացւոց նախնական բնակավայրի մասին:

[312] A. Billerbeck, Das Sandschak Suleimania und dessen persische Nachbarlandschaften zur babylonischen und assyrischen Zeit (Leipzig 1898), էջ 152. տ. եւ Տաշեան, Ուսումն. դաս. հայ. լեզուի, էջ 387. ծնթ. 1, որ յառաջ բերելով նաեւ Լէնչի եւ Նիկոլսկիի նման կարծիքները ինքն ալ կը միտի Սանտալճեանի տեսութեան:

տեսութիւնն, որուն համաձայն Ուրարտացիները Սաղմանասարի ժամանակ (860—825) «Տիգրիսի փապուղիի հիւսիսային եւ հիւսիսարեւելեան կողմը՝ Արածանիի քովերը կը բնակէին. հոս փնտռելու է Արզաշկուն[313]»: Աւելի վճռական է իր եզրակացութիւնը. «Ամէն պարագային, ինչպէս միշտ չեշտած եմ, արդէն Աշուրնասիրաբաղ Բ.ի որդւոյն՝ Սաղմանասար Գ.ի օրով Արզաշկուն, մեզի ծանօթ ուրարտական ամենահին արքայանիստ քաղաքը, Վանայ լճին հիւսիսային կողմը կը գտնուէր[314]» այն պատճառաբանութեամբ որ Սաղմանասար Արզաշկու կը հասնի «Դայաէնիէն, ուր առաջնորդած էր զինքը Տիգրիսի քարայրէն աղին իր կատարած չուն: Բայց որովհետեւ հիմայ ստոյգ է Դայաէնիի հիւսիսային դիրք մ'ունենալը, որ ժամանակ մը մինչեւ Սեւ Ծով տարածուած է», պէտք է որ Ուրարտուն բնականաբար անոր հարաւակողմն ըլլայ: Իսկ Դայաէնիի մինչեւ Սեւ Ծով տարածուելուն ապացոյց կը

---

313 Armenien, II, 2, էջ 595:

314 Անդ, էջ 851: Այս երկու յառաջբերութեանց մէջ ալ յիշուած Աշուրնասիրբաղ Բ. եւ Սաղմանասար Գ. մինչեւ հիմայ կը նշանակուէին իբր Աշուրն. Գ. եւ Սաղման. Բ., այսպէս յիշատակուած է նաեւ հեղինակը գործքիս նախորդ երկու հատորներուն մէջ, զոր կ'ուղղէ «Յաւելուածներով» (տ. Հատ. Բ., Մասն Ա., էջ 1* եւ Մասն Բ., էջ 40*), որովհետեւ «կարծեցեալ նախորդի մը գոյութիւնը նորագոյն գիւտերով, մանաւանդ թագաւորներու ցանկերու երեւան գալով անհիմն կը դառնայ»: Այս առթիւ անցողակի յիշենք որ եւրոպ. լեզուներու ազդեցութեամբ հայերէնի մէջ ալ ընդունուած Աշուրնասիրբաղի կամ Աշուրնասիրաբաղի ուղիղ տառադարձութիւնը պիտի ըլլար Աշուրնածիր(ա)բաղ:

համարի նաեւ Տիգղաթպիլեսեր Ա.ի յաղթական մէկ արձանագրութիւնն[315], որուն «աշխարհակալութիւնները կը հասնէին Տումմէէն մինչեւ Դայաէնի, Կիրխիէն[316] մինչեւ ՙմեծ ծովը,: Այս եզրակացութիւնը պիտի խախտէր, եթէ Borkին հետ (OLZ 1927, էջ 490) հոս ՙմեծ ծով,ով Վանայ լիճը հասկնալ ուզենք: Բայց այս մասին լուրջ կերպով չի կրնար խօսք ըլլալ», որովհետեւ Եր. Շրադէր[317] «ապացուցած է թէ ՙմեծ ծով, բացատրութիւնը պարզապէս մեր իմաստով իսկական ծովերուն կը յարմարի..., բայց ոչ երբեք միջերկրական լիճերուն»: Ինչ իմաստով ալ հասկցուի ՙմեծ ծով, բացատրութիւնն, մեր առաջիկայ հարցին համար բոլորովին անտարբեր է, սակայն Արդաշկուի գիրքի մասին Հայաստանի այս փաստակաւոր խուզարկուին, ինչպէս եւ նախորդ գիտնականներուն ունեցած կարծիքին անհիմն համարելի է նկատելով հետեւեալ ծանրակշիռ պարագան:

Արամուի երկրորդ մայրաքաղաքն էր Առնէ[318], զոր Սալմանասար (860—825) շրջակայ հարիւր գիւղերուն հետ կը նուաճէ:

---

[315] Հեղինակին Բելքին հետ միասին կատարած գիտական արշաւին դիտերէն մին. տ. Armenien, II, 1, էջ 115 յջ., 761 յջ.:

[316] Կարդա՛ Խարխի. տ. վերը՝ § 6, ծնթ. 165:

[317] Eb. Schrader, Die Namen der Meere in den assyrischen Inschriften, Abhandl. der Berl. Akad. d. Wiss., 1878.

[318] Ar-ni-e, Սալմ. Նիմ. Կոթ. 86. Layard, 15, 31. 46. 18:

«Առնէն է», կը կարծէ Շտրէք[319], «հաւանաբար այսօրուան Առնիսը՝ Վանայ լճին հիւսիս-արեւելեան ծայրին՝ արեւելեան երկայնութեան 38° 58′ 20″ եւ հիւսիսային լայնութեան 43° 28′ 30″ աստիճաններուն վրայ: Այս Առնիս անունը կը տեսնենք նաեւ Սիմէոն եպիսկոպոսին կազմած 1653 տարուայ քաղաքական եպիսկոպոսութեանց ցանկին մէջ եւ այն Վանէն ետքն երկրորդ տեղը[320]: Եւ սակայն դասականներուն քով Վանայ լճին այս Առնէսի վրայէն չի յորջորջուիր, ինչպէս Thospitis limne[321] օրինակին համաձայն կարելի էր սպասել, այլ այսօրուան՝ Առնիսի արեւմտեան կողմը գտնուող աւերակ Արճէշի[322] վրայէն ἡ Ἀρσηνή[323], որ պարզաբանական օրէնքին

---

[319] ZA 14 (1899), էջ 112 = Հայ. թարգմ., էջ 71 յլ.:

[320] Arne = Arna in Urmi. տե՛ս Hoffmann, Syrische Akten persischer Märtyrer, էջ 204:

[321] Ptol. V, 13. 7. VIII, 19, 22. Համմտ. նաեւ Thospites Lacus (Plin. VI, 7. 31), ἡ Θωσπῖτις (Strabo XI, էջ 529. XVI, 1. 21. էջ 746), որ ընդհանրապէս Thospitis կը կարդացուի: Եթէ երբեմն կը թուի թէ դասականներուն Thospitisը Վանայ լճին չի յարմարիր, ինչպէս Պտղոմէոսի քով (V, 12. 8, էջ 945. 2—5. հրտր. C. Müller), այն ժամանակ շփոթուած է Thoëtisի՝ բոլորովին տարբեր անուան հետ, զոր Մարքուարտ Թոսպ յանձ. ձեւը կը համարի. Համմտ. ՀԱ 27 (1913), 525 յլ. = Առանձ. 26 յլ. եւ Streck, ZA 14 (1899), էջ 113 = Հայ. թրգմ., էջ 72 յլ.:

[322] Արաբ. Արճէշ (Բելազ. 198. 194. 200 եւն), յուն. Ἄρζες (Konst. Porphyr., De adm. imp., 191—196). Համմտ. Hübschmann, ON, էջ 329 = Հայ. թրգմ. էջ 195:

[323] Ստրաբոն, ԺԱ., 14. 8, էջ 529. Համմտ. եւ Lacus Aretissa (Plin. h. n. 6. 127): Երկու անգլիացիներու այլ տուած նկարագրութիւնը, մանաւանդ

համաձայն վանկերու յապաւումով եղած ազում մըն է բուն Arsesene («Արճէշի լիճ») ձեւին: Այս պարագային Արճէշ աւելի մեծ նշանակութիւն ունեցած ըլլալու է քան Առնիս: Ուստի բնաւ յանդուգն չէ ենթադրել թէ Արճէշի մէջ ճիշդ Արամուի մայրաքաղաքն՝ Արզաշկու նշմարելու ենք: Հնչաբանական նմանութիւնն ակներեւ է, եթէ վարկեան մը մոռնենք թէ «Ասորեստանցիները չափազանց ճշգրիտ ու խղճամիտ չենք կրնար համարել ընդհանրապէս, երբ ասոնք օտար տեղւոյ անուններ կը տառադարձեն»[324]: ԺԴ. դարուն Ուրարտացւոց բնակավայրը հայկական Տաւրոսի քովն էր, ուստի պէտք եզրակացնենք թէ անոնք ժամանակի ընթացքին դէպի արեւելք տարածուած են նորանոր աշխարհակալութիւններով եւ կամ Ասորեստանցիներուն հարաւ-արեւմտեան կողմանէ կատարած անընդհատ յարձակումներէն խոյս տալու համար ետ քաշուած եւ այսպէս Վանայ լճին արեւմտեան ափէն հիւսիսային եզերքը հաստատուած են ծովը իբր անառիկ պարիսպ ունենալով թշնամւոյն առջեւ:

Հաւանաբար նոյն ռազմագիտական դիտումով Թ. դարուն վերջերը Մենուաս այս-

---

ոյն յիշատակութիւնը թէ լճին մէջ միայն մէկ տեսակ ձուկ կայ, տառեխը կը պատշաճի Վանայ լճին. տե. Lehmann, WZKM 14 (1900), էջ 28, ծնթ. 1. Նոյնը՝ ՀԱ 1927, էջ 800 յջ. Համմ. եւ Մարքուարտ, ՀԱ 1913, էջ 85, ծնթ. 2 = Աքրատայ., էջ 6, ծնթ. 1:

324 Streck, ZA 14 (1899), էջ 112 = Հայ. Թրգմ. էջ 71:

օրուան Վանայ[325] հողին վրայ շինեց Նոր մայրաքաղաքը՝ Տուրուշպա, բնիկներու արձանագրութեանց համաձայն Տուսպա: Տիգլաթպիլեսէրի ձեռքով (747—728) Արգաշկու Խալդիս-քաղաքին կործանումէն ետքն ստիպուած էր Խալդիս աստուածը Ռուսայի ժամանակ վերջնականապէս իր նիստը հաստատել Տուրուշպա-Տոսպ: Թէ մայրաքաղաքին փոխադրութեան ժամանակ ապագայի համար զինուորական-պաշտպանողական տեսակէտներ ալ որոշ դեր խաղացած ըլլալու են, կը սորվեցնէ երկրին տեղագրութիւնը: Որովհետեւ, ինչպէս այս տեղուան շատ լաւ ծանօթ աշխարհախոյզը՝ Բելք կը գրէ[326], ասորեստանեան բանակ մը միայն հիւսիսէն՝ Սիփան-դաղի եւ Վանայ լճի երկայնութեամբ կրնար Վան հասնիլ, կամ նաեւ Ուրմիա լճին արեւելեան եզերքը քերելով, Սարգոնի գործած ուղիով[327], հետեւաբար ոչ ուղղակի հարաւէն, ինչպէս յառաջագոյն կը կարծուէր[328]: Բայց որովհետեւ ուղղակի հիւ-

---

[325] Մինչ ընդհանուր կարծիքը Վան անուան մէջ Բիայնա՝ երկրին հին անունը կը նշմարէ (տ. Eb. Schrader, ZA III (1888), էջ 12 յջ., նոյնը՝ Zur Geogr. des assyr. Reiches, 1890. էջ 330, ծնթ. 1. Streck, ZA 1899. էջ 121 = հայ. թրգմ. էջ 80. Մարքուարտ (Entstehung, էջ 27 յջ.) զայն հին պարսկերէնէն եւ այն այսօրուան Ջաղայի գաւառաբարբառէն յառաջ կը բերէ:

[326] ZA IX, էջ 350 յջ. հմմտ. եւ Lehmann, VBGA 1896. էջ 327. նոյնը՝ Armenien, II, 1. էջ 283 յջ.:

[327] Thureau-Dangin, La huit. camp. de Sargon.

[328] Այսպէս տակաւին Streck, ZA 1899, էջ 114 = հայ. թրգմ. էջ 73:

ասկէն յարձակում մը կարելի էր գործել միայն Վանը պաշտպանող ամրոցներու ամբողջ շղթայ մը նուաճելէն ետքը, ուստի աւելի հաւանական է Բելքին հետ ընդունիլ թէ ասորեստանեան բանակն այս լեռներէն խոյս տալու համար ստիպուած էր ընդարձակ շրջան մ'ընել: Այս մեծ դժուարութեանց պատճառաւ է որ Ասորեստանցւոց թագաւորներէն միայն Տիգղատպիլեսեր Գ. յաջողեցաւ մինչեւ Տուրուշպա հասնիլ, յարձակումով քաղաքը գրաւել եւ իր արքունի պատկերը հոն կանգնել:

Մայրաքաղաքին փոխադրութեամբ ուրարտական պետութեան կայութիւնը տակաւին ապահովուած չէր բնաւ: Արդէն Ը. դարէն ի վեր հնդեւրոպական ազգաց գաղթականութեան ուժեղ հոսանքի մը անձրուայ ալիքները մինչեւ Արարատ երկրին սահմանները կը հասնէին, որով վերջինս երկու սուրի անխուսափելի վտանգը շուտով զգաց: Այս նոր ախոյեանը բնական է որ իր կարգին պիտի դիւրացնէր Ուրարտուի դարաւոր թշնամւոյն տիրապետութեան ծրագրին իրագործումն. եւ իրապէս երբ Ռուսաս՝ Ուրարտուի թագաւորը Կիմմերացիներուն դէմ քալեց ու պարտուեցաւ, Սարգոն անոր բացակայութիւնն օգտագործեց Մուծածիրի Ուրզանա թագաւորին՝ Ռուսասի դաշնակցին հետ հաշիւը մաքրելու համար, որով Ռուսաս, ամէն օգնութենէ զրկուած, անձնասպան եղաւ: Այս տխուր դէպքով ալ Ուրարտացւոց պե-

տութիւնը չկործանեցաւ, այլ պահեց տակաւին իր գոյութիւնը, բայց լոկ իբր Թափարգել պետութիւն մը, որ ապա Հնդեւրոպական Հայոց յարձակման չտոկալով կործանեցաւ, մանաւանդ Հաղիսի ճակատէն (585 Ն. Ք.) ետքը — Ռուսաս Գ. վերջին Թագաւորին օրով:

Սակայն Հայերը չկրցան մէկ հարուածով Ուրարտացիները նուաճել եւ երկիրը գրաւել, այլ ստիպուեցան քայլ առ քայլ յառաջանալ: Ուրարտացիները դէպի հիւսիս ու հարաւ մղուեցան. որովհետեւ Հայերու կողմանէ Ուրարտու երկիրը գրաւուելէն ետքն Ուրարտացիներն իբր «Ալարոդեանք» դեռ երկար ժամանակ կը գտնենք Երասխի հովտին մէջ[329]: Ընդունելով թէ Ուրարտացիներն այս կողմերը բնակած են կը մեկնուի նաեւ այն իրողութիւնն որ միեւնոյն աշխարհագրական անուններ կը յիշատակուին թէ՛ հիւսիս՝ մանաւանդ Այրարատ նահանգին մէջ թէ՛ հարաւ Վանայ լճին եզերքները, դ. օր. Արտիմէդ[330], Մարամատ = Մարմէտ[331], Մարաց մարգ[332], Երուանդաւան[333], Երուանդաշատ[334], Երուանդակերտ[335], Երուան-

---

329 Herod. III, 94· VII, 79:
330 Խորեն. Պատմ., Բ., 65, էջ 199:
331 Անդ, Բ., 46, էջ 173 եւ Գ. Տէր-Մկրտչեան, Անանիա Շիրակացի, Վաղարշապատ, 1896, էջ 15:
332 Անդ, Բ., 46, էջ 172:
333 Անդ, էջ 172,
334 Անդ, Բ., 39, էջ 165 եւն:
335 Անդ, Բ., 42, էջ 167:

գաւառ[336]: Այսպէս նման անուններ կը գտնուին նաեւ Վասպուրական՝ Մարմետ[337], Արտամէտ կամ Արտամատ[338], Երուանդունիք գաւառը[339]: Հետաքրքրական է թէ ինչպէս Արտաւազդ Ազատ Մասիսի վրայ, նոյնպէս ալ Մհեր Վասպուրական նահանգը — Տոսպի կամ Ագռաւաքարի մէջ — շղթայակապ կալանաւորուած է. երկուքն ալ իրենց հայրերուն անէծքով[340]:

Հիմայ հարց կ'ելլէ թէ ի՛նչ ցեղի կը պատկանին Ուրարտացիներն եւ ինչ լեզուախմբի մէջ դասելու է խալդերէնը՝ հարց մը, որ անձուկ կերպով կապուած է քնիկ բեւեռագրերու[341] գոհացուցիչ առեղծման հետ,

---

[336] Աստղիկ, Պատմ. Ա. (Պետերբուրգ 1885), էջ 47, 48:

[337] Մ. Միրախորեան, Նկարագրական ուղեւորութիւն ի հայաբնակ գաւառս արեւելեան Տաճկաստանի, Կ. Պոլիս 1885, Մասն Բ., էջ 278:

[338] Յովհ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, Ա., էջ 13. Թովմա Արծրունի, Ա., գլ. Ը., էջ 54. Գ., գլ. Բ., էջ 130 եւ 131:

[339] Տես Hübschmann, ON, էջ 343 = Հայ. թրգմ. էջ 218:

[340] Այս ընդհանուր կարծիքը՝ թէ Ուրարտու-Արարատ նոյն է, չ'ընդունիր Կարստ (Grundsteine, էջ 148 յջջ.), որուն համաձայն Արարատ–Այրարատ ուրիշ բան չէ, բայց եթէ «ձայնափոխութիւնը հնդկական Aryavartaի < *Airavrat կամ *Airarvat» եւ որ է «ստուգիւ տիեզերային, վերջէն միայն երկրայինի յարմարցուած գաղափար մը... եւ բոլորովին անջատելու է վան-ալարոդեան ազգային անունէն՝ Ուրարտուէն», որ իբր «Ethnikon» յառաջ եկած է *Ur-ḫardu < *Ur-ḫalduէն» եւն. տ. վերը ծնթ. 295:

[341] Ուրարտական պատմութեան ու լեզուին հայոց գրականութիւնը հայերէն եւ օտար լեզուներով մինչեւ 1900ի սկիզբները մանրամասնօրէն ներկայացուցած է Հ. Յ. Տաշեան, Ուսումն դասական հայերէն լեզուի,

որ ապագային վերապահուած է։ Լեման-Հաուպտ[342] կը կարծէ թէ Խալդ-Ուրարտացիները Հարաւ-արեւմուտքէն եւ այն Լի-

---

էջ 294—302 խօսելով (էջ 271—425) Ուրարտացւոց պատմութեան, արձանագրութեանց մեկնութեան եւ լեզուի մասին ընդարձակ կերպով, ուստի կը մնայ յիշել միայն նորագոյնները· C. F. Lehmann-Haupt (in Verbindung mit F. Bagel und F. Schachermeyr), Corpus Inscriptionum Chaldicarum. 2 Liefer. Berlin 1928—1935 (կը պարունակէ 110 արձանագրութիւններ երեք թագաւորներու՝ Սարդուրէն մինչեւ Մենուա ամբողջ)· Lehmann-Haupt, Epigraphisch-Archäologisches aus Georgien und Armenien, WZKM 45 (1938), էջ 161—168 (կը խօսի ի մէջ այլոց 2 իրեն անծանօթ, 3 ընդօրինակին անծանօթ արձանագրութեանց մասին)· J. Meščaninov, Neue chaldische Inschriften, II. Die Inschrift Sardurs in Daškerpi. III. Die Inschrift des Argistis aus dem Dorf Lesk (Kaladjug), AfO VII (1931—1932), 160—164, 263—266· A. Alekperov, Krašenaja keramika Nachičevanskogo kraja i Vanskoje carstvo. Sovetskaja Archeologija 4. էջ 249—263։ Հ. Յ. Տաշեան, Հաթեր եւ Ուրարտեանք-Մատենադարանական ուսումնասիրութիւն (Ազգ. Մատ. ճԼէ), Վիեննա 1934 (էջ 269—292)։ Աւելի պատմութեան կը հայի՝ Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Berlin, Հատ. Ա., 1910· Հատ. Բ., Մասն Ա., 1926, Մասն Բ., 1931· Just. Prašek, Geschichte, Հատ. Ա., էջ 54—80· Б. Б. Пиотровский, Урарту-древнейшее государство Закавказья. Ленинград, 1939· Ա. Խաչատրեան, Հայաստանի սեպ. շրջ. ընդհանուր պատմութիւն, Երեւան 1933։

[342] Armenien, II, 2. գլ. 29 (453—686), նաեւ Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens, էջ 120 յջջ. այս կարծիքին ունի նաեւ Ա. Խաչատրեան (Պատմութիւն, էջ 247 յջջ.), որ Խալդ-Ուրարտուները Սուբարացի կը համարէ, թէեւ ոչ զուտ։ Որովհետեւ «Արի-Միտաննիների շուրջ հազարամեայ իշխանութիւնը եւ Սուբարիին աշխարհակալ իրենց գօրաւոր դրոշմը դրել են նրանց թէ՛ մարմնական տիպի եւ թէ՛ լեզուի վրայ. այսպէս իրենց ամբողջութեամբ մէջ երեւան են գալիս իբր խառնուրդ ժողովուրդ։ Խուրրի-Միտաննիների ու Փոքր-Արմէնների միջեւ՝ Խալդ-Ուրարտուները միջնորդական են կազմում Հայաստանի ազգաբանութեան շղթայի» (Անդ, էջ 274)։

կիսայէն գաղթած են եւ ատոր «որոշիչ պարագան» է անոր տեսութեան համաձայն «ժայռերու մէջ վիմափոր բնակարաններու շինութեան եւ ատոր հետ միասին քարակոփութեան արուեստը»: Այս տեսակէտէ նմանութիւն կը գտնէ ոչ միայն փոքրասիական եւ յունական ժողովուրդներուն, այլ նաեւ Ետրուսկեցիներուն միջեւ: «Խալդիայէն մինչեւ Ետրուսկիա, Հիտիտներէն մինչեւ Նեղոսի երկիրը համանման ժայռերու մէջ վիմափոր բնակարաններու շինութեան արուեստին հայրենիքն ու երկէտն, այսպէս ըսելու համար այս շրջանակին մէջնակէտը ճանչցանք կեդրոնական Փոքրասիան, որուն կլիմայի պայմաններն այս արուեստին զարգացման կը նպաստէին» (Անդ, էջ 676): Հոս կարելի է հետապնդել բուն Լեման-Հաուպտի քաղաքներու աստիճանական զարգացումը, որոնք չնչին աշխատանքով ամենանախնական կարիքները գոհացնելու յարմարցուած են, մինչեւ ժայռերու մէջ շինուած վիմափոր բնակարաններու ամէնէն աւելի զարգացած տիպերը: «Խալդիներու պետութեան բուն կեդրոնը՝ Վանի եւ Վանայ լճին շրջակայքն այս տարրին տիպի նախնական աստիճանները գրեթէ բոլորովին կը պակսին — ապացոյց թէ հոն ժայռերու մէջ վիմափոր բնակարան շինելու արուեստն սկզբնական ու տեղական չէ, այլ Խալդիներն իրենց ներգաղթի ժամանակ միասին բերած են...: Խալդիայի արեւմտեան կողմն այս արուեստը բնիկ է. խալդի

ղեստութեան շրջեզրներն՝ արեւմուտք եւ հիւսիս-արեւմուտք կը ներկայանան արուեստի նախնական ու զարգացման աստիճաններն, որոնք միջնաշխարհին մէջ կը պակսին: Վանի ժայռերուն մէջ շինուած շքեղ վիմափոր բնակարաններն, ինչպէս տեսանք, կը մատնանըշեն յայտնի աղերսներ արեւմտեան Փոքրասիոյ նման շինութիւններու հետ» (անդ, էջ 676):

Արուեստի տեսակէտէ համեմատութեան եզր մը կը կազմէ մետաղագործութիւնն ալ, որուն մէջ նշանաւոր են նաեւ Խալդիները, որ ծանօթ է արդէն Պլինիոսէն[343] եւ այն ոչ պարզապէս իբր անագապղնձի եւ երկաթի վրայ աշխատող արուեստաւորներ, այլ նաեւ ոսկերիչ եւ արծաթագործ: Այս արուեստին կենդանի վկաներն են մինչեւ մեր օրերը հասած անօթներն ու միտալները[344]: Լեման-Հաուպտ այս եւ ետրուսկական արուեստին միջեւ հասարակաց գծերը մատնանշելէն ետքը (էջ 859—887) կ՚եզրակացնէ. «Այս, ինչպէս միւս խալդ-ետրուսկական հասարակաց գծերը կարելի է միայն մեկնել ընդունելով որ ասոնց արեւմտեան Փոքրասիոյ մէջ ունեցած երբեմնի բնակավայրերուն մէջ երկակողմանի դրացիական յարաբերութիւններ տիրած են, ինչպէս դայս Խալդիներու մասին ապացուցինք (վերը՝ գլ. 29, հմմտ. վարը՝ էջ 893

---

343 Nat. hist., VII, 197. 198:

344 Տես Lehmann-Haupt, Armenien, II, էջ 265, 480. 502. 542. 798 յլ.:

մէջ․) եւ Էտրուսկացիներու մասին յատկապէս կը վկայէ Հերոդոտոս»[345]: Նաեւ Հրոզնի Էտրուսկագէտներու համաժողովին առջեւ խօսած ճառին մէջ[346] կ'եզրակացնէ․ «Ըստ այսմ, ինչպէս կ'երեւայ, ամէն բան զմեզ կը մղէ ընդունելու թէ Էտրուսկացիները Փոքրասիայէն Իտալիա եկած են»: Հոս գտնուած մետաղի հարստութիւնն Էտրուսկացիներուն համար խայծ մը կ'ըլլայ Միջին Իտալիա հաստատուելու: Ստոյգ է թէ հոս նախ պղինձն առաջին տեղը գրաւած է եւ յետոյ երկաթը[347]: Խնդրոյ հարց էր թէ երկաթն օգտագործելու ակիզբն ո՞ւր եղած է: Ժամանակ մը Ափրիկէ կը համարուէր, ինչպէս Felix v. Luschan[348], որ իր կարծիքն այսպէս կը ձեւէ․ «Ըստ իս ամենաչնչին տարակոյս իսկ չի վերցներ, թէ նախաքրիստոնէական Բ․ հազարամեակի կէսէն շատ յառաջ արդէն երկաթն Եգիպտոս ծանօթ էր․․․: Բնականաբար կրնայ զարմանալի եւ ոմանց զուցէ նաեւ զժպհի երեւնայ, որ մեր երկաթագործութեան արուեստ՝ ուստի «տեքնիկն», որ մեր ժամանակին այնպէս բնորոշ կնիք մը կը դրոշմէ, խափշիկ Ափրիկէցիներուն, այսինքն՝ «սեւամորթ վայրենիներուն» պարտական ենք․ բայց չեմ տես–

---

345 Կը յիշէ իր Յուն. պատմութիւնն առ Gercke-Norden, III², էջ 102 յջ. ա. Armenien, II, 887:

346 F. Hrozný, Etruskisch und die „hetitische" Sprache, ZA 38 (1929), էջ 180:

347 Տես G. Karo, Die Antike, I (1925), 217․ հմմտ. Fr. v. Duhm, Italische Gräberkunde էջ 147, 190, 210:

348 ZfE 39 (1907), 380:

ներ ուրիշ հնարաւորութիւն մը այս ճշմարտութեան դէմ մաքառելու»։ Սակայն նորագոյն պեղումներով լոյս տեսած վաւերագրերը՝ մանաւանդ հիտիտականները, այս տեսութիւնն անհիմն կը դարձնեն։ Fr. Schachermeyrի համաձայն[349] արեւելեան Փոքրասիա եւ Հայաստան «երկաթի արդիւնաբերութեան տեսակէտէ գերակշիռ նշանակութիւն ունէին, այնպէս որ այս երկիրները նպաստաւոր պայմաններուն մէջ իրենց դրացիներուն հակառակ կրնան նոյն իսկ մենավաճառութեան դիրք մը գրաւել»։ Այս մենավաճառի դիրքը կը գրաւեն իրապէս Հիտիտները ԺԴ. եւ ԺԳ. դարերուն, որոնց Հատտուսիլ թագաւորը կը մերժէ Ռամսէս Բ. (1292—1225) փարաւոնին երկաթի ապսպրանքը քաղաքավարական ձեւով թէ հիմայ տրամադրելի երկաթ չունի, թէեւ տէր էր նա Կիզվադնայի հարուստ երկաթի բովերուն. վերջինս կը փնտռուի Պոնտոսի (Forrer, Bilabel, Schachermeyr, Lehmann-Haupt) կամ Կիլիկիոյ բովերը (Götze, Hrozný)։ Պոնտոս կը ճանչուէր նաեւ դասականներու Խալիբէս՝ մետաղագործութեամբ նշանաւոր ժողովուրդն, որուն անունը Լեման-Հաուպտ

---

349 Materialien zur Geschichte der ägäischen Wanderung in Kleinasien (Abschnitt 5: „Herkunft und Verbreitung des Eisens"). Athenische Mitteilungen 41 (1916), լոյս տեսած 1928ին, էջ 409. Տե՛ս եւ Blinkenberg, Mémoires des Antiquités du Nord, 1925, 191 էջ. հմմտ. Lehmann-Haupt, Armenien, II, 890 էջ.

Հետեւողութեամբ Gutschmidի[350] վաճառականական գործածութեամբ յուն. Χάλυψ (սեռ. Χάλυβος) = «պողպատ» բառէն յառաջ եկած կը համարի եւ այս ժողովուրդը կը նոյնացնէ Խալդիներուն հետ. արդէն Ստրաբոն[351] կը վկայէ թէ «այժմեան Խալդիները հին ժամանակէն ի վեր Խալիւբէս» կ'անուանուէին»: Իսկ Այսլէր[352] կը փորձէ կաւկասեան լեզուի եւ ծագման հիման վրայ մեկնել շատ խնդրոյ նիւթ եղող եւ պղինձ կամ անագապղինձ ցուցնող յուն. բառն, որ է ḫalkos եւ ḫalkeus = «դարբին» (նաեւ ոսկերիչ եւ երկաթագործ): Ḫül-k(hu) կանոնաւոր կաւկասեան «յաղնակէ» կամ ածանցական մըն է, կ'ըսէ Այսլէր, որ իբր այսպիսի կը տեսնուին՝ -ke վրաց., -khe չերք., -k-ua աբխազ., -ḫe միտան. (զ. օր. kaniš-ḫe = «Կանիսի երկիրը», ḫattu-ḫe = «Հատտերէն») եւ -ḫi խալդերէնի մէջ, որ հիմայ լեզ. արձանագրութիւններով ալ կ'ապացուցուի: Ḫal-kos = «պղինձ» եւ ասոր հետ Կրէչմէրի կողմանէ համեմատուած ḫal-ḫe, kal-ḫe = «մութ կարմիր» գոյն՝ կը նշանակէ նաեւ պարզապէս «Խալդիներէն» առացուած: Անցողակի յիշուած ըլլայ, որ Այսլէր Կիկլոպ-

[350] Kleine Schriften, III, 485 յջ., 487:
[351] XII, 3. 18. 19, C. 548. 549. տ. եւ Lehmann-Haupt, Armenien, II, 2, էջ 793 յջք.:
[352] Rob. Eisler, Die „Seevölker"-Namen in den altorientalischen Quellen, Caucasica, Fasc. V (1928), էջ 73—130 (յաջորդ պրակին մէջ հրատարակուելիք շարունակութիւնը լոյս չէ տեսած). տ. նաեւ Lehmann-Haupt, անդ, էջ 930 յջք.:

ներն ալ Խալդի կը համարի նկատելով վերջնոյս «երկինք» (ինչպէս ḫal չախուր․ կաւկ․ լեզուի մը մէջ) նշանակութիւնը:

Այսպիսի տուեալներով Լեման-Հաուպտ խալդիներն ալ «կրետական» կամ «միւկէնեան» մշակութային խմբին մէջ կը դասաւորէ: Այս դրութեան մասին պայծառ տեսութիւն մը կը գտանանք ի մէջ այլոց Հրոզնիի վերջին մէկ գործքով[353], որուն համաձայն ամենահին նախապատմական ժամանակներէն սկսած միշտ նորանոր ժողովուրդներու ներխուժում մը տեղի կ'ունենար Միջագետք Փոքրասիայէն, Հայաստանէն, Կովկասէն, Անդրկովկասէն եւ աւելի անդին կենդրոնական Ասիայէն, որ «մարդկութեան օրօրանն ըլլալ կը թուի» (էջ 49): Այս ժողովուրդներն անդրագոյն բարոյական ալիքներէ մղուած հիւսիսէն եւ հիւսիս-արեւելքէն դէպի հարաւ՝ դէպի Արաբիա եւ գլխաւորաբար Սուէզի նեղ Թումբի վրայէն դէպի Ափրիկէ կը յառաջանան: Նման ուրիշ՝ որոշ ժամանակամիջոցներուն շարժող ժողովուրդներու հոսանք մը կը դիմէ արեւմտեան ուղղութեամբ Փոքրասիոյ, Կիպրոսի եւ Հռոդոսի վրայէն եգէական աշխարհը՝ դէպի Կրետէ, Յունաստան եւ Միջերկրականի աւելի հեռաւոր մասերը (էջ 31 յջ․) եւ այսպէս Սումեր-Աքկադ, Եգիպտոս, Հատտի, Հնդկաստան, Չինաստան եւ Կրետէ կ'ըլլան հնագոյն Արեւելքի եւ

353 F. Hroznŷ, Die älteste Geschichte Vorderasiens, Prag 1940:

հետեւաբար ամբողջ մարդկութեան մշակոյթի կեդրոնները: Ժողովուրդներու այս աշխարհագրական տեղափոխութիւնները պարզապէս բնակավայրերու փոփոխութիւն յառաջ չեն բերած, այլ ամէնէն աւելի սատարած են մարդկութեան մշակութային զարգացման եւ ասոր ծաւալման, որուն ամփոփ պատկերը կը գծէ Հրոզնի[354] հետեւեալ կերպով. «Նորաքարեակի ժամանակ Արեւելք ծագում կ'առնէ ամենահին, նախնական եւ միագոյն խեցեգործութիւնը: Կեդրոնական Ասիա՝ Կասպից ծովու, Պամիրի եւ Ալտայի միջեւ տարածուող աշխարհին՝ արեւմտեան մարդկութեան այս որրանին մէջ կը սկսի թերեւս Նորաքարեակի վերջերն երեւան գալ երիզազարդ խեցեգործութիւնը: Այս աշխարհամասերը բնակավայր են վաչկատուններու եւ կէսվաչկատուններու, որոնք հետզհետէ քանի մ'անասուններ կ'ընտելացնեն եւ գետերու ձորերուն մէջ ու տափաստաններու եզերքներն ամէնէն նախնական երկրագործութեան կը ձեռնարկեն, որ ժամանակի ընթացքին կը զարգանայ: Յետսառնային շրջանին այս աշխարհամասերուն յարատեւ ցամաքումը կը ստիպէ այս ժողովուրդներն ամէն ուղղութեամբ այլուր գաղթելու: Ասով նաեւ զանազան ուղղութեամբ — դէպի արեւմուտք մինչեւ Միջին Եւրոպա, դէպի արեւելք մինչեւ Չինաստան — կը տարածուի իրենց մշա-

[354] Անդ, էջ 153 յջ.:

կոյթն ալ եւ մասնաւորապէս երփնագարդ խեցեգործութիւնն, որ իր գագաթնակէտը կը հասնի Էլամ, Շօշ եւ հիւսիսային Միջագետք:

Կեդրոնական Ասիայէն Կասպից ծովու շուրջը, հիւսիսային Իրան, Հայաստան, Անդրկովկաս եւ Կովկաս կամ Կասպիոս խուժող ժողովուրդները կը ծանօթանան հոս մետաղներու եւ անոնց գործածութեան. կը սկսի Հնաքարեակի շրջանը: Այս մետաղագործային մեծ արհեստանոցին մէջ նախնական մարդկութիւնը կ'անցնէ իր աշակերտութեան տարիները: Հոս կը գտնուին վայրեր, որոնք Կաշ կամ Կուշ կ'անուանուին եւ որոնց անունն այս ժողովուրդներն իրենց անդրագոյն գաղթականութեամբ ամէն կողմ տարած են: Ասոնք են՝ քամեան, սեմական եւ յատկապէս կասպեան ժողովուրդները. Ելամացիները, Կաշեանները, Լուլուբացիները, Գուտացիները, Սուբարայիները-Խուրրիները, Ուրարտացիները, Հաթերը: Այս միջոցին հիւսիսէն՝ Կիրդիզներու տափաստանէն, Ուրալի՝ սումերական Արալի արեւելքէն Սումերացիները — լուրջ խառնուրդ մը հնդեւրոպական եւ ալթայեան տարրերու — Կասպից ծովու հարաւային ափերը կը խուժեն եւ մէկ կողմանէ Ատրպատականի, Անդրկովկասի եւ Սինջարի վրայէն եւ միւս կողմանէ այս Անդրկովկասի, հիւսիս. Ասորիքէ եւ արեւ. Անատոլուի վրայէն Բաբելաստան կը մտնեն, ուր օժանդակութեամբ քիչ մ'աւելի ուշ՝ Ջեմդէտ-Նասր շրջանին (իբր 3200 ն. Ք.)

Հոս գտնող Սեմականներու, Կաշեաններու եւ Ակկադացիներուն՝ սումերական-ակկադեան փայլուն քաղքենի մշակոյթ մը կը ստեղծեն: Այս մշակոյթին նկարագրականն է շատ զարգացած գիւղական մշակոյթ. բարձրագոյն մետաղագործութիւն. պատկերաւոր գիր, որ ապա կատարելագործուելով բեւեռագրերու կ'անցնի եւ աշխարհահայեցողութիւն մը, որ տիեզերքն կլոր կ'ըմբռնէ յենլով աստղաբաշխութեան եւ աստղանշմարութեան վրայ: Այժմ վաւերագրերու հիման վրայ կարելի է ապացուցանել թէ սումերական-ակկադեան մշակոյթն ազդած է Եգիպտական, հիտիտական, ապա Միջերկրականի մշակոյթներուն եւ ամենահին Հնդկական մշակոյթին վրայ: Քիչ մը նուազ զգալի, սակայն եւ այնպէս որոշ են սումեր-ակկադ. մշակոյթին ազդեցութիւնները նաեւ հեռաւոր Չինաստանի վրայ: Սումերական-բաբելական մշակոյթը փարոս մըն է, որուն ճառագայթները առաւել կամ նուազ չափով լուսաւորած են ամբողջ հին ճանաչուած աշխարհը: Գրեթէ նախաքրիստ. Դ. Հազարամեակէն սկսած կը տեսնենք նաեւ առաջին հնդեւրոպականներն իբր աշխատակից մարդկային ամենահին քաղաքակրթութեան: Հին Արեւելքի յաջորդ Հազարամեակները — բացի Ցամաքակողման Ասիոյ (Հիտիտաններու) եւ Եգիպտոսի ունեցած զօրաւոր ազդեցութենէն եւրոպական արուեստին վրայ — կ'ընծայեն պարզ այբուբենական գրի մը գիւտը փիւնիկեցի

գործօն փոքր ժողովրդեան մը ձեռքով, որ իր ժայռոտ ծովեզերքին մէջ ամփոփուելու պատսպարուած Միջերկրականի մէջ հետաւոր նաւագնացութիւններու կը ձեռնարկէ եւ իր այս վաճառականական ճանապարհորդութիւններով նաեւ Եւրոպային կը ծանօթացնէ իր այս փառաւոր գիրը: Եւրոպայի մշակութային, գիտական եւ «տեխնիկական» յառաջադիմութիւնն ամէն բանէ աւելի լատինական պարզ գրին վրայ կը յենու: Ժայռոտ, անբերրի Քանանու մէջ ծագում կ՚առնէ ի վերջոյ նաեւ ամէնէն հրաշալի կրօնքը՝ Քրիստոնէութիւնն, որ իր յաւիտենական վախճանով մարդկութեան հաստատուն բարոյական կարգ եւ ուղղութիւն կու տայ»:

Նկատելով հոս գծուած մարդկութեան մշակութային զարգացման փուլերն անկարելի չէ Սեբաստացիներուն «կրետական» մշակոյթին պատկանելուն ենթադրելով մինչ Լեման-Հաուպտէն յառաջ բերուած տուեալներուն ստուգութիւնն: Ասոնց հետ երբ անդրագոյն ապացոյց կը նկատէ նա Խալդիներու կրօնական ըմբռնումներն եւ այս տեսակէտէ նշանակալից կը համարի ոչ միայն արգասաբերութեան աստուածուհւոյ մը գոյութիւնն, որ «իբր Ռէա, Կիբելէ եւ Մա հին Հայրենի պաշտամունքին, մանաւորապէս հին Փռիգիայի՝ այսինքն Մոգերու աշխարհին մէջ երեւան կու գայ», այլ առանձնապէս «աստուծոյ մը պաշտամունքը, զոր Խալդիները Տէյշեբաս կը կոչեն, մինչ աս իրենց ազգակից Մի-

տաննացիներուն ու Հիտիտներուն քով Տէշուբ կ'անուանուի: Ան իբր փոթորկի եւ օդի աստուած տապարով կը ներկայացուի, որ Հալէպ նոյն է կարիական Լամբրայնդոս Արամազդին հետ, որուն նուիրուած էր Կնոսոսի լաբիւրինթոսը: Այս նուիրական փոքրասիական երկսայրին (յուն. labrys) պաշտամունքին հետ անձուկ կապուած է ցուլի՝ փոքրասիական օդի աստուծոյ նուիրական անասնոյն պաշտամունքն, որ շատ հին է Փոքրասիոյ մէջ. ուստի զարմանալի չէ որ ասոր գլխաւոր լեռը Տարխու անունը կը կրէ, որ սեմ.-հնդեւր. ցուլ բառէն կը յառաջագայի, ինչպէս սեմ. thawru, յուն. tauros, ալ. tur, հին բարձր գերմ. stior, նոր բարձր գերմ. Stier: Այս «ցուլ-լեռը» լեցուն էր տաճարներով՝ նուիրուած այս աստուծոյն եւ ասոր նուիրական անասնոյն: «Այս տեղէն հաւանաբար ցուլի պաշտամունքն ամէն ուղղութեամբ տարածուեցաւ՝ Եգիպտոս, Բաբելոնտան, Հնդկաստան, եգէական աշխարհն եւ աւելի անդին Եւրոպա եւ այն յաճախ նուիրական ցլախաղերու եւ ցլամարտերու ընկերակցութեամբ»[355]: Այս պատճառով Վինքլէր արդէն 1897ին Խալդիները Հիտիտներու, Միտաննացիներու, Մուշքերու եւ Տիբարէնացիներու հետ իբր «Տէշուբ-ժողովուրդներ» մէկ միութեան բերած եւ Խալդինե-

---

[355] Hrozný, անդ, էջ 105:

րու արեւմտեան ծագում ունենալն ընդունած է[356] :

Այս տեսութեան պաշտպան կ՚ըլլէ նաեւ Կրէչմէր. «Այն շահադրդութիւնը, զոր ունինք խալդի խուզարկութեանց մասին, յայնմ կը կայանայ որ Խալդիները կը պատկանին փոքրասիական ժողովուրդներուն, որոնք նախայունական ժողովրդեան ազգակից էին»[357] : Ասոր իբր ապացոյց յառաջ կը բերէ խալդ. ptari = ptolis եւ Ardini = Ardettos, որոնց մասին արդէն գրած է յառաջագոյն[358] : Կ՚անդրադառնայ թէ մշակութային կարեւոր բառը՝ յուն. polis, հին հնդկ. pūr, pura, puri, լիթ. pilis «դղեակ, բերդ» ունի յունարէնին մէջ երկրորդական ձեւ մը՝ համերական-աքայեան ptolis, որուն t չունի իր զուգակշիռը միւս հնդեւրոպական լեզուներուն

---

356 H. Winckler, AOF I, էջ 459, 596: Հաւանական է որ Սարգոնի արձանագրութեան մէջ (Thureau-Dangin, La huit. camp., տող 368) Ուրարտուի դաշնակից Մուծածիրի իբր աստուածները կը յիշուին «Խալդիա (կարդա՛ Խալդիս), անոր (Ուրարտացի՝ Մուծածիրի Թագաւորին) աստուածն եւ Բագբարտու, անոր աստուածուհին». վերջինս հնդեւրոպական է. հմմտ. ռուս. бог = աստուած, հայ. բագին, բագ-աւան եւն:

357 Glotta XVII (1929), էջ 195, գրախօսելով (էջ 194—196), Lehmann-Hauptի Armenien einst und jetzt, Bd. II, 1. Hälfte եւ Corpus Inscriptionum Chaldicarum, 1. Lieferung.

358 P. Kretschmer, Die protoindogermanische Schicht, Glotta XIV (1925), էջ 300—319. տ. մանաւանդ էջ 311 եւ 318. հմմտ. նաեւ Lehmann-Haupt, Armenien, II, 2. էջ 928 յջ. : Գուցէ ուրարտ. Արդինի աստուծոյն անուան հետ կապ ունի նաեւ Արտոս լեռը (Վան-Տոսպի մէջ). տ. Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 254:

մէջ: Սակայն փոքրասիական լեզուներն ունին ptari = «քաղաք» բառ մը, որ ամէնէն աւելի պայծառ կերպով խալդերէնի մէջ երեւան կու գայ. Tušpa-patari, որ, ինչպէս լեման–Հաուպտ նամակով մ'անոր կը հաղորդէ, կրնայ նաեւ -patari կարդացուիլ = Tušpa — Thospia, լիկ. *Ptara* — *Patara*, զոր Ստեփ. Բիւզանդացին patara «անօթ» բառով կը մեկնէ: Իսկ Արդինի՝ խալդի արեւու աստուածութեան անունն Ardettos ատտիկեան տեղւոյ անուան հետ յարաբերութեան մէջ կը դնէ, որ, ինչպէս ծանօթ է, Աթէնքի արեւելեան կողմը գտնուող բլուրի մ'անունն էր եւ կը մեկնէ իբր «արեւու լեռ»: Իսկ Արդէտտոսի աղերսն արեւու աստուծոյ հետ կը հետեւցնէ այն պարագայէն՝ թէ հոն heliaia ատեանին անդամները՝ Հելիոսը, իրենց երդումը կ'ընէին: Կրէչմէր կ'ենթադրէ թէ ասոնք Հելիոսը կ'անուանէին, որովհետեւ Հելիոսին՝ «Աթէնքի երդման աստուծոյն», pantoptesին = «ամենատես»ին «արեւու բլուրին» վրայ իրենց երդումը կ'ընէին: Արդէտտոսը կրնայ այս նշանակութիւնն ստացած ըլլալ, որովհետեւ Աթէնքի արեւելակողմը կը գտնուէր: Բայց որովհետեւ արեւու հնդեւրոպական (*sävel) եւ նախահնդեւրոպական անունները (*ausel, Titan) ուրիշ կերպով կը կոչուին, այս պատճառով ardi ոչ–հնդեւրոպական բառ մ'ըլլալու է: Յոյները Հելիոսի պաշտամունքը գէթ մասամբ նախայունական ժամանակէն ժառանգած ըլլալու են. անոնց

քով Արամազդն՝ երկնային լուսոյ աստուածը նաեւ արեւու աստուածը կը փոխարինէր: Հնդեւրոպական լեզուներու այս մասնագէտն իր այս խուզարկութեան հիման վրայ հետեւեալ եզրակացութեան կը յանգի. «Ուրեմն պէտք ենք երեք ժողովուրդներու խաւ զանազանել. 1. ոչ-հնդեւրոպական խաւ մը. 2. նախահնդեւրոպական խաւն, որ կրետական-միկէնական մշակոյթի շրջանին կ՚իյնայ եւ 3. հնդեւրոպական խաւն, որ Յունաստան գաղթող Հելլէններով կը կազմուի» (անդ, էջ 319):

Այսպէս փոքրասիական լեզուներով կը մեկնէ Կրէչմէր[359] նաեւ ինչ ինչ խալդի թագաւորներու անուններ. օրինակի համար Ispuini (տարբեր. ժամանակագրութեան մը մէջ Uspina) կը մերձեցնէ Euspoena տեղւոյ անուան, զոր կը յիշէ Itinerarium Antonini Մելիտինէէն Սեբաստիա տանող ճանապարհին վրայ եւ զոր Ramsay[360] Պտղոմէոսի Ispaին եւ Պեւտինգերեան Տախ. Hispaին հետ կը նոյնացնէ: *Lut-ipris*, որ է «կիներու տէր» կազմուած է միտան. *ipri* «տէր» եւ *luti* (հմմտ. խալդ. *lu-tu*) «կին», լուվ. *lada* (?) բառերէն: Ռուշա Ա.ի մէկ մականունը՝ *Uědipris*, բաղկացած *Uěd(i)-ipris*, նոյն նշանակութիւնն ունի, վասն զի *u-e-di-a-ni* (Արգիշտիի Կոթողի բնագրին մէջ) տարբերակ

359 Glotta XVII (1929), 195 յջ.:
360 Geogr. of Asia Minor, 67, 71, 275:

մըն է Արգիշտիս Ա.ի տարեգրութեան լւէս ձեւին: Մենուաս անունը կը կապէ Փոքր-ասիա պաշտուած Մէն լուսնոյ աստուծոյն հետ, որուն անուան վրայէն այնչափ յատուկ անուններ կազմուած են. իսկ –ուաս վերջաւորութիւնը կը տեսնուի արդէն Մարսուաս, Ուասուաս եւ այլն անուններուն մէջ: «Ասոր հակառակ խալդի թագաւորներու անուններէն քանի մը հատն աւելի հնդեւրոպական տպաւորութիւն կը ձգեն. Erimenas նուազ փոքրասիական, կ'երեւայ, բայց շատ լաւ յուն. Erimenes մ'ըլլալ, որուն –էս վերջաւորութիւնն –ասի փոխուած է: Argistis խալդ. վերջաւորութիւն մը (-St) կը ցուցնէ, որ խալդերէնի մէջ չի տեսնուիր»: Ուստի հասկնալի է, երբ Այլէր[361] կը գրէ. «Իրապէս ալ պիտի դարմանար եթէ Rusas «կարմիր», Erimenes «երկայնակաց», Argestes «ճառագայթող» յուն. յատուկ անուններու բառարքին մէջ գտնէր»: Ասոնցմէ Լեման-Հաուպտ[362] կ'եզրակացնէ թէ Ուրարտացիներուն քով տիրող՝ վերի խաւին պատկանող հնդեւրոպական տարր մ'եղած է, նմանապէս ծագումով արեւմտաքէն, որ ասոնց Հայաստան գաղթելէն յառաջ արդէն հոն դրութիւն ունեցած ըլլալու է:

Եթէ ընդունուի նոյն իսկ Ուրարտացինե-

---

361 Caucasica, V (1928), էջ 92:
362 Armenien, II, 2, էջ 902:

րէն [364], բայց անկարելի չէ խալդերէնի ազ-գակցութիւնը կաւկասեան լեզուներուն հետ. Ինչպէս Հոմմէլ [365] այս մասին համառօտ խօսելէն ետքը կ'եզրակացնէ. «Ըստ այսմ Խալդիներու լեզուն... ոչ միայն Միտաննի—գաւառաբարբառին մերձաւոր կերպով ազգակից էր, այլ նաեւ այսօրուան կաւկասեան լեզուներուն եւ այն աւելի հիւսիսային քան հարաւային խմբին՝ վրացերէնի հետ». Նմանապէս Հրոզնի [366] խալդերէնը խուրրի եւ միտաննի լեզուներուն շարքին կաւկասեան լեզուներուն ազգակից կը համարի եւ այսպէս ուրիշները [367]: Սակայն հարցը վերջնակա-

---

364 Տես Տաշեան, Հաթեր եւ Ուրարտեանք, էջ 71—94:

365 Fritz Hommel, Ethnologie und Geogr. d. A. O. (1926), էջ 38 յջ.:

366 Hrozný, Die älteste Gesch. Vorderasiens, էջ 111 յջ.:

367 Ուրարտացիներու եւ Վրացիներու եւ կաւկասեան ինչ ինչ ցեղերու հետ ունեցած ազգակցութեան մատնիր ըրած էր արդէն François Lenormant (Lettres assyrologiques, I, 22) եւ այս կարծիքին կը հետեւին Gatteyrias (L'Arménie et les Arméniens, Paris 1882), Theodor Kluge, Studien zur vergleichenden Sprachwissenschaft der kaukasischen Sprachen, I. Die Sprache der urartäischen Inschriften und ihre Stellung im kaukasischen Sprachenkreis, MVAG 12 (1907), պրակ 5: Յաբեթաբանութեան ուղղութեամբ կը գրէ բնականաբար իր այս դպրոցի ներկայացուցիչներէն մին՝ J. Meščaninov, Vydvigaemye, jafetičeskim jazykoznaniem voprosy v oblasti izučenija vanskoj klinopisi. Jafet. sbornik IV (1926), էջ 72—122. J. Meščaninov, Drevnevanskie imena bogov i carej, Jaf. sbornik V (1927), p. 82—101. J. Meščaninov, Chaldovedenie. Trudy O-va Obsledovanija i Izučenija Azerbajdžana No. 10. Baku 1927. J. Meščaninov, Jazyk vanskoj klinopisi.

նապէս չէ լուծուած եւ դժուարին ալ է ցորչափ ուրարտական բեւեռագրերու ամբողջական հրատարակութիւնը լոյս չէ տեսած։

Ուրարտացիներն իբր անկախ ժողովուրդ պատմութեան բեմէն քաշուելէն ետքը բոլորովին չանհետացան. անոնք ոչ միայն իրենց ազդեցութեան կնիքը դրոշմեցին Հայաստանի վրայ[368], այլ ձգեցին նաեւ սերունդներ։ Իբր այսպիսի կը կարծուին հայ նախարարութեանց մէջէն Մանաւազեանց եւ Ռշտունեաց տոհմերն, որոնց առաջինը Մենուաէն[369], եւ երկրորդը Ռուսաէն[370] սերած ըլլալ կը համարուի, թէեւ չկայ պատմութեան մէջ օրինակ մը, որ պետութեան կործանումէն ետքն արքունի տունն իբր նախարարութիւն տակաւին ապրած ըլլայ։ Սա-

---

Akademija nauk SSSR. Leningrad 1935. J. Meščaninov, Die neuen Ergebnisse der chaldischen Forschungen, AfO VI (1930—1931), 201—216: Joh. Friedrich, Zur urartäischen Nominalflexion, ZA 40 (1931), 264—288. Իբր առաջնորդ լեզուի՝ Joh. Friedrich, Einführung ins Urartäische. Grammatischer Abriß und ausgewählte Texte mit sprachlichen Erläuterungen. Leipzig 1933:

368 Նկատենք միայն աշխարհագրական անուններն, որոնք Ուրարտացիներէն մեզի հասած են. տես W. Belck, Zur Geographie Armeniens. „Beiträge zur alten Geographie und Geschichte Vorderasiens", Heft I—II (1901), էջ 45—70. Գ. Ա. Խալաթեանց, O nekotorych geografičeskich nazvanijach drevnej Armenii v svjazi s dannymi vanskich nadpisej. Drevn. Vost. Մոսկուա 1901. J. Meščaninov, Geogr. nazvanija verchovev Araksa po chaldskim nadpisjam, IRAIMK IV, էջ 43—64:

369 Տաշեան, Ուս. Դաս. հայ., էջ 369:

370 Sandalgian, Inscr. cun. urar., p. 413:

կայն այս ենթադրութեան նպաստաւոր է Thureau-Danginի[371] մէկ կարծիքն, որուն համաձայն Ռուսաս է Երիմենայի որդին եւ նոր հարստութեան մը հիմնադիրը. իսկ Լեման-Հաուպտ, որ երբեմն այս կարծիքին հանդէպ ժխտական դիրք բռնած էր, այժմ կ՚ընդունի զՌուսաս եթէ ոչ որդի Երիմենայի, բայց ոչ ալ իբր որդի Սարդուրիս Գ.ի (Մենուայի սերունդէն), այլ կողմնակի գծէն անծանօթ Սարդուրիսի մը. իր կազմած Ուրարտուի թագաւորներուն վերջին եւ միակ վաւեր տոհմածառին մէջ[372] կողմնակի գծին վրայ նա իբր Rusas I Sardurichinis կը ներկայանայ:

Այս վարկածներէն վեր եւ պատմական ստուգաբանութեամբ կրնանք Խալդիներու սերունդ համարել Սոփոկլէսէն[373], Քսենոփոնէն[374] եւ Ստրաբոնէն[375] իբր պոնտական ժողովուրդ յիշուած Ḫaldaia, որոնք հայ մատենագիրներուն քով[376] խաղտիք անունով ծանօթ են: Տակաւին բիւզանդական կայսրութեան ժամանակ Chaldiaն, Սանի. Բիւզան-

[371] La huit. camp. de Sargon, XVIII—XIX. տ. եւ Lehmann-Haupt, Armenien, II, 1. էջ 330 յլ. հմմտ. եւ տաոր դրախօսականը Հ. Գ. Տէր-Պօղոսեանէն, ՀԱ 1927. 350 յլ.:

[372] Armenien, II, 2. էջ 685. տ. նաեւ Nachträge, էջ 40* առ Հատ. Ա., էջ 532:

[373] Steph. Byzantinus, p. 680:

[374] Բիւր. Արշ. Դ., 3, 4. Ե., 5. 17 եւն. Կիւր. Կր. Գ., 1. 34 եւն:

[375] XII, էջ 549 եւն:

[376] Փաւստոս, Դ., ծթ (էջ 179). Խոր. Պատմ. Բ., զ, հզ (էջ 106, 215), Գ., իզ (էջ 313):

դացւոյն բացատրութեամբ «Հայաստանի գաւառ մը», որուն բնակիչները Chaldoi [377] կ'անուանուին, կը կազմէր Տրդ բանակաթեմը (thema)․ այս բանակաթեմին Արաբացիներուն ալ անծանօթ չէր [378]։ Խալդիա իր Արգիրուպոլիս (Գիւմիւշխանէ) մայրաքաղաքով դեռ մինչեւ վերջերս իբր յատուկ եկեղեցական թեմ գոյութիւն ունէր։ Լեման-Հաուպտ [379] կը գտնէ Խալդիներու սերունդն այս տեղ եւ Տրապիզոնի կողմերը, ուր որոշ ժողովուրդ մը խալդ կ'անուանուի եւ այն տարբեր գնչուներէն, թէեւ հասարակ գործածութեան մէջ յաճախ շփոթուած է։ Նախիջեւան-Պայազիտի հարաւակողմը գտնուող Զալդիրան-Չալդիրան, ինչպէս եւ Կարսի եւ ուրիշ տեղեր յիշուած Զալդըր կամ Զըլդըր անունն «իրաւամբ Խալդիներուն հետ աղերսի մէջ կը դրուի» [380]։

Թէ Ուրմիա լճին քովերը գտնուող գիւղերուն Նեստորականներն ալ «մեծ մասամբ Խալդիներու սերունդ են» կ'եզրակացնէ Հայաստանի այս խուզարկուն [381] այն պարագային, որ անոնք իբր ճարտար երկաթագործներ կը ճանչցուին։ Այս կողմերուն բաղ-

---

[377] Այս պատճառաւ Խալդիները (Chalder) պէտք չէ շփոթել Բաբելոնի Քաղդէացիներուն (Chaldäer) հետ. հմմտ. Lehmann, VBGA 27 (1895), 578 ff., Streck, ZA 14 (1899), 122 f. = Հայ. Թրգմ. էջ 81 յլ.։
[378] Հմմտ. de Goeje, ZA 10 (1895), 100։
[379] Armenien, II, 2. 711 ff.
[380] Lehmann-Haupt, անդ, էջ 717։
[381] Armenien, I, 304 ff.

մաթիւ ընտանիքներուն քով տիրող աւանդութեան մը համաձայն ասոնք իրենք զիրենք կ'անուանեն երկաթագործներ, Չալիբ-նին (դամիրճիի) որդիներ (այսինքն՝ այն ցեղին պատկանողներ) եւ կ'ըսեն թէ իրենց նախնիները իբրեւ երկաթագործ Չինայէն կամ Բաղէն եկած են: Եզդիներուն տէրութեան բոլորովին աստուածպետական կազմը կը գտնէ նա Նեստորականներուն մէջ ալ, ինչպէս նաեւ նուաճուած պաշտպանեալ քաղաքացիներուն եղական կազմակերպութիւնը՝ ծանօթ «ռայեա» անունով, որուն նմանը Եզդիներուն քով կը տեսնէ. այսինքն նուաճողութեան առնելով Սալմանասար Գ.ի մէկ պատկերաւոր ներկայացումը[382] կ'ընդունի Եզդիներուն քով երկու բոլորովին տարբեր ցեղեր — բարձրահասակ եւ կարճահասակ — եւ թէ առաջինը հնդեւրոպական խալդիներն են իբրեւ տիրող դասակարգ մը, իսկ երկրորդը ասոնցմէ նուաճուած ժողովրդեան խաւ մը, որ միայն հարկաւորութեան պարագային կը զինուէր եւ պատերազմի կը տարուէր: Ուստի կը մնայ այսպիսի «հնաւանդ յարաբերութեանց իբրեւ մնացորդ եւ շարունակութիւն հասկնալ ու մեկնել» Նեստորականներուն քով տիրող այն տարօրինակ դրութիւնը, որ հինգ ցեղերու քրիստոնեայ տէրերուն նոյն դաւանանքէն հինգ քրիստոնեայ պաշտպանեալ քաղաքացիներ հպատակ են: Այս պարագա-

---

382 Տես Armenien, II, 2, 680 ff., 902:

ները, ինչպէս եւ Նեստորականներուն նոյն իսկ դիմագծին յատկանշերը հաւանօրէն կարծեցնել կու տան թէ «Նեստորականներուն մէջ հին խալդի ժողովրդեան գլխաւոր տարր մը կը ներկայանայ» [383] :

Կորդուացիները հաւանաբար լեզուով ու բարքով Խալդիներու ազգակից ժողովուրդ էին: Կը յիշուին Գդաց (Ջեբել-Ջուդիի քով), Ծաւդէից (Beth Zawdai, Zabdicena) եւ Արզնարզիւն ժողովուրդներուն հետ իբր առանձին քրիստոնեայ ժողովուրդ մը Հայերուն, Վրացիներուն, Աղուաններուն եւ Լփնաց (Դաղիստան) հետ միասին [384]: Յառաջագոյն ընդհանրապէս Կորդուքի մէջ Քուրդ անուան ուրիշ ձեւ մը կը նշմարուէր, մինչեւ որ

---

383 Lehmann-Haupt, Armenien, I, էջ 306. տ. եւ Հատ. Բ., էջ 682:

384 «Ըստ այսմ պատճենի հրովարտակ եհաս յաշխարհն Հայոց, ի Վրաց եւ յԱղուանից եւ ի Լփնաց, ի Ծօդէից եւ ի Կորդուաց, յԱղձնեաց եւ բազում այլ տեղեաց հեռաւորաց, որոց ոչ էին օրէնք երթալ դայն ճանապարհ յառաջ ժամանակաւ: Գունդ կազմէր ի Հայոց մեծաց զազատ եւ զազատորդի, եւ յարքունի տանէ զոստանիկ մարդիկ. ըստ նմին օրինակի ի Վրաց եւ յԱղուանից եւ յաշխարհէն Լփնաց, եւ որ այլ եւս ի կողմանց կողմանց հարաւոյ, մերձ ի սահմանս Տաճկաստանի եւ ի Հռոմոց աշխարհէն եւ ի Կորդուաց եւ ի Գդացն եւ ի Ծօդէիցն եւ յԱրզնարզիւն, որք էին ամենեքեան հաւատացեալք ի մի կաթողիկէ առաքելական եկեղեցի», Եղիշէ, Ա. (էջ 10), տ. եւ Բ. (էջ 39): Այս կտորի ինչ ինչ անուններու աշխարհագրական դիրքի մասին տ. Ստ. Կանայեանց, Անյայտ գաւառներ (Վաղարշ. 1914), էջ 9—46, ուր ի մէջ այլոց կ'ապացուցանէ թէ Արզնարզիւն է Աղձնիքի Արզն գաւառը կրկնանուն ձեւով, որ է հայ. Արզն եւ ասոր. Արզուն, ինչպէս Վանտոսպ (անդ, էջ 17 յջք.):

Martin Hartmann[385] այս հին կարծիքին դէմ յանձնառութեամբ ոգորեցաւ եւ ցուցուց թէ Քուրդերը Կորդուացիներու (Karduhoi, Gordyoi) հետ նոյն չեն, այլ Յոյներէն[386] յիշուած Kyrtioi ցեղին հետ: Վերջինս աւելի կը յիշեցնէ Guti, նաեւ Kuti եւ Gutium[387], Ասորեստանի հիւսիսային եւ հիւսիս-արեւմտեան կողմը[388] գտնուող վաչկատուներու բնակավայր երկրի մ'անունն՝ ուստի նոյն ասոր բնակիչներուն հետ: Վինքլէր[389] այս վաչկատուն ժողովրդեան մասին այսպէս կ'արտայայտուի. «Ինչպէս Բաբելացւոյն եւ Ասորեստանցւոյն համար Խալտին կամ Փոքրասիացին թեթեւամտութեան ու փոփոխամտութեան մարմնացումն է, այսպէս ալ Կուտէացի բառով կ'իմացուի ըմբոստ, աւազակաբարոյ, ճիշդ այնպէս, ինչպէս այսօր նոյն կողմերը Քուրդ անունով կը հասկըցուի[390]»:

---

385 Bohtan (MVAG 1897), էջ 90 յջ.: Այս կարծիքին կը հետեւի նաեւ Nöldeke (Kardu und Kurden: Festschrift f. Kiepert, էջ 78), իսկ երբեմնի կարծիքին հակառակ (Untersuchungen zur Kritik des AT, էջ 148): Տես նաեւ Meyer, GA I, էջ 902:

386 Polyb. V, 52, 5; Liv. 37, 40, 9; 42, 58, 13; Bellius առ Ստրաբ., ժա, 13, 3. ժե, 3, 1:

387 matu Gu-ti-e ki (Rm. III, 103), տ. Streck, Assurbanipal III, էջ 784, որ միաժամանակ մտադիր կ'ընէ թէ սոնց ցեղապետները «Թագաւոր» տիտղոսը կը կրեն, ինչպէս այսօրուան Քուրդերն իրենց գլուխը, ցեղապետը ու գիւղապետը «մելիք» (յատկապէս = թագաւոր) կ'անուանեն (տես, Հաս. Ա., էջ CCCLIX):

388 Հմմտ. § 9, ծնթ. 252:

389 H. Winckler, Die Völker Vorderasiens, AO, I, 1 (1903), էջ 27:

390 Ընդգծումը մեզմէ է:

Լեման-Հաուպտ[391] հին Կորդուացինե-
րու սերունդը կը վերագտնէ այսօրուան Վրա-
ցիներուն մէջ, որոնց բնիկ անունն, որ է
Kartu, Kartul[392] (լին վրական եւ փոքր-
ասիական ծանօթ վերջաւորութիւն մըն է),
ունի ակնառու նմանութիւն Կորդուքի հետ.
որովհետեւ Kardukh — նախատիպարը քսե-
նոփոնեան Kardukh ձեւին — ուրիշ բան չէ,
բայց եթէ Kardu եզակիին յոգնակին՝ հայե-
րէնի վրայէն կերտուած: «Նոյն իսկ գլխաւոր
տարբերութիւնը նուազ ծանրակշիռ է քան որ
կ՚երեւայ. վասն զի վրացերէն ք հնչումն ա-
ռանձնայատկութիւններ ունի, որոնք զայն
դ հնչումին կը մերձեցնեն»: Լեման-Հաուպտ
կը դիմէ նաեւ վրացիներու աւանդութեան,
«որ զիրենք հարաւէն գաղթեցնել կու տայ»
եւ ինչպէս կ՚երեւայ, յարաբերաբար ուշ ժա-
մանակ, եւ առանձնապէս մատնանիշ կ՚ընէ
«վիմափոր բնակարաններուն», որոնցմով
«լի էր երբեմնի Կորդուաց աշխարհն, որոնք
Վարձիէի չինուածքներուն հետ ամենամեծ
նմանութիւնն ունին — անկասկած շարքեր վի-
մափոր բնակարաններու իրարու վրայ բար-
ձրացած բազմաթիւ յարկերով: Վիմափոր
բնակարաններուն այս նախնական ձեւը Խալ-
դիներու բուն երկրին մէջ բոլորովին կը

---

391 Armenien, I, էջ 104 յջ., II, 2, էջ 679:
392 J. Karst (Alarodiens), p. 99 s.), *Kartuli* կամ *Karthveli* անունն ստուգաբանօրէն կը նոյնացնէ *Karduniaš*, *Qalduni*, *Chaldi*, *Kordukh*, *Carduchi* ձեւերուն հետ:

դաշտը, մինչ բնականաբար արեւմուտք, Փոքր Հայքի մէջ, Խալդի տէրութեան շրջավայրները դարձեալ երեւան կու գայ։ Վրացիներու եւ Կորդուացիներու միջեւ եղած առնչութեան հարցն եթէ որոշակի ալ կարելի չէ հաստատել, դէթ աչքի առջեւ պէտք է որ մարդ ունենայ[393]»։

## § 11. ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Մինչեւ հիմայ քննածներէն կը հետեւի թէ Քուրդերու Կորդուացիներու հետ շփոթութիւնը տառադարձական Կորդուք—Ուանդղութեան փոխանցման մէջ որոշ դեր խաղացած է, ինչպէս եւ Ուրարտացիներու-Արարադեանց Արարքի հովիտը մղումն իրենց հին ձգած Արարատ անունով Մասիս—Ուանդղութեան ծայրամասն օժանդակած։

Նախընթաց ուսումնասիրութեամբ կը յուսամ ամբողջ խորութիւնն իր հարցերովը ներկայացուցած ըլլալ, այսինքն թէ Արարատ նաեւ Ծն. Ը, 4 տեղիքին մէջ բնագրերու Ուրարտուն է — անտարբեր թէ իբր լերան կամ երկրի անուն հասկնալու է, երկուքն ալ նոյն բանին կը յանգին — եւ այն թէ հայկական Տաւրոս—Մասիսը կը յարաբերէ, ուր գտանք Ուրարտացիներուն բնակավայրը

---

393 Անդ, էջ 105։ Karst (Alarodiens, էջ 66 յլ.) Վրացիները փոխադական ժողովուրդ մը կը համարի, դէթ անուանս առած իր տուղարանական մեկնութեան համաձայն։

*Ն. Ք. ԺԳ. դարուն համար: Այս լեռնաշղթան իբր տապանալեռ համարուած են քանի մ'աւանդութիւններ, նոյն իսկ Կորդուք-աւանդութիւնն եւ բաբելական ջրհեղեղի զրոյցն. որով-հետեւ դասականներուն* Gordyene *բացատրութեամբ Տաւրոս-Մասիոսն ալ կը հասկըցուէր եւ միայն յետագային է որ այս աշխարհագրական գաղափարին անձկանալով տապանալեռը դէպի հարաւ փոխադրուած է. ասոր նպաստած են նաեւ ինչ ինչ սխալ ստուգաբանութիւններ:*

*Այս եզրակացութիւնը կ'արդարացնէ զմեզ անտեղի համարելու տեղիքիս Մովսէսի հեղինակութեան մասին ոեւէ կասկած. աւելի անտեղի է բնականաբար նոյն բնագրէն անջատել եւ կրտսերագոյն ժամանակի՝ այսպէս կոչուած քաղդէական բնագրին վերագրել: Առաջիկայ գլուխը կը փակեմ Արեւելքի հնագոյն պատմութեան խուզարկութեան համար վաւերական (աշխարհիկ, ոչ-կաթողիկէ) մատենագէտի մը*[394] *խօսքով.* «Վերջերս մասնաւորապէս կարծեցեալ լուսամիտ շրջանակներու մէջ սովորութիւն դարձած է. ամէն բան, ինչ որ Հին Կտակարանն իբր հնագոյն ժամանակի աւանդութիւններ կը յիշատակէ, արհամարհոտ ակնարկով իբր բանդագուշանք մերժել[395]: *Անձնապէս ինծմէ*

---

[394] Arthur Ungnad, Die ältesten Völkerwanderungen Vorderasiens (Kulturfragen, Heft 1), Breslau 1923, էջ 14:

[395] *Ընդգծումը մերն է:*

բոլորովին հեռու է ոեւէ ջատագովական գործունէութիւն եւ կ՚ըսեմ այն, ինչ որ կրնամ ըսել պարզապէս իբրեւ պատմագէտ մը, որ ճշմարտութիւնը կը փնտռէ եւ թոյլ կու տայ համարձակելու այս խնդրոյ մասին դատաստան կազմել, որ սկզբնական աղբիւրներուն քննադատական եւ զուտ առարկայական քննութեան վրայ հաստատուած է: Արդ կը տեսնենք թէ Հին Կտակարանի աւանդութիւնը հին Արեւելքին շատ աւելի լաւ տեղեակ է քան որ ոմանք մօտէ կրնային անցնել[395]»:

## ԳԼՈՒԽ Ե.

# ՄԻՆՆԻ

### § 1. ՄԻՆՆԻԻ ՀԱՐՑԸ ՄԵԿՆԻՉՆԵՐՈՒՆ ՔՈՎ

*Բաբելոնի դէմ աստուածային պատավճիռ գործադրելու համար Երեմիա, ԾԱ, 27 (Եօթան., XXVIII, 27) հրաւէր կը կարդայ բացի Արարատէն նաեւ Մինիին ու Ասքանազին: Այս անուններուն եբրայեցերէն բնագիրն է՝* mamlәkôth arārāt, minni wәaškenaz. *Մինի անունը կը պակսի* երեւութապէս *Եօթանասնից Թարգմանութեան մէջ. βασιλεῖς Ἀραρατ*[1] *παρ᾽ ἐμοῦ καὶ τοῖς Ἀσχαναζαίοις, ինչպէս բնականաբար հայերէնի մէջ այ. «Պատուէր տուր* յինէն *(παρ᾽ ἐμοῦ) Արարատեան*[2] *թագաւորութեան եւ աքանազեան գնդին»: Կ՚ըսենք երեւութապէս, որովհետեւ Եօթանասնից Թարգմանութիւնն ալ ունեցած է իր առջեւ Մինիի անունը, բայց զայն հասկցած է ոչ թէ իբր յատուկ անուն, այլ անձնական դերանուն* min *նախադրութեամբ: Պայծառ է այժմ Արարատ անունը, կը մնայ տակաւին նկատել վերջին երկու անունները:*

---

[1] *Տես այս մասին վերը՝ Գլուխ Ա., ծնթ. 4:*
[2] *Տես վերը՝ Գլ. Ա., ծնթ. 3:*

Որովհետեւ Պեշիտտան եւ Թարգում Մինիի Հայաստան թարգմանած են, շատ մը մեկնիչներ շտապամտեցան այս երկու անունները իրարու հետ աղերսի մէջ դնելու: Նոյն իսկ Armenia անուան մէջ փորձեցին Մինիի կամ Ման անունն իբր ստուգաբանական բաղկացուցիչ մաս մը գտնել: Մինչ Streck[3] «պարզապէս» իբր «ստուգաբանական խաղ մը» կ'որակէ Բոխարտի մեկնութիւնն, որուն համաձայն Armeniaին կը տրուի սեմական ծագում իբր Har-minia, այսինքն Մինիի լեռնաշխարհ, Մուրատ[4] այս շատ հաւանական կը յայտարարէ: Թէեւ նա այս ստուգաբանութեան իբր հիմ չի նկատեր արամերէն *har* բառն, այլ բակտր. *hara* (կամ haraiti), նմանապէս լեռ նշանակութեամբ եւ զոր կը գտնէ — յենլով Spiegelի յառաջբերութեանց վրայ — բազմաթիւ անուններու մէջ, ինչպէս *Ar-bela*, *Ar-burdsch* եւն: Ըստ *Ar-mina* կամ *Arminiya* իբր բարդութիւն մը Հար-Միննի կրկին բառերուն՝ սկզբնաբար նշանակած ըլլալու է Մինիներու լեռնաշխարհ: Այս անուանակոչումը «կը տրուէր նախնաբար միայն մարական-հայկական սահմանալեռներուն մէջ հաստատուած Մինի-Մաննացիներուն — շատ հաւանական է թէ այն ցեղերէն մին, որոնց հետ հայ ժողովուրդը խառնուեցաւ — կամ այն լեռնային

[3] ZA 14 (1899), էջ 145 = Հայ. Թրգմ., էջ 104 յջ.:

[4] Fr. Murad, Ararat und Masis, 18:

երկիրներուն, ուր ասոնք կը բնակէին եւ միայն յետոյ կամաց կամաց այս սահմանա-յեաններուն ետեւը գտնուող Հայաստանի լեռնագաւառներուն փոխադրուելով այս անուանակոչումը Մարերու կողմանէ՝ ընդհանրացաւ»[5]:

Քանի մը մեկնիչներ այս նոյնացումներուն մէջ դեռ շա՛տ յառաջ գացած են: Անոնք նկատելով Ման եւ Վան անուններուն նմանութիւնը հին Մանը Վանայ աշխարհին մէջ կը փնտռէին[6]: Ուստի զարմանալի չէ որ Բոխարտէն ի վեր բազմաթիւ գիտնականներ[7] Մինեին Նիկողայոս Դամասկացւոյն[8], Minyasի հետ համեմատած, նոյն իսկ նոյնացուցած են: Թէ այս նոյնացումն անտեղի է, կը ցուցնէ արդէն Եօթանասնից թարգմանութիւնը: Երբ Գ. դարուն Ն. Ք. Մինիին յիշատակն այն աստիճան անհետ կորսուած էր որ Եօթանասնից թարգմանիչներն իսկ չեն կրցած հասկնալ, ի՞նչպէս կարելի է այսպիսի կենդանի յիշատակ ենթադրել Երկու դար յետոյ ապրող ժամանագրի մը եւ մանաւանդ անոր ընթերցողներուն քով, որ կարենար այս Զ. դարէն (Ն. Ք.) ի վեր անհե-

---

[5] Murad, անդ, էջ 18—19:

[6] Տես այս տեսութեան քանի մը պաշտպաններ առ S. Weber, Ararat in der Bibel, Tüb. ThQSch, 83 (1901), էջ 336 յլ. = Հայ. Թրգմ., էջ 22:

[7] Belck, VBAG 1894, 480· Murad, անդ, էջ 47 յլլ.: S. Weber, անդ, էջ 335 = Հայ. Թրգմ., էջ 20 յլ.: C. Orelli, Der Prophet Jeremia[3], LI, 27 եւն:

[8] Flav. Jos., Antiq. I, III, 6· Euseb. Praepar. evang., IX, II.

տացած ժողովրդեան մը երկրին անուան վրայէն բոլորովին անյայտ լեռան մը դիրքն որոշել: Այս պատճառաւ Արմիեխա անուան յառաջբերութիւնը Հարմիեխայէն կը մնայ միշտ խնդրական եւ նոյն իսկ երբ Ասորիներն ու Թարգում Մինիին Հայաստան կը թարգմանեն, սակայն պատմական վկայութիւն մը չէ, այլ լոկ փորձ մը Մինիին մեկնելու, որ այնչափ արժէք ունի, որչափ տակաւին քննուելիք փաստերն, որոնց վրայ հիմնուած է[9]: Գէթ որոշ արդիւնք մը ձեռք բերելու համար դարձեալ բեւեռագրերուն պէտք ենք դիմել, որովհետեւ Հին Կտակարանը վերոյիշեալ տեղիքին մէջ յիշատակուած անունէն զատ այս մասին ոչինչ կ'աւանդէ:

## § 2. ՄԻՆՆԻ ԲԵՒԵՌԱԳՐԵՐՈՒՆ ՄԷՋ

Ս. Գրքի Մինիին կը համապատասխանէ ասորեստ. բեւեռագրերուն Մաննայի[10] եւ խալդէ արձանագրութեանց Մանա[11]: Այս Մաննայի—Մանն, ինչպէս առանձնապէս

[9] S. Weber, Tüb. ThQSch 1901, էջ 340 = Հայ. թրգմ., էջ 27 յջ.: Արմինիա, Արմանիա = Արմանի, տ. Հ. Ց. Տաշեան, Հաթեր եւ Ուրարտեանք, էջ 343:

[10] Ասորեստ. տեղեկութիւններ Մաննայի կամ Մանի մասին կը յիշատակէ Streck, ZA 14 (1899), 134 յջ. = Հայ. թրգմ., էջ 93 յջ. եւ Thureau-Dangin, La huit. Camp. de Sargon, էջ II—V. Համմտ. նաեւ Streck, Assurbanipal, Bd. I, S. CLXXXIV, ծնթ. 1. Ասարհադդոնի շրջանին համար տ. մասնաւորապէս Klauber, PRT (= Politisch-relig. Texte der Sargonidenzeit), 1913, էջ LVII—LIX:

[11] Տես սոյն մասին տեղիքներ առ Sayce, JRAS, XIV:

Այս շեշտուած է, պէտք է զանազանել Վան-Բիայնայէն[12]: Ո՞ւր կը բնակէին այս Ման-նացիները: Ասորեստ. բեւեռագրերուն համաձայն այս երկիրը կը գտնուէր Ասորես-տանի հիւսիսային կողմը՝ ոչ հեռու մէկ կող-մանէ Ուրարտուէն եւ միւս կողմանէ Մա-րաստանէն: Բելք[13] Մաննացիներուն աշ-խարհը կը դնէ Ուրմիոյ լճին հարաւային, հարաւ-արեւելեան եւ հարաւ-արեւմտեան կողմերը: Անոր գլխաւոր ապացոյցն է Թաշ-Թէփէի (Ուրմիոյ լճին հարաւ-արեւմուտքը) ար-ձանագրութիւնն, որ կը պատմէ Ուրարտա-ցոց Մենուաս թագաւորին կատարած արշաւը Մաննացիներուն դէմ եւ անոր նուաճած երկրին մէջ՝ համանուն ժայռին վրայ պա-րսպի մը շինութիւնը: Աւելի կ'ուզէ Բելք եզ-րակացնել՝ թէ այս աշխարհակալ թագաւորը պատուար ուղղակի Մաննայի-պետութեան սահմաններուն շինած պիտի չըլլայ, այլ աւելի բուն Մանաշխարհի ներսերը կամ կեն-դրոնը:

Սակայն հարց կ'ելլէ՝ թէ արդեօք Ման-նացիները միշտ ա՞յս տեղ կը բնակէին եւ եթէ ոչ, ե՞րբ եւ ո՞ր տեղէն այս կողմերը մտած

---

[12] Sayce, անդ, Մատն 3, 4· Schrader, Zur Geogr. d. assyr. Reiches, էջ 330· Belck, VBAG, 1894. էջ 480· Streck, ZA 14 (1899), էջ 145 = Հայ. Թրգմ., էջ 104 յջ.:

[13] Wald. Belck, Das Reich der Mannäer, VBAG 1894. էջ 480 յջք., այս կարծիքին կը հետեւի նաեւ Friedr. Nötscher, Das Buch Jeremias, 1934. էջ 346 յջ.:

են։ Բայց որովհետեւ մէկ կողմանէ Ասուր-նասիրպալի ժամանակ եւ Սալմանասարի կառավարութեան (860—825) սկիզբները այն երկիրն, ուր վերջէն Մաննացիներուն կը պատահինք, ուրիշ անուններ կը կրէ, եւ մանաւորապէս Ուրմիոյ լճին հարաւային եւ հարաւ-արեւմտեան եզրամասերը իբր Կիրրուրի եւ Զամուա նշանակուած կը գըտնենք[14], իսկ միւս կողմանէ յետագային այս կողմերը Մաննացիներն երեւան կու գան եւ այն իբր չափազանց ուժեղ, պատերազմասէր ժողովուրդ մը, որուն կատարեալ նուաճումն ոչ մէկ ասորեստ. Թագաւորին յաջողած ըլլալ կը թուի, ասկէ կը հետեւի թէ Մաննացիներն այս կողմերուն նախնի բնիկները չեն, այլ յարաբերաբար ուշ ժամանակաշրջանին խուժող աշխարհակալներ։

Թէ ե՛րբ մերձաւորապէս այս ներգաղթը տեղի ունեցած է, կարելի է միայն կռահաբար որոշել Սալմանասարի տարեգրութիւններէն, որ առաջին անգամ կը յիշատակէ Մաննացիներն եւ այն իր կառավարութեան 30րդ տարւոյն՝ 830ի (Ն. Ք.) պատերազմական տեղեկագրութեան մէջ։ Այն տարին կ՚առաքէ Դայեան-Ասուր՝ իր տուրտանը (սպարապետը) հիւսիս-արեւելեան պետութեանց դէմ, որ Զաբ անցնելէն ետքը Հուբուսկիա կը կոխէ եւ ապա Իզիրտուի՝ Մանի Ուդակի անունով Թագաւորին մայրաքաղաքին դէմ

14 Հմմտ. Բէլք, անդ, էջ 482 յջ.։

կը քալէ: Այս արշաւանքը կ՚աւարտի Պարսուայի նուաճումով, որ Բելքի համաձայն Ուրմիոյ լճին արեւելեան կամ աւելի ճիշդ հարաւ-արեւելեան կողմերը փնտռելու ենք: Հետեւաբար Մանի Ուղակիի պետութիւնը կը զետեղէ Խուբուշկիայի եւ Պարսուայի միջեւ: Եւ այս աշխարհամասերը կը համարի այն երկիրները, ուր կը գտնուէին Կիրրուրի եւ Զամուա, որոնք ասորեստ. Թագաւորներուն միշտ նորանոր մտահոգութիւն կը պատճառէին եւ միայն ասորեստ. բանակներուն ասպատակութիւնն էր որ զիրենք կը ստիպէր հարկատուութեան զիջանելու: Ուստի մինչեւ Թ. դարու կէսերը Ասորեստանցիներուն դէպի հիւսիս-արեւելք ուղղուած ամէն արշաւանքներուն ժամանակ այս պետութիւններն ու անոնց իշխանները պարտուող եւ հարկատու Թշնամիներու կարգին մէջ կը գտնենք, եւ երբ սակայն կու գայ ժամանակ մը, երբ ասորեստ. պատերազմական տեղեկագիրներն այլ եւս Զամուա եւ Կիրրուրի չեն յիշեր, այս երեւոյթը կարելի է միայն անով մեկնել, որ անոնք այլ եւս hnli գոյութիւն չունէին, անոնք աներեւութացած էին եւ անոնց տեղը Մաննացիներու մեծ պետութիւնն անցած էր: Ասորեստ. պատերազմական տեղեկագրութեանց մէջ Զամուա վերջին անգամ կը յիշատակուի Սալմանասարէն՝ իր կառավարութեան 4րդ տարւոյն (856 Ն. Ք.) արշաւանքի ժամանակ, ասոր հակառակ Կիրրուրի 857էն, նոյն Թագաւորին կառավարու-

թեան 3րդ տարւոյն արշաւանքի ժամանակ: Հետեւաբար Մաննացիներու ներգաղթը պէտք է 856—830 Ն. Ք. տեղի ունեցած ըլլայ:

Ուսկի՞ց եկան Մաննացիները: Բելք[15] կը կարծէ թէ այս ներգաղթի շարժումն սկսած ըլլայ Ուրմիոյ լճին հարաւային ափին արեւելակողմէն, որովհետեւ եթէ Երասխի կողմերէն եւ Ուրմիոյ լճին հիւսիսային ափին երկարութեամբ կատարուած ըլլար, հարկ էր որ նախ Կիրդան պետութիւնն ջնջուէր, որուն գոյութիւնը սակայն դեռ Սալմանասարի ժամանակ կը վկայուի: Բելքի այս եզրակացութիւնն ամէն տարակուսութենէ ազատ չի համարեր Շտրէք[16], որուն համաձայն «հակառակն ալ կարելի է», ուստի չի ու-զեր Մաննացիներու գաղթականութիւնն Ուրարտացիներու գաղթին հետ պատճառական աղերսի մէջ դնել: Ասոր տեսութեամբ Ուրմիոյ լճին հիւսիսային եւ արեւելեան կողմերը գտնուող ժողովուրդներու հոսանքը Թ. դարու առաջին կէսին դադար առաւ, սակայն այս հոսանքին սկզբնաւորութիւնը շատ հաւանական է որ Ժ. դարուն վերջին տասնեակներէն է, հետեւաբար Կիրդանի առաջին անգամ արձանագրութեանց մէջ յիշատակուելէն յառաջ: Սակայն Շտրէքի այս կարծիքը հիմնուած է այն ենթադրութեան վրայ թէ Ուրարտացիներու նախնի բնակավայրն է

[15] Անդ, էջ 484 յջ.:

[16] ZA 14 (1899), էջ 144 յջ. = հայ. թրգմ., էջ 104:

Երասխի դաշտը եւ Թէ տարբեր· սեպագրերու մէջ անոնք առաջին անգամ Թ. դարուն երեւան կու գան, որ սխալ է[17]։ Մանեան տէրութեան սահմանը կը գծէ Շտրէք[18] իբր կեդրոն նկատելով Ուրմիայի լճին հարաւային եւ հարաւ-արեւելեան մասը, որով կը պարունակէր Ատրպատականէն ալ ինչ ինչ մասեր։ Մանեան ժողովուրդ կը բնակէր նաեւ Սուբիի նահանգին մէջ, որուն մայրաքաղաքն է Ուշքայեա․ Լեման-Հաուպտ հետեւողութեամբ Thureau-Danginի այս Ուշքայեան կը նոյնացնէ Թաւրիզի հետ։ Սարգոն կը պատմէ Թէ Ուրարտացիներն իրենց ձիերը գլխաւորաբար այս Սուբի նահանգէն կ՚ապսպրէին, որով հին պատմական հիմ կը ստանայ Շարդէնի նկարագրութիւնը Թէ Թաւրիզի հարաւային կողմը կը գտնուէին ամէնէն հիանալի արօտավայրերը․ «Հոն կը ճարակէին նահանգին ամենագեղեցիկ ձիերը, իր 3000 Թուով»[19]։

Այս գծուած սահմանին համաձայն Ման կամ Մինի (Մաննայի) ընդհանրապէս տարադայի Հայաստանի ագարակական եւ մեծ մասով նաեւ քաղաքական սահմաններէն դուրս կ՚իյնար։ Շտրէքի վարկածին համաձայն Վանայ գաւառ մը անձուկ իմաստով Մանին պատկանած է, սակայն անոր մեծ մասը նմանապէս Հայաստանէն դուրս կ՚իյնայ։ Հա

[17] Տես վերը՝ Գլ. Ա., § 6 եւ 10։
[18] Streck, Assurbanipal, I, CCCLVII f,
[19] Տես Lehmann-Haupt, Armenien, II, 1, S. 318։

Հայաստան լսելով կը հասկնանք յետագայ Հայաստանն եւ ոչ թէ այն ժամանակուան Ուրարտուն, որուն վեհապետութեան ներքեւ գտնուած է Ման ժամանակ մը: Մանեան տէրութեան պատմութիւնն ունի արիւնահեղ պատերազմներով լեցուն էջեր: Մինչ Ուրարտու–Արարատ, աշխարհակալութեան անյագ մղուած, հիւսիսէն դրացի տէրութեան վրայ կը յարձակէր, հարաւէն Ասորեստան մոլեգին կատաղութեամբ ռազմադաշտ կ՚իջնայ այս խիզախ թշնամւոյն դէմ, որ յանդգնած էր Նինուէի բազմաթիւ հարկատու տէրութիւններու ինչ ինչ երկիրներ իրեն կցել:

Ուրարտուի դէմ կրցաւ Մանի պետութիւնն իր անկախութիւնը պահել: Ծանօթ խալդի արձանագրութեանց մէջ Իզիրտու կամ Զիրտու՝ Մանի մայրաքաղաքին անուան բնաւ չենք պատահիր. ապացոյց թէ Ուրարտու զայն բնաւ չէ նուաճած: Միայն Ասորեստանցիներու անընդհատ յարձակումներուն պատճառով նեղ կացութեան մատնուած՝ ստիպուեցան արեւմտեան զօրագոյն պետութեան հետ միանալ եւ այն՝ Սարգոնի հաւատարիմ Ազայի սպանումէն եւ խայդեակր Բագդատտի թագաւորին գահ բարձրանալէն յետոյ:

Եւ ոչ իսկ այնչափ բախտ ունեցաւ Ման Ասորեստանի դէմ մղած պատերազմներուն ժամանակ: Արդէն Սալմանասարի կառավարութեան 30րդ տարին (830ին) տար տուրտանը տարեկան տուրք — «արջառ ու ոչ-

խարիներ» վճարելու պարտադրեց, որ կը շարունակուէր նաեւ ասոր յաջորդին ժամանակ: Մաննացիներն ամէնէն աւելի կը յիշուին Սարգոնի սեպագրերուն մէջ: Այս ժամանակ կը կազմուի Ասորեստանի դէմ հիւսիսային պետութեանց դաշնակցութիւնը Ուրարտուի առաջնորդութեան ներքեւ, որուն կը զինակցի նաեւ Ման: Այս զինակցութիւնը սակայն չի կրնար խափանել, որ նա Սարգոնէն չպարտուի եւ հարկատու չդառնայ: Այս թագաւորին յաջորդներուն ժամանակ հնդեւրոպական ազգերու հոսանքին յառաջխաղացումը Մաննացիներուն յարմար առիթը կու տայ օտար լուծը թօթափելու: Մասնաւորապէս Ասարհադդոնի ժամանակ կը գտնենք զիրենք օտար ցեղերու հետ միասին, որոնք հիւսիսէն եւ հիւսիս-արեւելքէն Ասորեստանի կը սպառնան, ինչպէս Knudtzoni „Հրատարակած պատգամահարցերէն կը տեսնուի: Ցարատեւ թշնամութիւնները, զորոնք Ման Ասորեստանի դէմ կը ցուցադրէր, հաւանաբար պատճառ եղան որ Ասուրբանիպալ ասոր Ախշէրի[20] թագաւորին հետ պատերազմի բռնուի: Արշաւանքը տեղի

[20] Ախշէրիի հետ կը համեմատուի Ա. Մնաց. է. 10 եբրայեց. բնագրին Ahišahar անունը (հմտ. Աքիսաար). Գեզէնի համաձայն այս անունը կը նշանակէ «Եղբայր առաւօտու», սակայն սեմական ըլլալը տակաւին խնդրական է, եթէ Մաննացիները «արիական ժողովուրդ մը» ըլլան. տ. Streck, ZA 14 (1899), էջ 137, ծնթ. 1 = Հայ. Թրգմ., էջ 96, ծնթ. 1. Նոյնը՝ Assurbanipal, I, CCCLVII. ասոր հակառակ Prášek, Geschichte, I, 130:

ունեցաւ հաւանաբար 660/659ին: Գիշերային արիւնահեղ ճակատի մը մէջ Ասորեստանցիները ջախջախեցին թշնամւոյն ռազմական ուժերը, մտան Ման եւ գրաւեցին բոլոր նշանաւոր քաղաքները, գլխաւորաբար երկու մայրաքաղաքները՝ Իզիրտու եւ Իշտատտու: Այս առթիւ տիրացան նաեւ երբեմնի ասորեստ. հողամասերուն, մասնաւորապէս Գալգիր երկրին, զորոնք Մաննացիները գրաւած էին Ասուրբանիպալի նախորդներուն ժամանակ: Ռազմագիտական այս ձախողանքը յառաջ բերաւ անձայր դժգոհութիւն ժողովրդեան մէջ, որ արիւնահեղ յեղափոխութեան յանգեցաւ. Ախշէրի Թագաւորն սպաննուեցաւ: Անոր որդին ու յաջորդը՝ Ուալլի ստիպուեցաւ Ասորեստանի հետ խաղաղութեան դաշինք կնքել եւ ասոր երաշխաւորութեան համար Թագաժառանգը՝ Երիսիննի իր պատանդ Նինուէ առաքել եւ տարեկան աւելի մեծ տուրք վճարելու պարտաւորուեցաւ: Սակայն անհիմ չէ ենթադրելը՝ թէ այս խիզախ ժողովուրդը՝ թէեւ բոլորովին ընկճուած, կրկին զօրացաւ, երբ Ասորեստան միշտ տկարանալով կործանման ճամբան կը բռնէր, մինչեւ որ Բաբելոն ասոր մահացու հարուածը տուաւ: Ասով կը մեկնուի նաեւ այն պարագան, որ Երեմիա կրնար Ման-Միննիի մէջ տեսնել պետութիւն մը, որ կոչուած էր յաղթական Բաբելոնին ալ տապալել եւ վտանգաւոր դառնալ: Հաւանա-

բար յետոյ հնդեւրոպական ալիք մը վերջ տուաւ Մանի պետութեան[21]:

Հոս անցողակի յիշենք, որ Հայաստանի հետ աղերսի մէջ դրուած է նաեւ Ամովս, Դ, 3: Եբրայեց. բնագրին մէջ կը կարդանք՝ *wəhišlakthenāh haharmônāh*, Վուլգ. projiciemus in Armon, Եօթան. εἰς τὸ ὄρος τὸ Ῥομμάν, միայն տարբերակ մը ունի Ῥεμμαν, ինչպէս հայ. «եւ անկանիցիք ի լերինն Ռեմանայ». Սիմաքոս կը թարգմանէ պարզապէս՝ εἰς Ἐρμενίαν կամ Ἀρμενίαν, այսպէս նաեւ ունի Քաղդէականը ṭūrē harmenī: Յենած այս վերջին թարգմանութեան վրայ կ՚ուզէ Բոխարտ[22] հոս Minni իբր Հայաստանի մաս մը նկատել: Թէ որչափ սակայն այս տեղիքը (Ամ. Դ. 3) Հայաստանի հետ կապ ունի, դժուարին է որոշել: Նոյն իսկ նորագոյն ժամանակի մասնագէտներն այս հարցը լուծելու ժամանակ իրարմէ շատ կը

---

[21] Մանի պետութեան մասին տ. Streck, ZA 14 (1899), էջ 134 յջք. = հայ. թրգմ., էջ 93 յջք., Streck, Assurbanipal, I, էջ CCCLVII յջ., S. Weber, Tüb. ThQSch 1901, էջ 346 յջք. = հայ. թրգմ., էջ 36 յջք.: Հարց է թէ ինչ ցեղի կը պատկանէին Մաննացիները. Prášek (Geschichte, I, էջ 120, 129 յջ.) կը նոյնացնէ զանոնք *ummân Manda*-ի հետ մեկնելով Ման-դա իբր «Ման աշխարհ» (այսպէս նաեւ Hommel, Geschichte, էջ 221, 402), մինչ Շտրէք (Assurbanipal, անդ) «շատ մեծ հաւանականութեամբ արիական ժողովուրդ մը» կը համարի. Հմմտ. նաեւ ZA 15 (1900), էջ 355, ծնթ. 3. Assurbanipal, I, էջ CCCLXXVI, ծնթ. 1:

[22] Հմմտ. A. Legendre, Dictionnaire de la Bible (F. Vigouroux) տես Armon.

տարբերին, այնպէս Սելլին[23] hērmônāh իր Բասանի լեռ, մինչ Կրամէր[24] այս տեղիքի համար կ'ըսէ. «Վերջին նախադասութիւնը կարելի չէ հասկնալ»: Սակայն ինչպէս հանգուցեալ ուսուցիչս՝ Ուսուցչապետ Ն. Ծյեօղլ ժամանակին բերանացի հաղորդած էր, այս համարն երկրի հետ բնաւ կապ չունի, այլ հետեւեալ կերպով կարդալու է. *ubiphrāʿim thuʿēnāh išāh nēgdāḥ uhăšəlakthēn mehāʿarmənôth*, «Խրամատներու մէջէն պիտի անցնիք, ամէն մէկն իր առջեւէն, բերդերէն պիտի արտաքսուիք»:

---

23 E. Sellin, Das Zwölfprophetenbuch (1922), էջ 179 յջ.:

24 K. Cramer, Amos (1930), էջ 35 յջ.:

## ԳԼՈՒԽ Գ.

# ԱՍՔԱՆԱԶ

### § 1. ԱՍՔԱՆԱԶ-ԱՇՔԵՆԱԶ-ԱՇԳՈՒԶԱՅԻ- (ԿԱՄ ԻՇՔՈՒԶԱՅԻ-) ՍԿԻՒԹԱՅԻՔ

*Հիւսիսէն Բաբելոնին սպառնացող երրորդ թշնամին կ՚անուանէ Երեմիա* Ասքանազ, *եբր.* אַשְׁכְּנַז (*aškənaz*), *եօթն.* *Ασχανάζεοι*, *վուլգ.* *Ascenez*. *որ ազգահամարին*[1] *մէջ իբրեւ Գամերի առաջին որդի կը յիշատակուի: Այն աղերսէն, զոր կը տեսնենք մէկ կողմանէ Հերոդոտոսի քով Կիմերացիներու եւ Սկիւթացիներու, միւս կողմանէ բեւեռագրերու մէջ* Gimirrai *եւ* Ašgûzai (*կամ* Iškûzai), *Հին Կտակարանին մէջ Գամերի եւ Աշքենազի միջեւ, կը հետեւի արդէն թէ Ասքանազ — Աշքենազ = Աշգուզայի (Իշքուզայի) = Սկիւթացիներ նոյն են*[2]: *Շատ մը մասնագէտներու կարծի-*

[1] *Ծն.* Ժ., 3. *Ա. Մն.* Ա., 6:

[2] *Աշքենազ—Աշգուզայի ձեւերու տառադարձութեան մասին տե՛ս* Jos. Karst, Alarodiens, 64 *եւն.*, E. Blochet, *որուն համաձայն Ծննդոց գիրքը իրր թէ բոլոր ալտայեան ժողովուրդները Գամերէն սերած կ՚ենթադրէ* (ROC = Revue de l'Orient Chr., 28 [1931—1932], *էջ* 412), *Աշքանազի* ազ *մասնիկը կը համարի ալտայեան յոգնակի շինող ձեւն, ինչպէս*

քով այս անունը «Աստուածաշունչի մէջ գրչագրական սխալով Աշքենազի (אַשְׁכְּנַז փոխանակ אשכוז ձեւի) վերածուած է [3]» եւ կ'ուզեն Ն (נ) ով (ו) փոխելով կարդալ Աշքուզ, որմէ յունարէնին մէջ կրնար Σκύθης ըլլալ: Իսկ ասորեստ. եւ եբր. լեզուներուն մէջ տեսնուած այս անունին յառաջադիր ձայնաւորը կը մեկնուի անով որ սեմական ժողովուրդները դժուարաւ կրնան բառասկիզբը կրկին բաղաձայն արտասանել: Այսպիսի յառաջադիր ձայնաւորներ կը գտնուին նաեւ ուրիշ անուններուն մէջ, ինչպէս՝ Μάρδοι — Ἄμαρδοι, Σαγάρτοι եւ Asargatijâ, Madai-Amadai [4] եւն: Schmidtke [5] կ'ընդունի նաեւ այն հնարաւորութիւնը թէ գուցէ nն ռնգային էր, որով կրնար այս անունը Սկիւթացիներուն քով իբր škuz հնչուիլ ու-

---

Թաքանազ = Թաքա-նաս = Թաքա-նար = Թաքա-լար, եւ այն՝ վերջին ձեւը իբր Թիւրքերէնի յոգ. ձեւ, իսկ վերջընթերը՝ մոնղոլերէնի եւ այսպ Ասքանազը «Թիւրքերուն հօր» ազգերուն մէջ կը դնէ (անդ, էջ 208 յջր.): Թէ որչափ յանդուգն է ընդհանրապէս ամբողջ տեսութիւնը պիտի տեսնենք յաջորդ «Թորգոմ» գլխուն մէջ:

[3] KAT$^3$, էջ 101. Հմմտ. նաեւ Sayce, The cun. inscr. of Van JRAS, N. S. 14 (1882), էջ 394. ATAO$^3$, էջ 154. Knudtzon, Assyr. Gebete, II, 131 (113). Schmidtke, Die Japhetiten, էջ 39, ծնթ. 2. Prášek, Geschichte, I, 115: Այսպիսի գրչագրական սխալի մ'ենթադրութիւնը Dier կը համարի իբրեւ «ոչ այնչափ հաւանական» (Genesis, էջ 93). Հմմտ. նաեւ Hommel, EGAO, էջ 212: Նաեւ Կարստի համաձայն Աշքենազ–Աշքուզայի երկու տարբեր ձեւեր են (Alarodiens, 65):

[4] Prášek, Geschichte, I, էջ 10. ծնթ. 2:

[5] Die Japhetiten, էջ 39, ծնթ. 2:

նեցած ըլլալ, որ Ասորեստանցիներու լեզուին մէջ ոնգայինի կորուստով Աշգուզայի եղած է, մինչ եբրայեցերէնի մէջ ոնգայինի պարագան դրաւոր ալ արտայայտելու ջանացած են[6]: Հակառակ մասնագէտներու կողմանէ տրուած այս սրամիտ մեկնութեանց բոլորովին համոզիչ կարելի չէ համարել այս կարծիքն եւ Աշքենազի Ց տարակուսի ենթարկել, որովհետեւ Σκύθης-ի կից կը գըտնենք նաեւ Σκύθηνος կամ Σκυθινοί ձեւը[7]:

720ի ատենները Ն. Ք! Հնդեւրոպական ժողովուրդներու գաղթական մեծ շարժումները կը դղրդեցնէին ամբողջ Յառաջակողմեան Արեւելքը, որոնց գլխաւոր ներկայացուցիչներն են Կիմերացիներն եւ անոնց ազգակից Սկիւթացիները: Յոյներուն Κιμμέριοι կամ Κιμμήριοι[8] եւ ասորերէն. Gimirri կամ Gimirrai ձեւերուն կը համապատասխանէ Ս. Գրքի גֹּמֶר (Գոմեր)[9], Եօթան.

---

6 Հմմտ. նաեւ F. Hommel, Hethiter und Skythen und das erste Auftreten der Iranier in der Geschichte, Sitz.-Ber. d. böhm. Ges. d. W. Kl. f. Phil., Gesch. und Philologie, 1898, VI, 16. F. Hommel, EGAO, 212. Մարքուարթի համաձայն (Unters. zur Gesch. von Erân: Philologus, Suppl., X, 1905—1907, էջ 112) ասոր. հիւսական ձեւն է skuča. Սկիւթացւոց մասին տ. H. Winckler, Kimmerier, Ašguzäer, Skythen, AOF, I, էջ 484 յլն., Prášek, Geschichte, I, էջ 141 յլն., KAT[3], էջ 101 յլն., Streck, Assurbanipal, CCCLXXIV:

7 Հմմտ. Xenophon, Anabas, 4, 7, 18 եւ 4, 8, 1:

8 Od. 11, 14:

9 Ծն. Ժ., 2 յլ. դարձեալ Ա. Մն. Ա., 5 յլ. եւ Եզ. ԼԸ., 6:

թարգմանութեան համաձայն Γαμὲρ կամ Γομέρ[10]. Կիմերացիներուն բնակավայրը կը գտնուէր Սեւ Ծովու հիւսիսային եզերքը՝ Դոնի եւ Դանուբի միջեւ[11]: Տակաւին Հերոդոտոսի ժամանակ Սկիւթացւոց աշխարհին մէջ «Կիմերացւոց բերդ» մը, «կիմերական հուն» մը եւ «կիմերական Վոսփոր»ը[12] կը յիշեցնէր երկրին նախնական տէրերը, ինչպէս դեռ այսօր ալ Խրիմ (Krim) թերակղզին անոնց անունը պահած է: Իսկ Γαμέρ անունը մնացած է Հայերուս քով Գամիրք ձեւով, այս պատճառաւ Մարքուարտ[13] Գոմիր ձեւը «սխալ» կը համարի: Նախաքրիստոնէական Ը. դարու վերջերը Կիմերացիները՝ իրենց ազգակից Սկիւթացիներու ճնշումին վրայ ստիպուեցան շարժիլ[14]: Իսկ Սկիւթացիներն ալ իրենց կարգին Մասագեթներէն կը մղուէին[15]: Կիմերացիներն եւ դա-

[10] Եզ. ԼԸ., 6. Համմ. Lehmann-Haupt, RE = Pauly-Wissova, Real-Encyclopädie d. class. Altertumswiss., II (1922), էջ 397 յջ. եւ H. Winckler, AOF I, 6 (1896), 484 յջ. F. Westberg, Zur Topographie des Herodot, Klio 4 (1904), էջ 188 յջ. Schmidtke, Japhetiten, էջ 32 յջ.:

[11] O. Schrader, Reallexikon d. indogerm. Altertumskunde[2] (1917—1923), 587. M. Rostovtzeff, Iranians and Grecks in South Russia (1922), էջ 35 յջ., E. Ziebarth, Philolog. Wochenschrift, 1925, էջ 479 յջ.:

[12] Her. IV, 12.

[13] Entstehung, էջ 12:

[14] Her. IV, 11—13. Համմ. F. Hommel, EGAO 210. Prášek, Geschichte I, 114. O. Schrader, Reallexikon, 587, որ զԿիմերացիներն ուրալ-ալթայեան ժողովուրդներու կարգին մէջ կը դասէ:

[15] Her. IV, 2:

սոնք հալածող Սկիւթացիները կը քալեն կովկասեան լեռնաշղթային հիւսիսային երկարութեամբ մինչեւ Կասպից ծովի ափն [16], որ այսօրուան Դերբենդի դուռն անցնելով կրնային ամեհի լեռնաշղթան կտրել խոյս տալ [17]: Սկիւթացիներէն ազատելու համար Կիմերացիները կը շեղին դէպի արեւմուտք եւ կը հաստատուին Վանայ լճին քովերը· այս միջոցին Ուրարտացիներն Ասորեստանցիներու հետ պատերազմի բռնուած էին, կռուախնձորն էր Մանցիներու աշխարհը: Կռիւները տեւեցին մինչեւ 714, երբ Ռուսաս Ա. անձնասպան եղաւ: Սակայն ուրարտական հողին վրայ ալ Կիմերացիք տեւականապէս չկրցան մնալ, որովհետեւ Սկիւթացիք յաջողեցան իրենց ազգակիցները [18] դէպի արեւմուտք՝ Փոքր Ասիա մղե-

---

[16] Her. IV, 12· հմմտ. RE 7 (1912), 1958 առ Schmidtke, Japhetiten, էջ 39, ծնթ. 3:

[17] Հմմտ. Prášek, Geschichte I, 114· Streck, Assurbanipal, CCCLXXIV; Schmidtke, Japhetiten, 32 յլ.: Յենած Ed. Meyerի վրայ (Geschichte I. 452 յլ., հմմտ. նաեւ նոր տպագրութիւնը 1926ի, էջ 680 յլ.) Holzinger (Genesis, էջ 95) Կիմերացիները ոչ թէ արեւելքէն, այլ արեւմուտքէն՝ Դանուբի վրայէն դէպի Թրակիա գաղթեցնել կու տայ:

[18] Թէ Սկիւթացիներն ու Կիմերացիներն երկու՝ իրարու շատ մերձաւոր ազգակից ժողովուրդներ էին, ատոր ապացոյց է այն պարագան, որ երկու անուններն ալ յաճախ փոխադարձաբար կը գործածուին. այսպէս Դարեհ Ա.ի Բիսուտունի արձանագրութեան մէջ հին պարսկերէն sakaին կը համապատասխանէ էլամ. ša-ak-ka եւ բաբել. (mâtu) gi-mi-ri (տ. F. H. Weissbach, Die Keilinschriften der Achämeniden [1911], § 6 եւ 21). Դարձեալ Ումման-Մանդա, այսինքն՝ «վաչկատուններ» կը յորջորջուին երկու ժողովուրդ-

լու եւ իրենք Հայաստանի, ինչպէս եւ անոր կից արեւելեան եւ հարաւ-արեւելեան երկիրներու քաղաքական տէրը դառնալու:

Իրենց այս բնակավայրէն սկսան Սկիւթացիները քիչ մ'ետքը նաեւ միւս հարեւան ժողովուրդներու հետ պատերազմի բռնուիլ: Մարերու հետ ունեցած պատերազմի մասին կը պատմէ Հերոդոտոս, իսկ Ասորեստանի կռիւներու մասին կը տեղեկանանք Ասարհադդոնի արձանագրութիւններէն, որոնց պատգամահարցերը (Շամաշ աստուծոյն)[19] կը ցուցնեն՝ թէ Սկիւթացիներու եւ Ասորեստանցիներու միջեւ եղած յարաբերութիւնը նախնաբար թշնամական էր: Այս թագաւորին ժամանակն է որ Սկիւթացիները Մաննացիներու հողին վրայ ոտք կը դնեն, անոնց կ'օգնեն ասորեստանեան լուծը թօթափելու համար մղուած կռիւներուն մէջ եւ իրենց անդրադայն ապստամբութիւններով ասորեստանեան սահմանաշրջանները կը վրդովեն ու տակնուվրայ կ'ընեն: Ասոնց այս թշնամական արարքներէն Ասորեստանցւոց գաւառ թագաւորը սարսափած հարկ կը տեսնէ «Իշկուզա»ներն իր քաղաքականութեան կողմը շահելու համար իր դուստրը Սկիւթացւոց Բարտատուա թագաւորին կնութեան տալ:

---

ներն ալ անխտիր. հմմտ. Prášek, Geschichte I, 114. Streck, Assurbanipal, CCCLXXIV. Schmidtke, անդ, էջ 37:

[19] Հմմտ. Kn. (= Knudtzon) 29 (եւ Klauber, PRT 16), Kn. 30, յետոյ. 3. 36, յաջկ. 4. 25, յետոյ. 11. 35, յետոյ. 9 (Klauber, PRT 20 եւ Kn. 32):

Ասոր հայող պատգամահարցն[20] է՝ «Բարտատուա՝ Իշկուզայի թագաւորն, որ հիմայ իր պատգամաւորներն Ասարհադդոնի՝ Ասորեստանի թագաւորին առաքեց իշխանուհւոյ մը համար, ինչպէս նաեւ Ասարհադդոն՝ Ասորեստանի թագաւորն իշխանուհի մը կնութեան կու տայ անոր, Բարտատուա՝ Իշկուզայի թագաւորն Ասարհադդոնի՝ Ասորեստանի թագաւորին հետ հաւատարմութեամբ իրապէս փրկութենաբեր, բարեկամական խօսքեր պիտի խօսի՞, Ասարհադդոնի՝ Ասորեստանի թագաւորին երդումները պիտի պահէ՞ եւ ամէն բան, որ Ասարհադդոնի՝ Ասորեստանի թագաւորին համար լաւ է, պիտի կատարէ՞»:

Թէ այս ամուսնութիւնը տեղի ունեցա՞ւ եւ թէ Իշկուզացիներն ասկէ ետքն Ասորեստանի հանդէպ բարեկամական յարաբերութիւն ունէի՞ն, բեւեռագրերն այս մասին ոչինչ կ՚աւանդեն: Բայց հաւանական է թէ տեղի ունեցած ըլլայ նկատելով այն պարագան, որ Իշկուզացիներն արդէն հակառակորդ էին Գիմիրրացիներուն եւ Մարերուն, որոնք նմանապէս Ասորեստանի թշնամիներն էին: Յետագային կը տեսնուին այս երկու պետութիւններն իրապէս բարեկամացած եւ գուցէ նաեւ դաշնակից իրենց իշխանական տներու խնամիական

[20] Kn. 29 եւ Klauber, PRT 16· Թարգմանութիւնը Klauberի (էջ 30) հետեւողութեամբ է:

կապով իրարու հետ կապուած ըլլալու հետեւանքով: Այս պատճառով երբ Ասուրբանիպալ Մանցիներուն դէմ կը կռուէր, վերջիններուս Սկիւթացիներու կողմանէ բնաւ օգնութիւն չեղաւ: Ասոր հակառակ սկիւթական օժանդակ բանակ մը ի դերեւ հանեց Մարերու Նինուէն գրաւելու առաջին փորձը[21]: Նինուէի առաջին պաշարումը Կիաքսարէսի ձեռքով սովորաբար իբր 620ին Ն. Ք. կը համարուի եւ նուաճումը 611—610 ժամանակամիջոցին[22]: Լեւի[23], որ այս դէպքերը Հերոդոտոսի[24] պատմուածքներու հետ նոյնացնել կը փորձէ, Նինուէի առաջին պաշարումով կը հասկնայ Նինուէի գրաւումը 612ին Կիաքսարէսի կողմանէ, որ իր յաջողութեանց պտուղը կորսնցուց «սկիւթական հզօր բանակի» մը ասպատակութեամբ, իսկ սկիւթական ուժին նուաճումով ալ Ասորեստանի գրաւումը Մարերու կողմանէ 584/583ին, որովհետեւ այս ժամանակ Ասորեստան Սկիւթացիներու ձեռքն է եղեր: Հետեւաբար Սկիւթացիներու քսանութամեայ տիրապետութիւնը[25] կ'իյնայ 612—584/583 շրջանին: Ասորեստա-

---

[21] Streck, Assurbanipal, CCCLXXIV յջ., Schmidtke, անդ, էջ 40 յջ.:

[22] Streck, անդ, էջ CDXIII յջ., Schmidtke, անդ, էջ 41:

[23] Julius Lewy, Forschungen zur alten Geschichte Vorderasiens, 1925, էջ 14 յջ. եւ Schmidtke, անդ, էջ 41 յջ.:

[24] I, 102—106:

[25] Her. I, 106. IV, 1:

նաև բևեռագրերն իբր Սկիւթացիներու թագաւոր կամ գլուխ կը յիշատակեն անունով բացի արդէն վերյիշեալ Բարտատուային Իշպակայ[26]. Հերոդոտոս[27] կը յիշէ նաև Մադիոս՝ Պրոտոթիւասի որդին. վերջինիս նոյնութիւնը Բարտատուայի հետ արդէն Վինքլէր[28] ապացուցած է:

## § 2. ՍԿԻԹԱՑԻՆԵՐԸ ԻԲՐԵՒ ՄԵՐՁԱՒՈՐ ԱՐԵՒԵԼՔԻ ՄԱՐՍԱՓՆ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ՄԷՋ

Եթէ «Սկիւթացիներու տիրապետութիւնը» Հերոդոտոսի համաձայն միայն 28 տարի ալ տեւած ըլլայ, սակայն անոնք Յառաջակողմեան Ասիան շատ աւելի երկար ժամանակ ասպատակութեանց բեմն: Արդէն Ասարհադոնի եւ Աշուրբանիպալի օրով առաջին անգամն իսկ երեւնային զարհուրելի դարձան շրջակայ ժողովուրդներուն համար:

---

[26] Հատուածակ. (Prisma) A եւ C, սիւն. Բ, 27 յեր. (KB II, 128) եւ Հատուածակ. B, սիւն. Գ, 10 յեր. (KB II, 146): Այս Išpakai անունն իրանեան է Սպակա (յառաջացած ի բաղաձայնութեան համար տեղադրուած ձայնաւոր մըն է) սպան = «շուն» ձեւէն (համեմ. ռուս. собака) եւ իրանեան մէջ կը նշանակէ «շնագայլ»: Համեմ. C. Bartholomae, Altiranisches Wörterbuch, 1610: Համեմ. նաեւ Հերոդ. Ա., 110. Սպակո (Σπακώ), «որ լեզուն Մարաց սպակա կոչէն». յատակերէջի յետադիր -ai ածանցներու կազմիչ մասն է, տե՛ս F. Justi, Iranisches Namensbuch, էջ 521: Որովհետեւ հնդեւրոպական ժողովուրդներու քով շունը մեծ արժէք ունէր, կրնար շատ լաւ յատուկ անուններու մէջ ալ գործածուիլ: Հին կտակարանի Kalebի մասին տե՛ս Nöldeke, Beiträge zur sem. Sprachwissenschaft, 79. Schmidtke, անդ, էջ 40. ծնթ. 4:

[27] Her. I, 1. 103:

[28] H. Winckler, AOF I, 488:

Սարսափի ժամանակ էր այս շրջանն, այնպէս որ սոսկ յիշատակը դեռ երկար ժամանակ վառ կենդանի մնաց: Սկիւթացիները Պաղեստին մտնելով մինչեւ Եգիպտոսի սահմանը յառաջացան եւ միայն հոն է որ Փսամմետիքոս Ա.ի (663—609) նուէրներու եւ խնդրանքին վրայ ետ դարձան [29]: Այս յարձակման ժամանակը մերձաւորապէս կ'որոշէ Schmidtke [30] Երեմիայի գրքէն, որուն մէջ կը գտնէ իրաւամբ այս դէպքերու արձագանգը: Երեմիա 628ին մարգարէական պաշտօնի կը կոչուի. որովհետեւ գլ. Ա. 14 տեղիքին համաձայն այնպէս կ'երեւի թէ նա Սկիւթացւոց յարձակումը մօտալուտ կը համարի, պէտք է հետեւաբար սոսկ ժամանակը 628էն ոչ շատ ուշ սահմանել [31]: Մարգարէն կը տեսնէ Ա. 13 եռացող կաթսայ մը, որուն ժայթքումը

[29] Her. I, 105· Wiedemann, Ägyptische Geschichte, 615· Նոյնը՝ Herodots zweites Buch, 560· Breasted-Ranke, Geschichte Ägyptens, 420· Համմտ. Schmidtke, անդ, էջ 42. ծնթ. 3:

[30] Անդ, էջ 42 յջր.:

[31] Streck, Assurbanipal, CDLXVII եւն 634 տարին իբր terminus post quem կը համարի· Sellin (Gesch. d. isr.-jüd. Volkes, I, 284) կ'ընդունի 630. Procksch (Genesis, 485) 625ի ժամանակները, բայց յարձակումին Եր. Ա. 14 տեղիքին համաձայն արդէն առաջ մարգարէական պաշտօնին կոչման ժամանակ մօտալուտ ըլլալը է: Lewy (Forschungen, 51 յջր.) կ'ուզէ Սկիւթացիներուն այս արշաւանքը աւելի ուշ Փսամմետիքոս Բ.ի (593—588) կառավարութեան ժամանակ դնել: Ասոր հակառակ է Schmidtke, անդ, էջ 42. ծնթ. 4:

հիւսիսէն կը սպառնայուի[32]: Մեկնութիւնն է. «Ցերեւաց հիւսիսոյ բորբոքեալցին[33] չարիք ի վերայ բնակչաց Երկրի[34]. զի ահաւասիկ ես միախուռն կոչեցից զամենայն թագաւորութիւնս Թագաւորութեանց՝ ի հիւսիսոյ Երկրէ՝ ասէ Տէր. եկեսցեն եւ արկցեն զիւրաքանչիւր աթոռ ի վերայ սեմոց դրանցն Երուսաղէմի, եւ ի վերայ ամենայն պարսպացն նորա շուրջանակի, եւ ի վերայ ամենայն քաղաքաց Հրէաստանի»:

Թէեւ հոս Սկիւթացիներն անունով չեն յիշուած, սակայն ուրիշ յարաբերութեան մը հնարաւորութիւնը գրեթէ անկարելի է, ինչպէս Schmidtke ուղիղ կը դիտէ: Իբրեւ հիւսիսէն եկող թշնամի կարելի է Թէեւ Ասորեստան կամ Բաբելոնատան մտածել, սակայն 628ին, երբ Երեմիա իբր մարգարէ երեւան կու գայ, Ասորեստան արդէն շատ տկարացած էր[35], իսկ Բաբելոնի վտանգն այն ժա-

---

[32] Թէեւ տարակոյս չի վերցներ, որ մարգարէն հոս աչքի առջեւ ունի հիւսիս գտնուող որոշ ժողովուրդ մը իբր գործադրիչ Բարձրեալին դատաստանին, պէտք է սակայն նկատել որ մարգարէները նման դէպքերուն թշնամին միշտ հիւսիսէն եկող կը ներկայացնեն, որովհետեւ իրենց համար արեւելքը միայն անապատ է:

[33] Եբրայ. այժմեան բնագիրն ունի תִּפָּתַח «բացցի», մինչ Եօթանասնից Թարգմանութիւնն, ուկից նաեւ հայերէնն՝ ուղիղ կարդացեր է תֻּפַּח = ἐκκαυθήσεται «բորբոքեսցի(ն)». վերջին ընթերցուածն ուղիղ կը համարի նաեւ Schmidtke, անդ, էջ 43, ծնթ. 1:

[34] Այս է Հրէաստան:

[35] Br. Meißner, Babylonien u. Assyrien, I, 45.

մանակ տակաւին գոյութիւն չունէր. Հետեւաբար մարգարէութիւնն ո՛չ Ասորեստանի եւ ո՛չ ալ Բաբելաստանի կը հայի: Ուրիշ հարց է բնականաբար, թէ արդեօք Երեմիա 605/604ին, երբ իր խօսածները գրի կ'առնէր[36], Բաբելոն աչքի առջեւ ունէ՞ր: Հնարաւորութիւնը կարելի չէ ժխտել, սակայն սկզբնական չէ այս աղերսը[37]:

Տակաւին ուրիշ քանի մը տեղեր ալ հիւսիսային թշնամւոյն մասին ակնարկութիւններ կը գտնենք, որոնք Սկիւթացիներուն մերձեցուած են. ասոնք են «սկիւթական երգեր» ըսուածները՝ Եր. Դ. 5—8, 13—18, 19—21, 23—28, 29—31. Ե. 15—17. Զ. 1—8, 22—26. Վիլկէ[38] տարակուսի կ'ենթարկէ այս տեղիքներուն Սկիւթացւոց հետ ունեցած աղերսը. նա կը միտի աւելի Բաբելացիներուն մասին հասկնալ. որովհետեւ ասոնք Հրէաստանի պետութեան աւելի չարիք կը սպառնային քան Սկիւթացիներու ասպատակող հրոսակները[39]: Հերոդոտոսի յիշա-

---

[36] Գլ. ԼԶ. Համմ. նաեւ Nötscher, Jeremias, էջ 78 յջ.:

[37] Schmidtke, անդ, որուն կը հետեւիմ յաջորդ տողերուն համար:

[38] F. Wilke, „Das Skythentum im Jeremiabuche“, Alttestamentliche Studien, Festschrift für R. Kittel (1913), S. 222—254.

[39] Նաեւ E. Sellin, Geschichte I, S. 284, կը մերժէ Սկիւթացիներուն մերձեցուած այս մեկնութիւնը: Ըստ P. Volzի, Der Prophet Jeremia (1922), 57 յջ., այս մեկնութիւնը կարելի չէ ապացուցանել, մանաւանդ թէ նուազ հաւանական է: Երեմիա «չ'ուզեր ըսել որոշ, քաղաքականօրէն ճշգրիտ ըմբռնելի թշնամի մը նկարագրել»: Բայց որովհետեւ իրապէս

տակութիւնը՝ թէ Սկիւթացիները մինչեւ Եգիպտոսի սահմանը յառաջացած են[40] կը մերժէ համարելով պատմութեան նախահայրն իբր անվստահելի աղբիւր մը[41]։ Նոյն Հերոդոտոսի այս յիշատակութիւնը անուայն պատմական կորիզ մը կը պարունակէ[42] եւ Սկիւթացիներն, որոնք ամբողջ Յառաջակողմեան Ասիոյն ասպատակի մատնած էին, կրնային մարգարէին նկարագրութեանց դէթ իբր նախատիպ ծառայել։ Թէ յետագայքին այս տեղիքներն նոր երեւան եկող թշնամւոյն՝ Բաբելոնի մերձեցուած ըլլան՝ հնարաւոր է, ինչպէս Ա. 13 յջք. տեղիքին համար նմանապէս հոս ալ։ Բայց սկզբնական չէ այս մեկնութիւնը. որովհետեւ իբր սկիւթական երգեր նշանակուած կտորներն ամէնն ալ 605 տարին կանխող ժամանակէն են, իսկ բաբելական վտանգի մասին կարելի էր միայն Նինուէի նուաճումէն եւ ասորեստանեան պետութեան կործանումէն, ինչպէս եւ 605ին Կարքեմիշի քով եգիպտական բանակին ջախջախումէն ետքը լուրջ կերպով խօսք ըլլալ։

---

գոյութիւն ունեցող թշնամի մ՚ակնարկելը՝ ժամանակաւոր եթէ ընդհանուր սարսափ ալ պատճառած է, անվրէպ կերպով աւելի մեծ ապահովութիւն կ՚ընէ քան լոկ երեւակայուած թշնամիով եղած սպառնալիքն, ինչպէս որդէն Schmidtke յառ. կը գրէ (անդ, էջ 44, ծնթ. 2), ուստի կարելի չէ տեսնել պատճառ մը, թէ ինչո՞ւ համար Երեմիա իր նկարագրութեանց նախատիպ պիտի չկարենար աչքի առջեւ ունենալ Սկիւթացիները։

[40] Հերոդ. I, 103—106։

[41] Վիճէի համառօտ կ՚ըսէ Kittel, Geschichte des Volkes Israel II (1925), 415։

[42] Հմմտ. նաեւ Streck, Assurbanipal, CCCLXII.

Հետեւաբար վերոյիշեալ տեղիքներէն պէտք է որ Սկիւթացիներուն մերձեցնենք, որովհետեւ հիւսիսէն եկող ուրիշ ո՞ր ժողովուրդը կրնելի է նկատել: Այս տեղիքներուն բովանդակութիւնն ոչ մէկ կերպով արգելք է Սկիւթացիներուն տրուած այս մեկնութեան, ինչպէս նաեւ չկայ տեղիք մը որ անպայման Բաբելոնի աղերսը պահանջէ, եթէ նկատի չառնենք հետեւեալ տեղիքը. «Ահա իբրեւ զամպ ելցէ՝ եւ իբրեւ զմրրիկ կառք[43] նորա. արագագոյն քան զարծուիս երիվարք նորա» (Եր. Դ. 13): Բայց միթէ կրնա՞ր մարգարէն Բաբելացիներու մասին ըսել. «Ահաւասիկ ես ածից ի վերայ ձեր ազգ ի հեռաստանէ տունդ Իսրայէլի՝ ասէ Տէր, ... ազգ որոյ ոչ լսիցես զլեզուս նորա, եւ ոչ իմանայցես զխօսս նորա» (Եր. Ե. 15): Յայտնի է թէ ասով կ'ակնարկուի ուրիշ անծանօթ լեզու մը քան սեմական-բաբելականն, որ Հրեաներէն ոմանց ընտանի ըլլալու էր կամ գէթ բոլորովին անհասկնալի չէր: Մանաւանդ թէ ասով այս հեռաւոր, օտարաշխարհեայ տարօրինակ ժողովուրդը նկարագրել ուզած է ինչպէս օրինակի համար նաեւ Ասուրբանիպալ բացայայտ կերպով կը յիշէ Լիւդիայի անհասկնալի լեզուն եւ գեղեցիկ կերպով կը նկարագրէ թէ ինչպէս լիւդիական պատգա-

---

[43] Schmidtkeի համաձայն Սկիւթացիները պատերազմական կառքերով եկած ըլլալու չեն. անոր ըմբռնումով կառքի պատկերը բնագրի ընդլայնում կը ներկայացնէ (Համմ. անդ., էջ 44, ծնթ. 6):

մուտքներու պալատը Նինուէն անել կացութեան մատնած է[44], կամ ինչպէս Փղշտացւոց բարբարոս լեզուին նկարագիրը ցուցնելու համար եգիպտական բնագրի մը մէջ քանի մը բառ յառաջ կը բերուի[45]։ Ի՞նչպէս կրնար Երեմիա Զ. 3 Բաբելացիները «հովիւ» անուանել, կամ ի՞նչպէս կրնար նա Զ. 22 զանոնք «ի ծագաց երկրէ» համարել։ Քանի մը աշխարհագրական ծանօթութիւն Բաբելոնի գիրքի մասին իր ունկնդիրներուն քով պէտք էր ենթադրել։

Ծանօթ չէ թէ Սկիւթացիներուն յարձակումը ինչ տարածման չափերը հասցուցած է Հրէաստանի եւ կ՚երեւայ թէ այս ասպատակութիւնն աւելի Միջերկրականի եզերքը տեղի ունեցած է[46]։

Մինչ այս յառաջ բերուած տեղիքները միայն առաւել կամ նուազ հաւանականութիւն ցոյց կու տան մեկնութեանս ճշդութեան մասին, յաջորդ՝ արդէն վերը յիշատակուած տեղիքներուն մէջ (ԾԱ, 27) Աշքենազ—Աշգուզա անունով կը յիշուի իբրեւ անդամ մը հիւսիսէն Բաբելոնի դէմ խուժայ

---

[44] Zyl. E, հ. տ. Streck, Assurbanipal, S. 156։

[45] A. Jirku, Altorient. Kommentar zum AT, 43.

[46] Հաւանաբար Փղշտացիներուն դէմ եղած Սա-մմետիքոսի պատերազմներն են (Բ. 4 յժբ.) Սկիւթացւոց յարձակման կը հային։ Որովհետեւ Սամմետիքոս 680ի ժամանակները կը գործէր, չկայ ոչ մէկ դժուարութիւն այս մեկնութեան դէմ։ Համմտ. Prášek, Gesch. I, 143, ծնթ. 1. Sellin, Gesch. I, 284. Schmidtke, անդ, 45, ծնթ. 3։ Սկիւթացիներու մերձեցումին հակառակ կ'ելլէ Greßmann, Der Ursprung der isr.-jüd. Eschatologie, 146։

ազգերու ամբոխին մէջ: Բայց որովհետեւ մէկ կողմանէ Սկիւթացիները տակաւին 610ին Նաբուպալասարի հետ դաշնակից էին եւ միւս կողմանէ Մարերու ձեռքով ասոնց նուաճուիլը մարական–լիւդիական խաղաղութիւնը կնքելէն յառաջ կ'իյնայ [47], Սկիւթացիները Բաբելոնին կրնային վտանգաւոր դարձած ըլլալ միայն 610—585/584 կամ 590 տարիներու շրջանին. որովհետեւ մարական–լիւդիական պատերազմը Հերոդոտոսի համաձայն հինգ տարի տեւած է [48]. մինչ Երեմիայի այս տեղիքն Երուսաղէմի կործանումին յաջորդող ժամանակաշրջանին է [49]: Իսկ Թշնամի ազգերու համադրութիւնը շատ լաւ կը յարմարի իբրեւ Ասորեստանի դէմ եղած ախոյեաններու. ճիշդ Ասարհադոնի եւ Ասուրբանիպալի պատգամահարցութեան ժամանակն է այս շրջանը [50]: Schmidtke [51] հնարաւոր կը գտնէ՝ թէ Ասորեստանի դէմ ուղղուած հին պատգամներ մը հիմայ Բաբելոնի դէմ կը գործածուի կամ այս հիւսիսային ազգերն արդէն աշխարհի կատարածի գաղափարին մէջ առնուելով ամէն չարիքի լրումը կ'ըմբռնուէին:

Մարերը Հալիսի քով սկիւթական ուժը

---

[47] Chron. G. Herod. I, 74. Lewy, Forschungen, 15 յջ.:

[48] Տես Schmidtke, անդ, 45:

[49] Եր. ԾԱ., 11:

[50] 616ին Մաննացիներն Ասորեստանցիներու հետ դաշնակից էին. հմմտ. Chron. G. 5 տո. Schmidtke, անդ, էջ 46, ծնթ. 1:

[51] Անդ, էջ 46:

խորտակելով լիւդիական պետութեան դրացիները դարձան: Հաւանաբար Սկիւթացիները կրկին իրենց հայրենիքը՝ Հարաւային Եւրոպա վերադարձան, ուր կը բնակէին անոնք աքեմենեան արձանագրութեան համաձայն[52] եւ որոնց դէմ ուղղած էր Դարեհ Վշտասպեան իր զէնքերը:

## § 3. ԱՇԳՈՒԶԱ-ՍԿԻՒԹԱՑԻՆԵՐՈՒՆ ՍԵՐՈՒՆԴԸ

Ըսուածներէն կը հետեւի թէ Ս. Գրքի Աշքանազ-Աշքենազ նոյն է Աշգուզա-Սկիւթացիներուն հետ, որոնք Է. դարուն Ն. Ք. ամբողջ Յառաջակողմեան Ասիան ասպատակի մատնած եւ միաժամանակ իրենց թէեւ ոչ տեւական տիրապետութեան եւ արշաւանքի ազդեցութեան հետքերը հոն ձգած են[53]: Նոյն իսկ Յառաջակողմեան Ասիոյ այս կամ այն ժողովրդեան հետ անոնց ունեցած ազգակցական աղերսի մասին խօսք կ՚ըլլայ· այսպէս Աշքանազ-Աշքենազ Աշքանազեաններու՝ փռիւգիական ցեղի մը հետ նոյնացուցած են Դիր[54], Հոբերգ[55], Հեցընաուէր[56] եւն, որ նաեւ Միւսիա եւ Հայաստան հնարաւոր կը համարի: Թէեւ մեր ազգային աւան-

---

[52] Բաբելական բնագիրը զիրենք Գիմիրրի կ՚անուանէ:

[53] Հմմտ. B. Piotrowski, Skify i Zakawkaze. Trudy otdela Wostoka III (1940), Leningrad, էջ 71—90:

[54] C. Dier, Genesis, էջ 94:

[55] Hoberg, Genesis, էջ 114:

[56] M. Hetzenauer, Commentarius in librum Genesis, էջ 188:

դութիւնն այս կարծիքին նկատուած ըլլալ կը թուի, որովհետեւ մեր մատենագիրները, նոյն իսկ դասականները կ'աւանդեն մեր ինչպէս Թորգոմական, նոյնպէս եւ ասքանազեան ծագումը[57]: Բայց որովհետեւ Ս. Գրքի ազգահամարի համաձայն Ասքանազ եւ Թորգոմ իրարու եղբայր են, ուստի չեն կրնար երկու եղբայրներ միեւնոյն ժողովրդեան նախահայրերն ըլլալ: Հետեւաբար այս կրկին աւանդութիւններէն միայն մին գոյութեան իրաւունք ունի եւ այս կրնայ ըլլալ միայն Թորգոմի աւանդութիւնն, որուն մասին յաջորդ գլխուն մէջ. իսկ Ասքանազի աւանդութեամբ[58] կ'ուզէին ցուցնել մեր նախնիներուն փռիւգիացիներուն հետ իրենց ունեցած ազգաբանական առնչակցութիւնն ար-

---

[57] Վերջնոյս համար կը վկայէ միայն Կորիւն (էջ 7), եթէ սա ալ յետամուտ չէ, ինչպէս կը կարծէ նաեւ Մեծ. Հ. Ակինեան (բերանացի հաղորդուած): Որովհետեւ բացի Կորիւնէն առաջին անգամ Յովհ. Կաթողիկոսն է որ կը յիշատակէ Ասքանազ իբրեւ Հայոց նախահայր եւ այն յաճախակի (տե՛ս էջ 11, 12, 13 եւն. տպ. Թիֆ. 1912), եւ ոչ իսկ Խորենացւոյն ծանօթ է Ասքանազ իբրեւ նախահայր, որ անտարակոյս ունէր պատճառ կերպով մը զինք ներկայացնէր: Մինչ Թորգոմի աւանդութեան համար կը գտնենք մեր մատենագիրներուն, նոյն իսկ դասականներուն քով բազմաթիւ վկայութիւններ, ինչպէս Փաւ. Բիւզ. Յառաջաբան, էջ 1, Գ., Ժդ., էջ 32, Ե., Է., էջ 227. Ագաթ. Յառաջաբան, գլ. ճէ = § 776, գլ. ճժբ = § 796. յաջորդ դարերէն՝ Ղեւոնդ, էջ 141, 170. Մովս. Խոր., Պատմութիւն Ա., գլ. Ժ, գլ. Ժբ եւն: Քննադատներէն կը հետեւի թէ Ասքանազի հայկ. աւանդութիւնը բոլորովին անհիմն է:

[58] Եթէ ընդհանրապէս գոյութիւն ունէր:

տայայծել, մանաւանդ որ արդէն Հերոդոտոս (VII, 73) Հայերը փռիւգիական ցեղերու մէջ կը դասէ: Ուստի եթէ Աշքենազ–Աշգուզա–Սկիւթացիներու համադրութիւնը փռիւգիական Ասկանացիներու կամ Փոքրասիոյ Ասկանիոսի[59] հետ ներելի է, որ անկարելի ալ չէ նկատելով որ գուցէ Աշգուզա–Սկիւթացիներու փոքր մաս մը հոն մնացած կամ անոնց այն տեղուան (վերջին) բնակավայրի վրայէն անուանուած է, կարելի է նաեւ — եւ սակայն միայն այս տեսակէտով — Հայերը համադրութեան եզր առնել: Ամէն պարագայի բոլորովին սխալ է Կնոբէլի[60] կարծիքն, որ Աշքենազով Գերմանացիները կը հասկնայ հետեւելով յետագայի հրէական աւանդութեան[61]: Ընդհանրապէս

---

[59] E. König, Genesis, էջ 393:

[60] Knobel, Die Völkertafel der Genesis, էջ 33 յջ.։

[61] Այսպէս Թոգարմա Երուսաղէմեան Մեգիլլայի մէջ (I, 71 b) גרמניקיה (Գերմանիկիա) է, որ Եւսկուտի եւ այլ բնագիրներուն մէջ גרמניא է (Գերմանիայի) հետ կը շփոթուի եւ միայն ռաբ. Բերեքեայի իբր անհատական կարծիք Գերմանիկիա կը յիշուի: Այս միայն թիւրիմացութեամբ ծագում առած մեկնութիւնն, որով Թոգարմա իբրեւ Գերմանիա կը հասկցուի, անդրադարձ սխալի ալ առիթ տուած է՝ թէ Թոգարմա է Բարբարիան (այսպէս Երուսաղէմեան Բ. Թարգումն առ Ծն. Ժ., 3), որովհետեւ Գերմանիա յաճախ Բարբարիայի հետ կը շփոթուի: Բնականաբար նաեւ Թարգումի առ Եզ. Իէ, 14. מדינת ורמניא եւ առ ԼԸ. 6. מדינת ורמניא ընթերցուածը փոխանակ בית תוגרמה (= տունն Թոգարմա), որ անտարակոյս սխալ գրչագրութիւն է փոխանակ Գերմանիայի, մեր Գերմանիկիան հասկնալու է: Հմմտ. A. Neubauer, La géographie du Talmud, p. 421 ss. S. Krauß, Die biblische Völkertafel im Talmud,

Յովսէփոսի[62] 'Ρηγῖνες անունն անկարելի է մեկնել[63], բայց սուտ գէթ ապահով ապացոյց մը կը ստանանք թէ իր ժամանակը տակաւին անծանօթ էր այս հրէական աւանդութիւնն, որուն համաձայն Աշքենազ Գերմանիա է եւ Աշքենազիմ Գերմանացիները կամ գերման եւ ասոնցմէ սերած լեհ Հրեաները են:

«Երբ ազգահամարին մէջ Գոմեր եւ Աշքենազ հօր եւ որդւոյ աղերսի մէջ կը ներկայանան, ասոր մեկնութիւնը կարելի է միայն Կիմերացիներու եւ Սկիւթացիներու միջեւ սերտ իրական ազգաբանական աղերսակցութեան մէջ փնտռել: Բաց աստի երկուքն ալ միեւնոյն տեղէն՝ հարաւային Ռուսաստանէն կու գային: Իսկ գլխաւոր պատճառն անոր մէջ կը կայանայ, որ Սկիւթացիներն ալ նոյն ճամբան ըրին, որուն վրայէն իրենցմէ յառաջ Կիմերացիները քալած էին եւ թէ անոնք Կիմերացիները փոխանակեցին Յառաջակողմեան Ասիոյ հիւսիսային մասին վրայ անոնց ունեցած 'տիրապետութիւնը, գրաւելով[64]:

---

Midrasch und Targum. MGWJ (= Monatsschrift f. Geschichte und Wissenschaft des Judentums), 1895, էջ 9 եւ 53:

[62] Ant. I, 6, 1:

[63] Հմմտ. նաեւ Ս. Յերոն. Quaest. in Gen. 10, 3. Migne, PL, 23, col. 951:

[64] Schmidtke, անդ, էջ 46 յջ.:

## ԳԼՈՒԽ Գ.

# ԹՈՐԳՈՄ

### § 1. ԹՈՐԳՈՄ–ԹՈԳԱՐՄԱ–ԹԱԳԱՐԱՄԱ–ԹԻԼ–ԳԱՐԻՄՄՈՒ

«Ի տանէ Թորգոմայ ձիովք եւ հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս քո»[1]: Այս bēt tōgārmāh, Եօթանասնից Θογαρμά եւ Θοργαμά, Վուլգատա Thogorma, որ ազգահամարին մէջ[2] իբրեւ երրորդ որդի Գամերի յառաջ կը բերուի, ձայնական կերպով բոլորովին կը համապատասխանէ արդէն Բողազքէօյի արձանագրութիւններու մէջ յիշուած Թեգարամա (Tegarama) կամ Թագարամա անուան, որուն դիրքն այս արձանագրութիւններու հիման վրայ կարելի է ապահովապէս որոշել:

KBo III, 1. I, 38, Թելիպինուշի[3] մէկ արձանագրութեան մէջ ուր Թա–գա–րա–մա կը յիշուի: Դժբախտաբար այս արձանագրութիւնս պակասաւոր է, բայց որովհետեւ անկէ քիչ մը առաջ (տող 36) Կարգամիշ կը յիշուի, ըստ այսմ Թագարամա այս քաղաքին քովերը փնտռելու ենք:

---

[1] Եզեկ. ԻԷ, 14. տե՛ս նաեւ ԼԸ, 6:

[2] Ծննդոց Ժ, 3 — Ա. Մնաց. Ա, 6:

[3] Տառադարձութիւն եւ թարգմանութիւն առ Friedr. Hrozný, Boghazköi-Studien, III (Leipzig 1919), 90 էջ.:

Թեգարամայի գիրքին մասին ամէն տարակոյս կը փարատէ KBo IV, 4. III, 18 յջ.։ Այն արձանագրութիւնը կը բովանդակէ Մուրշիլի 8—11 տարիներու տարեգրութիւնները։ Անկէ կ'իմանանք, որ Մուրշիլ Կարքամիշէն գնաց Թեգարամա արշաւեց եւ թէ արշաւանքէն ետքը գնաց Հայաշա յառաջ դիմել երթալ։ Սակայն այս արշաւը տեղի չունեցաւ, որովհետեւ «տարին շատ կարճ եղաւ», եւ Մուրշիլ դիմեց գնալ Հարրան[1]։

18. Այս երբ չունեցի Կարքամիշ[2] երկիրն։

19. Այս չունեցի Թեգարամա երկիրն։ Ես եւ

20. Թեգարամա քաղաքը հասայ, այն ժամանակ ինծի եկաւ Նուվանզաշ (Nuwanzaš) մատակարարապետը,

---

[1] J. Friedrich, Aus dem hethitischen Schrifttum I (1925), 9 եւ Fr. Schmidtke, Die Japhetiten der biblischen Völkertafel (Breslau) 1926), էջ 49. Տե՛ս նաեւ Albrecht Götze, die Annalen des Muršiliš. MVAG 38 (1933), 329 էջ. տառադարձութիւն, թարգմանութիւն եւ մեկնութիւն։

[2] Այս անունը կը յիշուի նաեւ Ս. Գրքի մէջ քանի մ'անգամ, այսպէս Երեմ. ԽԶ, 2 եբր. kárkmiš, տառ. krkmuš, Թէեւ յուն. Χαρκαμις (գլ. 26, 29) ունի, հայր կը ներկայացնէ ուղիղ ձեւը Կարքամիս, ինչպէս եւ վուլգ. Charcamis։ Իսկ Ա. Եզր Ա, 25 հայն ունի Կարքամուա ըստ յուն. Χαρκαμὺς այն տարբերութեամբ որ նուրբ եւ թաւ գրերու հարցերն երկու բնագիրներու մէջ փոխուած են, իսկ վուլգ. (III. Esdrae. I, 25) ունի դարձեալ Carchamis — աչքի կը զարնէ հոս ալ նուրբ եւ թաւ գրերու կազմանէ տառադարձութեան միօրինակ չըլլալը։

21. եւ Թեգարամա քաղաքին բոլոր մեծամեծներն ընդ առաջ։
22. Այս պահեցին զիս հոն։ Եթէ զեռ Հայաշա քաղաքը
23. արշաւած ըլլայի, ասոր համար տարին բաւած պիտի չըլլար,
24. Եւ մեծամեծներն ըսին ինծի. «Ասոր համար տարին չափազանց կարճ է,
25. եւ դուն, մեր տէրը, մի՛ չուեր դէպի Հայաշա»։ Այն ժամանակ
26. չարշաւեցի դէպի Հայաշա, այլ դէպի Հարրան։
27. Այն ժամանակ բանակս Հարրան եկաւ,
28. եւ ես բանակը հոն բերել տուի։

Թեգարամա կը յիշուի դարձեալ KBo V, 6. II, 27, 30, 38 եւ KBo VI, 28. յառաջակողմ 12, Հատտուշիլ Գ.ի մէկ հրովարտակին մէջ։ Վերջին տեղիքիս համաձայն «Թշնամին Իշուվա երկրէն կու գայ եւ Թեգարամա երկիրը կ'աւերէ»։

Ըստ այսմ Թեգարամա Կարգամիշի, Իշուվայի եւ Հարրանի միջնտեղը փնտռելու է։ Որովհետեւ Իշուվա Ծոփաց աշխարհը կը համարուի[6], ըստ այսմ Թեգարամա Եփրատին քով Կարգամիշի եւ Խարբերդի միջեւ ըլլալու է։

---

[6] Տե՛ս Fr. Sehmidtke, Die Japhetiten der biblischen Völkertafel, էջ 50.

Ասորիները Թորգոմի մասին յաջորդ-դարերու համար կը լռեն։ Միայն Ը. դարու վերջերն ասորական արձանագրութիւններու մէջ վերստին կը յիշուի։ Ասորեստանցիք ժողովրդական ստուգաբանութեամբ Թեղարամայէն Թիլ-գարիմմու կերտեցին, ըստ որում այս անուան մէջ Թիլլու («աւերակ-բլուր») բառին հնչիւնը գտան [7]։ Հին Կտակարանի գրքերն անուանս նախնական ձեւը պահած են։ Թէ Թիլ-գարիմմու իրապէս յետագոյն ժամանակի ձեւն է, անտարակուսելի կերպով կ'ապացուցանեն նաեւ Բողազքէօյի եւ ակկադեան արձանագրութիւններն, որոնք տակաւին միշտ Թեգարամա ձեւը կը ներկայացնեն [8]։

Սարգոնի եւ Սենեքերիմի (Sanherib) ասորական արձանագրութիւնները Թիլ-գարիմմու այլ եւս երկրի անուն չեն գիտեր, այլ միայն քաղաքի անուն [9]։

Սարգոն 712ին Մելիդդուի Տարխունազի թագաւորին դէմ կ'արշաւէ, որովհետեւ

---

[7] E. Forrer, Die Provinzeinteilung des assyrischen Reiches (Leipzig 1920), 84; Schmidtke, անդ, 50.

[8] Fr. Delitzschէն ի վեր (Wo lag das Paradies?, էջ 246) բոլոր մասնագէտները միաբան են թէ Թիլ-գարիմմու եւ Թոգարմա նոյն են։

[9] Forrer, անդ, 75 կը միտի Թիլ-գարիմմու այսօրուան Գիւրինի հետ նոյնացնել, որովհետեւ անուանս մէջ կ'ուզէ նշմարել Գարիմմու։ Ըստ Պտղոմէոսի Հռոմէացւոց ժամանակ քաղաքս Caurena կը կոչուէր։ Գիւրին այսօր Ակնի եւ Արաբկիրի հետ Կամմանուի նշանաւոր վայրերէն է։

ղրկած էր հարկ վճարել[10] եւ անոր Մելիդդու (յետագայ ժամանակի Մելիտինէ), մայրաքաղաքը կը նուաճէ։ Տաբալուայի Թիլ–գարիմմու բերդը կը քանդէ։ Սակայն Թիլ–գարիմմուն ալ կը գրաւէ եւ Տաբալուայի բնակիչներով եւ 5000 ռազմիկներով գերի կը բռնէ։ Թիլ–գարիմմուի եւ շրջակայ երկրին մէջ, որ Կամմանու[11] անունով երեւան կու գայ, նոր պետականութիւն կը հաստատուի եւ ասորեստանեան պետութեան հետ կը միացուի։ Հաթեան Թեգարամայի սահմանին մէջ՝ այժմ Եփրատի արեւմտեան կողմը, փնտռելու ենք Մելիդդու, Կամմանու եւ անմիջնորդաբար Եփրատի եզերքը Կումմուխու (յետագայի Կոմագենէ)։

Սենեքերիմ 695ին կը կռուէր Թիլ–գարիմմուի դէմ, որ Գուրդի անունով մէկը թագաւորութիւն մը հաստատած էր։ Սպարապետ մը յաջողեցաւ Թիլ–գարիմմու նուաճել, սակայն քաղաքին աւերելէն ետք Գուրդիի ուժեղ բանակէն ստիպուեցաւ ետ քաշուիլ[12]։ Սենեքերիմի ժամանակ հին Թոգարամայի երկիրը Թաբալ անունով կը յիշատակուի։ Թիլ–գարիմմու ալ կը յիշուի երբեմն իբրեւ Թաբալ

---

10 Տարեգրութիւններ 178 յջ. KTS I, էջ 30 եւ շրջագայող արձանագրութիւնը 78—83 KB II, 62 (KTS I, էջ 112)։

11 Աւելի իր գոյութիւնը պահեց յետագայ ժամանակի Կամանա անունով, որ կը գտնուի Սիհուն (Sarus) գետին արեւելեան ճիւղին վրայ (Սարոս)։

12 Forrer, Provinzeinteilung, էջ 80 յջ.; Schmidtke, անդ, էջ 51.

կարելի է։ Որովհետեւ Թեգարամա անունն, ինչպէս Բողազքէօյի արձանագրութիւնները կը հաւաստեն, շատ աւելի հին է քան ասորեստանեան արձանագրութիւններու Թիլ-գարիմմու եւ Ս. Գիրքին անուանս հնագոյն ձեւը պահած ըլլալուն, ասորեստանցիներու կողմանէ ուղղակի ազդուած ըլլալու պարագան անհիմն կը դարձնէ[15]։

Ինչպիսի՞ ժողովուրդ կը բնակէր Թոգարմայի մէջ։ Հին Հաթերու տիրապետութեան ժամանակ Թոգարմայի ժողովուրդը Միտաննի ժողովուրդը եղած ըլլալու է. որովհետեւ Թագարամա Միտաննիի սահմանակից է եւ Շուպպիլուլիումա կը կռուի Միտաննիի Տուշրատտայի դէմ Թեգարամայի համար[16]։ Անիկա նաեւ կը ստանայ «Թագարամա երկրին կէսը» եւ այն տեղ, ինչպէս միւս նուաճուած տեղերը Հաթեր կը բնակեցնէ։ Սարգոն հոս կը գաղթեցնէ Սուտի (Suti) ցեղը՝ «անապատի վաչկատուններ»[17]։ 706ի ժամանակներն Արմէն-Փռիւգացիները Գուրդիի առաջնորդութեամբ Թաբալ մտած եւ նոյն իսկ մինչեւ

---

15 Հմմտ. Schmidtke, անդ, էջ 52, 13 յիշ., որուն համաձայն սակայն Ծննդոց Ժ. գլուխը դատելով հոն յիշուած ազգերու անուններէն ամէնէն կանուխ միայն Է. դարուն կրնայ գրուած ըլլալ (էջ 18), կարծիք մը, զոր երբեք կարելի չէ ապացուցանել։

16 KBo I, 1; 17 յիշ. Weidner (տե՛ս Schmidtke-ի, անդ 52, ծնթ. 2), Polit. Dokumente aus Kleinasien, 7.

17 Ծրեզագարգ արձանագրութիւնք 82 (19) = KB II, 62 (54) կամ KTS I, էջ 112 (98). Sutûի մասին տե՛ս Knudtzon, Die El-Amarna-Tafeln (Leipzig 1915), 1038 յիշ.։

Թիլ-գարիմմու յառաջացած ըլլալու են. այս պատճառաւ ալ երկիրը յետոյ Փոքր-Հայք անունն առաւ[18]:

Ասով Forrer ալ կ'ուրացնէ Հայոց գաղթի Թուականի մասին տիրող ընդհանուր կարծիքը, մինչ Լեման-Հաուպտ[19] քիչ մը այս տեսութենէն կը շեղի նկատելով գաղթականներու մէջ երեք տարր — բուն Հայեր, Կիմերացիներ եւ այս երկու Թրակեան ցեղերու միջեւ գտնուող խառնուրդ ժողովուրդ մը, մասնաւորապէս Հայեր, որոնք իրենց գաղթի ժամանակ արդէն Փոքրասիոյ նախահնդեւրոպ. ժողովուրդներու հետ այն աստիճան խառնուած են, որ ապագայի Խաղտիքներու հետ ունեցած խառնուրդը չնչին համարելու է: Արդէն յոյն դասական մատենագրութիւնը Հայերը հնդեւրոպ. բունին Թրակեան եւ այն փռիւգական ճիւղին կը վերագրէ. բացի Հերոդոտոսի ծանօթ տեղիքէն (VII 73) նշանակալից է Եւդոքսոս Կնիդացւոյն (Դ. դար Ն. Ք.) խօսքը[20] «Հայերը փռիւգական ծագում են եւ իրենց լեզուին մէջ շատ մը փռիւգական տարրներ ունին», որ P. Kretschmerի համաձայն[21] լեզուական իրո-

---

[18] Forrer, Provinzeinteilung, 81, Schmidtke, անդ, 52.

[19] Armenien, II, 2, S. 691 ff.

[20] Տե՛ս Ստեփ. Բիւզանդացի Armenia անուան ներքեւ:

[21] Einleitung in die Geschichte der griechischen Sprache, S. 208.

դութեանց համապատասխան է։ Բաց աստի Հայերն իրենց ներգաղթի ճանապարհին վրայ կը ձգեն յաճախ յիշատակ մը Armenion կամ Orminion անունով. այսպէս Armenion մը կը գտնուէր Թեսալիոյ Boibe յճին քովերը։ «Եթէ Հայերը», կ'ըսէ Kretschmer[22] «ինչպէս Փռիւգացիները Եւրոպայէն Ասիա գաղթած են, այն ժամանակ շատ լաւ կրնային յառաջագոյն Փռիւգացիներու քովերը՝ Թեսալիոյ հիւսիսակողմը հաստատուած ըլլայ։ Իսկ Թեսալիա նախապատմական ժամանակ Թրակեան ներխուժում» տեղի ունեցած է։ Boibeis limne անունն, որուն քով Armenion կը գտնուէր, կը ցուցնէ արդէն թէ հնդեւրոպ. bh թրակեան եւ ոչ-յունական կերպով ներկայացուած է պարզապէս b-ով փոխանակ Թաւ-ի։ Boibe ապահովապէս նոյն է Phoibe-ի հետ, հմմտ. թրակ. Brygoi, Bryges, յուն. Phryges են։ Այս Armenion անունն Իլիականին մէջ[23] կը յիշատակուի իբր Ormenion եւ յետագային[24] Orminion, իսկ այս en-ի in-ի ձայնափոխութեան համար Կրէչմէր իբր համեմատութեան երբ յառաջ կը բերէ թրակ. Minde եւ Mende. Արդ արեւելեան Բիւթանիա լեռ մը կ'անուանուի Orminion oros[25], իսկ ուրիշ մը՝ «Հայկի աղբերա-

---

[22] Անդ, էջ 210։
[23] Il, 734.
[24] Strabo IX, 18 C., 438.
[25] Ptol. VI, 10.

կունքը» Փոքր Հայքի մէջ Armenion oros. այս դէպքին ալ նոյն ձայնափոխութիւնը տեղի կ'ունենայ: Վերջապէս պարսիկ արձանագրութեանց մէջ, որոնց մէջ a, e, o ձայնաւորները չեն զանազանուիր, Հայաստան ինքնին կ'անուանուի երբեմն Armaniya (= Armeni-on), երբեմն Armina (= Ormin-ion): Բիւթանիոյ Orminion լեռ, «Սինոպի քով Armene նաւահանգիստ եւ վերջապէս Armenion լեռը Հալիսի աղբերակունքը կը ցուցնեն մեզի այն ուղին, զոր Հայերն արեւմուտքէն դէպի արեւելք Գաղթի ժամանակ կտրած են. Հալիսի արեւելեան կողմը տարածուող աշխարհէն՝ Փոքր-Հայքէն ասդին ալ աւելի դէպի արեւելք յառաջացած են»: Նաեւ *Ur-me-ni(-u-hi-ni)* տեղւոյ անունը, զոր Մենուա թագաւորն իր դէպի արեւմուտք կատարած արշաւանքի ժամանակ կը յիշէ[26], կը համապատասխանէ Orminionի եւ այս անունը «կրնայ, ըստ Լեման-Հաուպտի[27], շատ մը նման կայաններու մէջէն Հալիսի աղբերակունքը գտնուող եւ բուն Հայաստանին ամէնէն մերձաւոր կայանը նշանակել: Հոս կը նստէին հետեւաբար Հայերը Ը. դարուն սկիզբները Ն. Ք.»: Ասկէ կ'եզրակացնէ Հայաստանի վաստակաւոր խուզարկուն[28], թէ Forrerի

---

[26] Հմմտ. նաեւ իր որդւոյն՝ Արգիշտիի արձանագրութիւնը՝ «բայաք (?) Ուրմանիի»:

[27] Անդ, էջ 692:

[28] Անդ, Յաւելուած, էջ 48*:

նշանակած «Ճշգրիտ Թուականը» Հայոց ներգաղթի մասին, որ է 706 Ն. Ք. — եթէ անձուկ իմաստով Հայոց Փոքր-Հայք հաստատուելուն կը մերձեցուի, սխալ է: Բայց հնարաւոր է 706 տարուայն դէպքերն ընդհանուր գաղթաշարժին մէկ փուլը նկատել, երբ Հայերն իբրեւ նոր ցեղային տարր մը մտան այն աշխարհն՝ իրենց ապագայ հայրենիքն — ուր Խալդիները կը բնակէին ու կ'իշխէին:

## § 2. ԹՈՐԳՈՄԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԻԲՐԵՒ ՁԻԱՎԱՃԱՌ

Թէ Թորգոմ անունն ապրեցաւ նաեւ այն ժամանակներն, երբ իր մասին սեպագիր արձանագրութիւններու մէջ ամէն յիշատակութիւն կը դադրի, կը վկայեն Հին Կտակարանէն յառաջ բերուած տեղիքներն: Ըստ Եզեկ. ԻԷ, 14 Թորգոմ Տիւրոսի հետ ձիու եւ գրաստի վաճառականութիւն կ'ընէ. Եզեկ. ԼԸ, 6 Թորգոմ կը համարի «ի ծագացն հիւսիսոյ» Գոմերի զօրքերուն մէջ: Այս ամէնը կը յարմարի Հայաստանի: Եզեկիէլի տեղիքը կ'ենթադրէ ձիաբուծութեան նշանաւոր երկիր մը: Յայտնի է թէ Թորգոմի քովերը գտնուող տաւրոսեան երկիրն, որ ասորեստանեան արձանագրութիւններու մէջ Muṣri [29] կ'անուանուի, ձիաբուծութեան շատ յարմար է: Անկէ կը սա-

[29] Տե՛ս Սալմանասար Գ.ի արձանագրութիւնը (Rawlinson, The Cuneif. Inscrip. of West. Asia, հատոր 3. 8, տող 3—5). Թագղաթպալասար Գ.ի արձանագրութիւնը, սիւնակ V, 67, 70, 74 եւ այլն = KB I, էջ 15—47:

նար Սողոմոն իւր ձիերը։ Գ. Թագ. Ժ. 28 = Բ. Մնաց. Ա. 16 կը կարդանք. «Ելք երիվարաց Սողոմոնի յԵգիպտոսէ, եւ ի Թեկուայ[30] վաճառք արքայի. եւ առնուին ի Թեկուայ գնովք»։ Պէտք է հոս միտ դնել որ եբրայեց. misrājim այս տեղ Եգիպտոս թարգմանելն, ինչպէս բոլոր Ս. Գրքի թարգմանութիւններու մէջ կը գտնենք, բոլորովին սխալ է, որովհետեւ מצרים հոս կա՛մ սխալագրութիւն մըն է փոխանակ מצרִי ի կա՛մ — գուցէ աւելի հաւանական — վերջավանկի ים գիրը բնակիչներու անունով (gentilicium) հասկնալու է։ Ամէն պարագային «ձիաբուծութեան բոլորովին անյարմար Եգիպտոսի»[31] վրայ առնուլն անտեղի է, արդէն Կուէի՝ այսինքն Կիլիկիոյ հետ միասին յիշատակուելն առոր հակառակ կ'ելլէ։ Այս Musri նոյն է մեր մատենագիրներու Մուզուր, Մզուր, Մծուր ձեւերու[32] կամ Գէորգ Կիպրացւոյն[33] χλίμα

---

[30] Թէեւ եբր. ուղիղ ձեւով ունի kueh קוֵה ինչպէս եւ Վուլգ. Coa, բայց յուն. Θεκουέ, ինչպէս եւ Պեշիտտան tgra (կարծեմ խնդիր չի վերցներ որ հոս ա՛ տեղ ; դրուած է, այս երկու գրերը շատ դիւրութ կրնան իրարու հետ շփոթիլ)։ Արդեօք Եօթան. եւ Պեշիտտան եբրայեցերէնի բացառականի מן՝ կարդացած չե՞ն ה կամ מ, թէեւ տեղիքս ճշդիւ բացառականով թարգմանուած է։

[31] Al. Jeremias, Das alte Testament im Lichte des alten Orients[4] (1930), էջ 167.

[32] Այս կարծիքն ունի նաեւ Marquart, Untersuchungen zur Geschichte von Erân ի Philologus, Supplementband X, էջ 236.

[33] H. Gelzer, Georgii Cyprii descriptio orbis Romani (Leipzig 1890), էջ 49 եւ 183—184։

Μουζουρῶν ի հետ, գրեթէ երկարութեան 36—38, լայնութեան 38—40 աստիճաններու միջեւ [34]:

Ինչպէս Պաղեստին, նմանապէս եւ Միջագետք ձիաբուծութեան մասնաւոր յատկութիւն մը չունէին եւ հինաւուրց ժամանակէ ի վեր հոն ձի չէին բուծաներ: Ձիուն տեղը կը բռնէր էշը, որ հոս շատ լաւ կը զարգանար: Գեղեցիկ, սպիտակ էշեր, որոնք դեռ այսօր ալ Իրաքի գիւղացիներու պարծանքի առարկաներն են, հին ժամանակներն արդէն ծանօթ էին [35], ասոնց հետ կային նաեւ գորշագոյն էշեր բծերով կամ անբիծ [36]: Թէեւ երկրագործութեան համար էշն այնչափ յարմարութիւն չունի ինչպէս եզը, սակայն բեռնակրութեան եւ արշաւի համար ամէնէն յարմարն է: Նաեւ իբրեւ կառաքարշ կը լծուէին բեռնակիր կառքերու [37], աստուածներու կառքերուն [38] եւ հին ժամանակ նաեւ ռազմական աօրեայ կառքերուն: Այս պատճառաւ ամենահին ժամանակները թա-

---

[34] Սպուր եւ նման ձեւերու մասին տե՛ս H. Hübschmann, Die altarmenischen Ortsnamen = Հայ. Թարգմ. էջ 128—129:

[35] S. Kraus, Talmudische Archäologie (Leipzig 1910—1911), հատ. II, էջ 117: Տե՛ս նաեւ Br. Meißner, Babylonien und Assyrien, հատ. I (Heidelberg 1920), էջ 217 յլ., ընդարձակ կերպով կը խօսի Բաբելոնի իշաբուծութեան եւ ձիաբուծութեան մասին:

[36] J. N. Straßmaier, Inschriften von Nabukadnezar, 360. նոյնը՝ Inschriften von Cambyses, I, 1.

[37] CT XIV, 11, 8 յլ. Հմմտ. Zeitschr. für Assyriologie, հատ. XVII, էջ 20.

[38] VAB I, 96. VI, 18. VII, 20.

դաւորներն ու մեհեանները բաւական թուով կովերու նախիրներ կը պահէին, հակառակ որ իշու կրկին զոյգ մը ամսական 900 սիլա (378 լիտր) արմտիք կը սպառէր[39], որովհետեւ ուրիշ կառաքարշ անասուն չունէին:

Սակայն յետոյ «ձին» (sîsû) էշը շատ ան-տակէտ կը դնէ. արդէն այն նշանաւոր անասունն էր, որ սումերներու մէջ կընար պարծիլ՝ «Արտանց լծի, արշաւողիս [երիվա-րիս] ոչ մէկ թագաւոր, կուսակալ, տէր եւ իշխան ճանապարհորդութեան կ'եղէ»[40]: Գիլգամեշի էպոսը բնականաբար «կը սի-րահարի քաջարի երիվարին»[41]. այս պատ-ճառով ալ յետոյ «ազնուական ձիերն» տուր իրենց ախոյեաններու. տարեկայ կը դառ-նան[42]:

Սակայն երրորդ հազարամեակի վերջին քառորդին[43] առաջին անգամ կը պատահինք ձիուն, եւ տակաւին այն ժամանակ այնչափ ցանցառ էր, որ Համուրաբբիի օրէնքին մէջ չի յիշատակուիր: Բայց այնպէս կը թուի թէ յա-ջորդ դարերուն արագ կերպով տարածուած

---

39 H. de Genouillac, Tablettes sumériennes archaïques (Paris 1902), Թիւ 34, I (էջ 83); 35, I, II (էջ 86); 36, I (էջ 89) եւ էջ XXXIX.
40 CT XV, 35, 5.
41 KB, հատ. VI, տախ. I, էջ 170. Gilgameš-Epos, տախ. VI, ա. 53 = Ungnad-Greßmann, Gilgamesch-Epos (Göttingen 1911), էջ 31.
42 R. F. Harper, Assyrian and Babylonian Letters (London 1892), Թիւ 268, 13 յղ.։
43 Orientalische Literaturzeitung (Berlin), 1907, էջ 638; 1913, էջ 541.

է ամբողջ Յառաջակողմեան Ասիոյ մէջ: Կո-ւէեան թագաւորներու իրենց եգիպտացի բա-րեկամներուն ուղղած նամակներուն մէջ կը կարդանք անդադար՝ բարեմաղթութեան բա-նաձեւս. «Դուն, երկիրդ, տունդ, կիներդ, զաւակներդ, մեծերդ, ձիերդ, կառքերդ լաւ վիճակի մէջ գտնուին»[44]: Այս շրջանին ձիերն Ասիոյ իշխաններուն սիրած նուէր-ներն էին: Բուրբարուրիաշ երկու անգամ Ամենոփիս Դ. փարաւոնին ձիերու հինգ լուծ կ'ուղարկէ[45], Ասորեստանցիներու թագա-ւորն Ասուրուպալլիտ անոր կ'ուղարկէ երկու սպիտակ ձիոյգ[46], եւ Հատտիի Հատտուշիլ թագաւորը նամակի մը մէջ կը գրէ Բաբե-լոնի Կադաշման-էլլիլ Բ.ի. «Եղբօրս եր-կրին մէջ յարդէն աւելի ձի կայ[47]»: Ասոր հետ կը համաձայնի Հերոդոտոսի տե-ղեկը[48], թէ պարսիկ սատրապը Բաբելաս-տանի մէջ 800 յովատակներու եւ 16.000 զամբիկներու տապաստան ունէր:

Այս կողմերը ձիաբուծութեան արուես-տին ուսուցիչներն ու տարածողները կը հա-մարի Հոմմել[49] Արիականներն եւ մասնա-ւորապէս Հնդիկներն, որոնց գոյութիւնը Միջագետքի մէջ կ'ենթադրէ դէթ երկրորդ

---

44 VAB II, 85, 5.
45 VAB II, 83, 57; 91, 37.
46 VAB II, 129, 10.
47 KBO I, թիւ 10, 41.
48 I, 192.
49 Friedr. Hrozný, Die älteste Geschichte Vorderasiens, էջ 113 յի.:

հազարամեակին։ Այսր ապացոյցներէն մին է այն պարագան, որ ձիարուծութեան ու ձիավարժութեան հայոց հաթեան ինչ ինչ բնագիրներու մէջ կը գտնէ թուանշան ցուցնող բացատրութիւններ, որոնք արիական, մանաւանդ թէ հնդկական են։ Այսպէս աշխարհիս ամենահին ձիարանին՝ Կիկկուլիսի (Միտաննուէն) հաթեան լեզուով գրուած գրքին մէջ (ԺԴ. դար Ն. Ք.) կառարշաւի հայոց բացատրութիւններու կը պատահինք, որոնք հնդեւրոպական են, ինչպէս aika-vartanna, որ կը համապատասխանէ սանսկր. ēka-h «մէկ» եւ vartanna «շրջում, բոլորում» (լատ. verto, vertere) ձեւին։ Յայտնի է թէ Միտաննու պետութեան մէջ հաստատուած էր նաեւ հնդիկ ժողովուրդ մը, որ այս վերջինեան բնագիրներու համաձայն ձիարուծութեան ու ձիավարժութեան, ինչպէս եւ կառարշաւի մէջ Հաթերու եւ ուրիշ հին արեւելեան ժողովուրդներու ուսուցիչն եղած է։ Թէ հին ժամանակները՝ Դ. եւ Գ. հազարամեակին Ն. Ք. ձին հին Արեւելքի մէջ գրեթէ անծանօթ էր եւ Արիականներն — ինչպէս եւ Բ. հազարամեակին Հաթերն — են, որոնք այդ անասնոյն օգտակարութիւնը կը ցուցնեն, ապացոյց է ասոր յատկացուած բաբ. sisû, եբր. sûs, եգիպ. šesemt, որոնք ամէնքն ալ արիական՝ սանսկր. açvah (ձի) բառէն եւ ոչ թէ կենտում — բառէն, որ է ekuos, «հաթեան» — մեհենակ. äkuvaja,

*akuvaja* «ձիոյ» (kod) ձեւէն առնուած են: Իրողութիւն է որ թեթեւ՝ ձիաքարշ պատերազմական կառքերու գործածութիւնն, որոնցմով Արիականները եւ անոնց հպատակ Խուռի ժողովուրդները Հին Արեւելքի մէջ աննպաստ կերպով զինուած ժողովուրդներու դէմ մեծամեծ յաղթանակներ կը տանէին, սատարեց ձիաբուծութեան յառաջ մա-զրութիւն դարձնել, այսպէս Միջագետքի մէջ կը գտնուին ձիու դաստիարակներ, որոնք առ նուազն 1400 Ն. Ք. համարելու է[50]: Սակայն յաջորդ դարերուն «ձիաբուծութեան ամէնէն աւելի համբաւաւոր երկիրները կը համարուէին Մարաստան եւ Հայաստան[51]»: Սանգիբուտի դաշտին մէջ երկու մեծ ասպաստաններ[52] կը գտնուէին եւ բնակիչները իրենց ձիերով անմրցելի էին[53]: Մարաստան իր արքունի հարկը ընդհանրա-

---

[50] Տե՛ս Hanns A. Potratz, Die Pferdegebisse des zwischenstromländischen Raumes. AFO XIV (1941), 1—39.

[51] Br. Meißner, Babyl. und Assyr. I, էջ 218.

[52] Fr. Thureau-Dangin, Une relation de la huitième campagne de Sargon (Paris 1912), 191; 210.

[53] Thureau-Dangin, անդ, 170 էջը: Արդէն Ասորեստանցիները ճանչցած էին ձիու մեծ կարեւորութիւնն եւ ասոր համար ոչ միայն Ուրմիոյ լճին կողմերը ձիաբուծութեան շատ հոգ կը տարուէր, այլ նաեւ Ասորական թագաւորները իրենց հարկ բազմաթիւ երկիրներէ կը ստանային Անդրկովկասէն՝ մասնաւորապէս Սեւանի լճի կողմերէն, ինչպէս Արգիշտի Ա-ի անդրկովկասեան արշաւանքներու մասին ձգած արձանագրութիւններէն կը տեսնուի. հմմտ. Jos. Wiesner, Fahren und Reiten in Alteuropa und im Alten Orient. AO 38, 2—4 (1939), 92 էջ. 8 ծանօթ.:

պէս ձիերով կը հատուցանէր[54]: Լէհման-Հաուպտ[55] կը գրէ այս կանանչաւէտ երկրի մասին. «Շարդէն (Chardin), որ երջանկութիւնն ունեցաւ Սարդարապատն ոչ թէ մեզի պէս ամառնային երաշտութեան ժամանակ, այլ գարնան այցելելու, կը նկարագրէ Թավրիզի հարաւային կողմը գտնուող արօտատեղիները. Գաւառին ամենագեղեցիկ ձիերը հոն կ'արածէին, գրեթէ 3000 հատ»:

Այս բանը կարելի է ըսել Հայաստանի մասին, որուն բնակիչները ըստ Արիստագորաս Միլետացւոյ (Հերոդոտոսի քով[56]) «արջառով հարուստ» էին: Ստրաբոն[57] կ'աւանդէ թէ Հայաստանի սատրապը ամէն տարի Միհրի տօնին 20.000 մտրուկ կ'առաքէր Դարեհի թագաւորին: Քսենոփոն[58] կը պատմէ թէ, երբ յունական բիւրուց բանակը հայրենիք վերադարձին (հայկական) գիւղ մը հասաւ, բանակայիններէն ոմանք մէկ մէկ մտրուկ առին, զորոնք գիւղի բնակիչները կը բուծանէին արքունի հարկը վճարելու համար: Քսենոփոն ինքնին «իրեն համար մէկ մտրուկ առաւ եւ իւրաքանչիւր [illegible] մէկ մէկ հատ

[54] Ernst Klauber, Politisch-religiöse Texte der Sargonidenzeit (Leipzig 1913), թիւ 34.

[55] Armenien einst und jetzt, II (1926—1931), էջ 318.

[56] Հերոդոտոս V, 49. «Կիլիկեցիներուն հարեւան՝ կը բնակին Հայերը. ասոնք ալ շատ ոչխար ունին»:

[57] XI, 14, 9.

[58] Anabasis IV, 5, 34.

սուտ: Այս երկրին (Հայաստանի) ձիերն այնչափ մեծ չեն, որչափ Պարսկաստանի ձիերը, բայց աւելի քաջառոյգ են[59]»:

Հայաստանի ունեցած ձիերու այս առատութիւնը նկատելով ստիպուած ենք ենթադրել որ երկրին միւս բերքերուն հետ հայերը նաեւ ձիու վաճառականութիւն կ՚ընէին: Թէ հայերու Տիւրոսի հետ ունեցած այս վաճառականութիւնն ինչ ճամբով տեղի կ՚ունենար, չենք գիտեր, որովհետեւ պատմագիրներու քով այս մասին ո եւ է ակնարկութիւն չենք գտներ, մինչ Բաբելոնի հետ ունեցած վաճառականութեան մասին դասական տեղիք մ՚ունինք Հերոդոտոսի քով, զոր հայերու ունեցած նաւու տարօրինակ մէկ տեսակն այն աստիճան կը զարմացնէ, որ զայն «երկրին ամենամեծ զարմանալիքը» կը համարի: «Անոնք», կը պատմէ նա, «կլոր եւ կաշիէ են: Վասն զի Հայոց աշխարհին մէջ, որ Ասորեստանի վերեւ կը գտնուի, ուռենւոյ ճիւղեր կը կտրեն եւ անկէ կը շինեն նաւու զոգաձեւ յատակն եւ ասոր վրայ կը ձգեն մաշկ մը իբրեւ ծածկոյթ տախտակամածի պէս, բայց ցռուկ եւ խելք չեն շիներ, այլ ամէն բան վահանի պէս կլոր է: Ապա այս ամբողջ նաւը կը լեցնեն յարդով եւ ասոր մէջ կը զետեղեն իրենց ապրանքը, եւ գետոն ի վար կ՚ընթանան: Ընդհանրապէս

[59] Անդ, IV, 5, 35—36: Հայաստանի արդասաւորութեան եւ ձիերու հարստութեան մասին տե՛ս նաեւ Strabo XI, 14, 9—10:

արմաւի գինիով լեցուն տակառներ կը բեռնաւորեն: Կ՚ուղղուի երկու թիակներով եւ երկու մարդիկներով. անոնք կանգուն կը կենան, մին կը քաշէ, իսկ միւսը կը հրէ: Նման նաւեր կը շինեն զանազան մեծութեամբ, ամենամեծ նաւերը կը բառնան հինգ հազար տաղանդի բեռ: Ամէն մէկ նաւու վրայ կայ կենդանի էշ մը, աւելի մեծերուն վրայ մէկէն աւելի: Երբ այսպէս նաւարկելով Բաբելոն կը հասնին եւ իրենց ապրանքներէն թեթեւցած են, նաւուն փայտակերտն եւ ամբողջ յարդը ախուրագին կը վաճառեն, իսկ մաշկը կը բեռցնեն էշուն վրայ եւ այսպէս հայրենիք՝ Հայաստան կը վերադառնան: Որովհետեւ գետն ի վեր նաւարկելը բացարձակապէս անկարելի է, վասն զի գետին հոսանքը չափազանց ուժգին է, եւ այս պատճառով ալ իրենց նաւերը փայտէ չեն շիներ, այլ կաշիէ: Արդ երբ իրենց էշերով Հայաստան կը հասնին, միեւնոյն կերպով կը շինեն ուրիշ նաւեր: Այսպիսի են անոնց նաւերը[60]»: Բնականաբար այս նաւերու փայտի ատաղձը շատ լաւ ընդունելութիւն կը գտնէր Բաբելոնի մէջ, որուն գետինը հակառակ ունեցած առատ բուսակա-

---

[60] Հերոդոտոս I, 194: Այս տարօրինակ նաւերն ասորեստանեան արձանագրութեանց մէջ ոչ ցանցառ պատկերացած կը տեսնենք եւ մինչեւ այսօր ալ «գուֆ-ֆա» եւ «քելլեք» անուններով իրենց գոյութիւնը պահած են: Հմմտ. Joh. Nikel, Herodot und die Keilschrift-forschung, էջ 88. Br. Meißner, անդ I, էջ 251. Fr. Delitsch, Handel und Wandel in Altbabylonien (Stuttgart 1910), էջ 7 յջ., Lehmann-Haupt, Armenien, I (1910), էջ 340 յջ.:

նութեան բոլորովին մէջ եւ այդքան կը չէ-նարարութեան եւ այրեր փոքրի կող-մանէ[61], այնպէս որ առնուած էին փոքր մեծ աշխատանքով հեռաւոր վայրերէն բերել:

## § 3. ԹՈՐԳՈՄ-ՀԱՅԱՍՏԱՆ

Անգամ մը ցուցնելէն ետքը, թէ Հայաս-տան ծանօթ արտածող երկիր մըն էր ձիերու կողմանէ եւ թէ հայերն որոշ իմաստով մը վաճառական ժողովուրդ էին, արգելք մը չկայ նորագոյն մեկնիչներու հետ, ինչպէս Pet. Schmalzl[62], Mart. Hagen[63], Ces. Dier[64], C. F. Keil[65], Alf. Bertholet[66], Rich. Kraetz-schmar[67] եւ ուրիշներուն հետ *bêt togârmah*-ն Հայաստանի կամ Հայերու հետ նոյնացնելու, որուն ի նպաստ կը վկայէ ոչ թէ միայն ազ-գային աւանդութիւնն[68], այլ նաեւ հին քրիս-

---

[61] Ընդհանրապէս նոճին ալ հարաւային երկիրնե-րու մէջ առաւելապէս ծառ էր, որուն ինկական հայ-րենիքն էին Վանայ լճին հայկական լեռները՝ «Սարդուրի լեռը» (Thureau-Dangin, La huit. camp. de Sargon, 160) եւ «Ուեդուհու լեռը» (Thureau-Dangin, անդ, 280):

[62] Das Buch Ezechiel (Wien 1901), էջ 281.

[63] Atlas Biblicus (Parisiis 1907), Thogarma անուան կարգին:

[64] Genesis (Paderborn 1914), էջ 93.

[65] Bibl. Commentar über den Proph. Ezechiel (Leipzig 1882), էջ 266.

[66] Das Buch Hesekiel (Freiburg i. Br. 1897), էջ 142.

[67] Das Buch Ezechiel (Göttingen 1900), էջ 210.

[68] Տե՛ս Փաւստոս (Պատմութիւն, Վենետ. 1832), Յառաջաբան, անդ, էջ 1. Գ, ժզ. անդ, էջ 32. Ե, ի. անդ, էջ 227. առանց նկատի առնելու խորագիրներու

ամէնահին մատենագրութիւնը: Այսպէս օրի-նակի համար կը գրէ Եւսեբիոս Կեսարացի, «Թորգոմ, եւ ի նմանէ Հայք[69]»: Նաեւ Գէորգ Սինկելլոս կ'ըսէ հայերուն Թորգոմէն ծագում առնելը[70]:

Այս աւանդութեան դէմ կ'ելլէ E. Blochet եւ կը ժխտէ «բացարձակապէս» անոր «գոյութիւն ունենալը». իսկ աւանդութեան ծագումն ալ կը մեկնէ այսպէս, իբր թէ այս աւանդութիւնը հայերը բոլոր պատմագիրները առնուեր են այս յառաջացողութիւնը փոխառած են Ծննդոց գրքի տասներորդ գլխուն մէջ: Այս պատմուածքներէն պարագայ մը միայն ընդունելի կը համարի թէ «Մեսրոպի աշակերտները աշխատած են Ս. Գրքի ձեռագրի մը վրայէն, որ Թորգոմ(այ) ձեւը կը կարդացուէր[71]»: Երբ հեղինակը, համառօտ

---

մէջ յիշատակուածները. Ագաթանգեղոս (Պատմութիւն, հրտ. Տէր-Մկրտչեան, Տփղիս 1909), Յաճախապատ., ճԹ = 776. ձժԲԷ: 793: Յաճախ գարեկէն Ղեւոնդ (Պատմութիւն, հրտ. Պետերբուրգ 1887), էջ 141. 170, Մով. Խորենացի (Պատմութիւն), Ա, Ժ. մր. եւայլն:

[69] Θοργαμα, ἐξ οὗ Ἀρμένιοι. Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ Ժամանակականք երկմասնեայ. հրտ. Հ. Մ. Աւգերեան (Վենետ. 1818), հատ. Բ., էջ 12:

[70] Chronographia, հրտ. Weber (Bonn 1829), էջ 91.

[71] Տե՛ս հոս յատուկ արգէն Paul de Lagarde, Agathangelus und die Akten Gregors von Armenien (Göttingen 1887), էջ 140 յջր. Հայկական այս աւանդութեան հարազատութեան դէմ եղած է, որ Քի եւ Թի համազօրութիւնը կը հաւաստէ թէ «Թորգոմ Եօթանանից Θοργαμάէն հայկական տառադարձերու մէջ առնուած է: Սակայն իրեն միակ ապացոյց ծառայած ת = ... , ש = Ս գրերու համեմատութիւնն եւ բառ մը սա նաեւ տառադարձութիւնն անէն կարծ չի կրնար իբրեւ ապա–

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ճԼԲ. Ղազարեան Մ., *Հայաստանի Ոստիկաններու ժամանակագրութիւնը 833—887 տարիներու շրջանին։ Թրգմ. Հ. Վ. Ինգլիզեան*։ 1933։ էջ 120։ գ. Փր. 3․—

ճԼԳ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն։ Հատոր Ա.* 1932։ էջք ԺԲ + 399։ գ. Փր. 4․—

ճԼԴ. Ակինեան Հ. Ն., *Դասական հայերէն եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը*։ 1932։ էջ 387։ Փր. 4․—

ճԼԵ. Ակինեան Հ. Ն., *Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան. կեանքն եւ գրական գործունէութիւնը. մատենագրական ուսումնասիրութիւն*։ 1933։ էջ 280։ *Մէկ պատկերով*։ Փր. 3․—

ճԼԶ. Տաշեան Հ. Յ., *Հայ ազգի տարագրութիւնը գերմանական վաւերագիրներու համեմատ։ Մասն Ա.* 1921։ էջ Ժ + 241։ Փր. 3․—

ճԼԷ. Տաշեան Հ. Յ., *Հաթեր եւ Ուրարտեանք. մատենագիտական ուսումնասիրութիւն*։ 1934։ էջք Ը + 343։ Փր. 3․—

ճԼԸ. Սարուխան Ա., Ա. *Ֆիրդուսի եւ Մովսէս Խորենացի*։ Բ. Firdowci et l'influence iranienne dans la littérature géorgienne. 1936։ էջք 62 + 63—106։ Փր. 1․—

ճԼԹ. Ակինեան Հ. Ն., *Մովսէս Գ. Տաթեւացի Կաթողիկոս Հայոց յԷջմիածին եւ իւր ժամանակը (1577—1633)։ Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ պատմութեան*։ 1935։ էջ 450։ Փր. 4․—

ճԽ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն։ Հատոր Բ.* 1936։ էջ 400—800։ Փր. 4․—

ճԽԱ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն։ Նկարագիր ուղեւորութեան ի Լվովէ ի Կ. Պոլիս, ի Հռոմ, ի Մուշ եւ յԵրուսաղէմ յամս* 1608—1619։ 1936։ Փր. 4․—

ճԽԲ. Եսաբալեան Հ. Պ., *Տատիանի Համաբարբառը եւ հայերէն աւետարաններու առաջին թարգմանութիւնը*. Վիեննա 1937, էջք Ը + 127։ գ. Փր. 1․—

ճԽԳ. Սարուխան Ա., *Բելգիա եւ Հայերը*, Վիեննա 1937, էջք Ը + 273: գ. Ֆր. 3.—

ճԽԴ. Թորգոմեան Դկտ. Վ., *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպոլոյ պատմութիւն*, հտ. Գ. Վիեննա 1938, էջք ԻԸ + 194: գ. Ֆր. 3.—

ճԽԵ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ*, հտ. Դ. Վիեննա 1938, էջք Ժ + 406: գ. Ֆր. 4.—

ճԽԶ. Սարուխան Ա., *Վրաստան եւ Հայերը*, հտ. Ա., Վիեննա 1940, էջք Ը + 291: գ. Ֆր. 4.—

ճԽԷ. Լալայեան Հ. Գ., *Դիոնիսիոս Արեոպագացի, ասորերէնէ թարգմ.*, Վիեննա 1939, էջք 112: գ. Ֆր. 1.—

ճԽԸ. Երեմեան Ա., *Թիֆլիսի Հայոց Պանթէոնները* Վիեննա 1940, էջք Դ + 112: գ. Ֆր. 1.—

ճԽԹ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը*. հտ. Ա. Վիեննա 1940. էջք + 384: գ. Ֆր. 4.—

ճԾ. Արեղեան Դկտ. Ա., *Դորպատի հայ ուսանողութիւնը*, Վիեննա 1942, էջք 44: գ. Ֆր. 1.—

ճԾԱ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը*. հտ. Բ. Վիեննա 1942, էջք Ժ + 350: գ. Ֆր. 4.—

ճԾԲ. Ինգլիզեան Դկտ. Հ. Վ., *Հայաստան Սուրբ Գրքի մէջ*, Վիեննա 1947, էջք ԽԷ + 233: գ. Ֆր. 6.—

ճԾԳ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սարդիկէի ժողովի հայերէն կանոնները*, Վիեննա 1945, էջք Հ + 132: գ. Ֆր. 4.—

ճԾԴ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Սեբաստիոյ վանքերը*: *Ա. մաս. Սեբաստիա քաղաքի վանքերը*: Վիեննա 1946, էջք ԺԱ + 79: գ. Ֆր. 2.—

ճԾԵ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Վասպուրական-Վանի վանքերը*. հտ. Գ. Վիեննա 1947, էջք Է + 743—1134: գ. Ֆր. 8.—

*Հասցէ՝*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**

*Librairie des Pères Mechitharistes*

*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*